АКАДЕМИЯ НАУК СССР—АРМЯНСКИЙ ФИЛИАЛ
ИНСТИТУТ ИСТОРИИ И АРХЕОЛОГИИ

АКАД. Я. А. МАНАНДЯН

# ТИГРАН ВТОРОЙ И РИМ

## В НОВОМ ОСВЕЩЕНИИ ПО ПЕРВОИСТОЧНИКАМ

ИЗДАТЕЛЬСТВО АРМФАН-А
ЕРЕВАН 1940

ԽՍՀՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ—ՀԱՅԿԱԿԱՆ ՖԻԼԻԱԼ

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՀՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

9(47.925)12
Մ-24

ԱԿԱԴ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ

ՍՏՈՒԳՎԱԾ Է 1961 Թ.

# ՏԻԳՐԱՆ Բ. ՅԵՎ ՀՌՈՄԸ

## ՆՈՐ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԹՅԱՄԲ ԸՍՏ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ



ԱՐՄՖԱՆ-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ՅԵՐԵՎԱՆ 1940

Իր սիրելի քրոջ

ԱՍՏՂԻԿ ՀԱՄԱԶԱՍՊԻ ՄԱՆԱՆԴՅԱՆԻՆ

յեղբայրական ջերմ զգացմունքով
նվիրում է հեղինակը

# 1. ԱՌԱՋԱԲԱՆ

*Հին Հայաստանի պատմությունը Տիգրան Յերկրորդի շրջանում ուսումնասիրված է սեղմ ու միջանկյալ կերպով, գլխավորապես, յեվրոպական գիտնականների այն յերկերում, վորոնց մեջ քննության է առնված վոչ թե հատկապես Հայաստանի, այլ հռոմեական հանրապետության և կամ պոնտական թագավորության պատմությունը։ Պատմագիտական այդ աշխատություններից ամենից կարևորներն են—գերմանական, ֆրանսական և իտալական յերեք խոշորագույն գիտնականների՝ Մոմզենի, Ռեյնաքի և Ֆեռեռոյի՝ համապատասխան յերկերը*[1]*։ Բացի այդ, Լուկուլլոսի հայկական արշավանքները մանրամասն ուսումնասիրված են նաև Լեման-Հաուպտի աշակերտ Կուրտ Եքհարդի ընդարձակ աշխատության մեջ, վորը տպագրված է գերմանական «Կլիո» հայտնի հանդեսում (հատ.* IX, *1909 թ. և հատ.* X, *1910 թ.)*[2]*։*

*Պատմական և բանասիրական գրեթե բոլոր հայկական յերկերում, ինչպես և Հին Հայաստանի պատմությանը նվիրված Դոլենս-Ծաչլի, Տուրնեբիզի, Գևորգ Ասլանի, Մորգանի և Խալաթյանցի ֆրանսերեն ու ռուսերեն աշխատություններում, Տիգրան Բ-ի պատմությունը քաղված է համարյա անփոփոխ, մեծ մասամբ, կամ Մոմզենի և կամ Ռեյնաքի վերոհիշյալ յերկերից։ Բացառություն են կազմում Զամչյանը և դոկտ. Ասատուրյանը, վորոնք օգտվել են նաև հունական ու լատինական հին աղբյուրներից և ցույց են տվել տեղ տեղ նրանց թերությունները։*

*Ինչպես շատ ճիշտ դիտել և շեշտել են իրենք յեվրոպական գիտնականները, հիմնական սկզբնաղբյուրները, վորոնք գրված*

---

[1] Моммсен, Римская история, т. II—III, Москва 1887, Th. Reinach, Mithridate Eupator, roi de Pont, Paris 1890, Г. Ферреро, Величие и падение Рима, т. I, Москва 1895.

[2] *Գերմաներեն այս աշխատությունը լույս է տեսել նաև հայերեն թարգմանությամբ՝ «Կուրտ Էքհարդ, Տիգրան Բ. և հայ-լուկուլլեան պատերազմները։ Աշխատասիրեց Հ. Գ. Վ. Գարանֆիլյան, Վիեննա 1926, Ազգային մատենադ. ՃԺԳ»։*

են Տիգրան-Միհրդատի ժամանակաշրջանից մեկ կամ մի քանի դար հետո, մեծ մասամբ, անվստահելի յեն և կասկածելի, վորովհետև նրանք պատմական անցքերը նկարագրել են կողմնապահությամբ և հռոմայեցիների ոգտին։ Հայտնի յե արդեն, թե ինչպիսի մեծ վարպետությամբ Հռոմը կարողացել եր ստեղծել իրեն սպասարկող ներբողական պատմագրություն, վորը լռության եր մատնում հակառակ պատմական ճշմարտության Հռոմի համար աննպաստ փաստերը[1]։ Հռոմեական պատմագետների անարժանահավատ լինելն ընդգծել ե դեռ առաջին դարում (մեր թվ. հ.) հռչակավոր հին մատենագիր Հովսեփոս Փլավիոսը։ Սա հրեական պատերազմի իր պատմության առաջաբանում առանձնապես մատնանշել ե, վոր մինչևիսկ ականատես հռոմեական հեղինակները մեծ չափով աղավաղել են փաստերի իսկությունը և, խեղաթյուրելով պատմական ճշմարտությունը, կամ ներբողներ են գրել ի հաճույս Հռոմի և կամ չարախոսություններ սրա թշնամիների մասին։

Պետք ե ասել, վոր հակառակ կողմը ևս, նաև Հայաստանն ու Պոնտոսը, ունեցել են այս ժամանակաշրջանում իրենց ուրույն պատմագրությունը։ Հին աղբյուրների մեջ հիշատակված ե, որինակ, հռոմեատյաց (Misoromaeus) Մետրոդորոս Սկեպսացու ընդարձակ պատմությունը Տիգրան Յերկրորդի մասին, վորը համարվել ե փայլուն ու տաղանդավոր աշխատություն։ Հիշատակված են նույնպես պատմական կարևոր յերկերը Հերակլիդեսի, Տեվկրոսի, Ապոլլոնիդեսի, Դիոփանտեսի և ուրիշ շատ շատերի, վորոնք յեղել են Միհրդատին կուսակից հեղինակներ։ Սակայն Հայաստանի ու Պոնտոսի պարտությունից և հելլենիստական կուլտուրայի քայքայումից հետո այս յերկրներում՝ պահպանվել են, բնականաբար, գլխավորապես, այն յերկերը, վորոնք հաճելի եյին հաղթական Հռոմին։ Տիգրան-Միհրդատյան դարաշրջանի պատմությունը կարող եր, իհարկե, շատ կետերում բոլորովին այլ լուսաբանություն ստանալ, յեթե պահպանված լինեյին նաև վերոհիշյալ հակառակ կուսակցության գրվածքները։

Չնայած բուն հռոմեական աղբյուրների վերև մատնանշված թերություններին, վոր քննության են առնված ու ընդգծված նաև իրենց յեվրոպական պատմագետների ու բանասերների գրվածքներում՝ այդ աղբյուրները, այնուամենայնիվ, միակ ու գլխավոր հիմքն են կազմել Մոմզենի, Ռեյնաքի ու մյուս պատմա-

---

[1] Տես Cicero, De imperio Cn. Pomp. IX, 25:

գետների ուսումնասիրություններին։ Սրանք անվերապահ կերպով ոգտվել են մինչև իսկ Պլուտարքոսի կենսագրությունների կասկածելի ու անվստահելի վկայություններից, վորոնց մեջ, ինչպես կտեսնենք, չարամտորեն տրված են Տիգրան Բ-ի ու նրա պետության ֆեոդալական կազմակերպության այլանդակ ծաղրանկարները։ Յեվրոպական պատմագետները բավարարաչափ ուշադրության չեն առել, դժբախտաբար, վոր Պլուտարքոսի և հռոմեական մյուս հեղինակների ստահոդ տեղեկությունները հերքվում են հաճախ փոքրասիական-հելլենիստական չեզոք աղբյուրներում պահպանված վկայությունների ոգնությամբ, վորոնք պարզ կերպով ցույց են տալիս այդ տեղեկությունների անհավաստիությունը։

Մեր այս յեզրակացություններն ու դիտողությունները հարկադրելու եյին մեզ, բնականաբար, նոր քննության ու վերագնահատման յենթարկելու բոլոր կարևորագույն սկզբնաղբյուրները։ Ինչպես մեր այս ուսումնասիրության ընթացքում կտեսնենք, ոգտագործելով այդ աղբյուրները քննադատորեն ու մեծ զգուշավորությամբ՝ Տիգրան Բ-ի ու նրա դարաշրջանի պատմությունը միանգամայն հնարավոր է պարզել ու լուսաբանել ավելի ճշգրիտ ու ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված է նախկին աշխատություններում։

Յեվրոպական պատմագետների վերոհիշյալ յերկերում Միհրդատ-Տիգրանյան շրջանի պատմության լուսաբանությունն ունի նաև մի ուրիշ մեծ թերություն։

Այս պատմագետները, բացի այն, վոր իրենց լուսաբանության հիմք են ընդունել հռոմեական աղբյուրների միտումնավոր ու գունավորված վկայությունները, իրենք ևս դեպի Արևելքն ու արևելյան ժողովուրդներն ունեցել են աչառու ու անբարյացակամ վերաբերմունք։ Նրանց համակրանքը վոչ թե Միհրդատի կամ Տիգրանի, այլ պարզ կերպով Հռոմի ու նրա զորավարների կողմն է, վորոնց նրանք աշխատել են հերոսացնել ու իդեալականացնել։

Իտալական գիտնական Ֆեռերոն, որինակ, վորը խոշոր պատմաբանի հռչակ ունի՝ Լուկուլլոս զորավարին, վորն ավերողն ու գերեզմանափորը յեղավ Պոնտոսի հելլենիստական փարթամ կուլտուրայի և շքեղ ու հոյակապ հելլենական քաղաքների՝ անվանում է հելլենիզմի պաշտպան ու յերկրպագու։ «Ամեն տեղ,—ասում է Ֆեռերոն,—Լուկուլլոսը կողոպտում եր մեծամեծ հարստու-

թյունները և կատարում եր հրճվանքով հելլենիզմի մեծ հովանավորի իր դերը»[1]։ Մոմզենը և Ռեյնաքը վոչ միայն ուշադրության չեն առել Տիգրան Բ-ի կուլտուրական ու բարենորոգչական ձեռնարկումները հետամնաց Հայաստանում, այլ նրանք մինչևիսկ Տիգրանակերտ քաղաքի հիմնումը, վորը կենտրոն ու նեցուկ եր լինելու Հայաստանի հելլենականացման ու քաղաքակրթման՝ վերագրում են բռնակալ Տիգրանի գոռոզ ու քմահաճ կամակորությանը։ Մոմզենի պատմության մեջ առանձնապես նկատելի յե, բացի այդ, նրա շեշտված հակակրանքը դեպի Արևելքն ու Ասիացիները։ Նա մատնանշում ե, որինակ, վոր Արևելքում ամեն մի հպատակ «հավատարիմ ե ու կեղծ, ինչպես շունը»[2]։ Նրա կարծիքով՝ «Ասիացիների հատկությունն ե նրանց պատրաստակամությունը ստանձնելու գահճի դեր ի հաճույս սուլթանի»[3]։ Ուշագրավ ե հենց այն, վոր Մոմզենը Միհրդատին ու Տիգրանին, վորոնք հելլենիստական տիպի առաջադեմ միապետներ եյին՝ հնարավոր ե համարում անվանել սուլթաններ։

Հռոմի իդեալականացումը և, ընդհակառակը, Արևելքի ստորացումը, վոր վորոշակի նշմարելի յեն յեվրոպական պատմագետների վերոհիշյալ յերկերում՝ հակագիտական ակնրախ մի տենդենց են, վոր չեյին կարող, իհարկե, նրանց կռվան ծառայել Տիգրան-Միհրդատյան դարաշրջանի ճշգրիտ դնահատման։

Կտրականապես պետք ե մերժել յեվրոպական պատմագիտության մեջ գերիշխող նաև այն կարծիքը, վոր իբր թե՝ ինչպես վերջին շրջանի պոնտական-հռոմեական, նույնպես և հայկական-հռոմեական կռիվները, կարելի յե բնորոշել իբրև բարբարոս ու միացյալ Արևելքի ընդվզում ընդդեմ քաղաքակրթված Արևմուտքի։ Մոմզենը պարզ կերպով շեշտում ե, վոր այդ կռիվները սկիզբն եյին Ասիացիների ազգային ռեակցիայի ու ապստամբության ընդդեմ հռոմայեցիների և արևմտյան ժողովրդների[4]։ Նմանապես և Ռեյնաքը մատնանշում ե, վոր այդ կռիվները վերակենդանացումն եյին «Ասիայի ու Յեվրոպայի հակամարտության»[5]։

Սակայն, իրապես, այդ կռիվները, վոր սկսել եյին հանրապետական Հռոմի զորավարներն արևելյան յերկրների ավազակա-

[1] Տես „Величие и падение Рима", т. I, Москва 1915, եջ 184։

[2] Տես „Римская история", т. II, Москва 1887, եջ 271։

[3] Տես նույնը, եջ 290։

[4] Տես նույնը, եջ 273։

[5] Տես Mithridate Eupator, եջ XI:

յին կողոպտման ու ֆինանսական շահագործման նպատակով՝ մըղվում էին ո՛չ թե բարբարոս միացյալ Արևելքի, այլ յերկու կիրթ ու առաջացած միապետների դեմ, վորոնք թե իրենց յերկրներում և թե ամբողջ Մերձավոր Արևելքում աշխատում էին զարկ տալ հելլենիստական քաղաքային կենցաղի ու կուլտուրայի և առևտրի ու արդյունաբերության նոր բարգավաճման ու բուռն զարգացման։

Այս տեսակետից միանգամայն ճիշտ պետք է համարել ֆրանսական գիտնական Մորգանի հետևյալ դիտողությունը։ «Ջախջախելով Միհրդատին և Տիգրանին,—ասում է Մորգանը,— հռոմայեցիները վերջ էին դնում մակեդոնական կուլտուրային Ասիայում, ուր բոլոր այն պետություններից, վորոնք ստեղծվել էին Աղեքսանդրի նվաճումներից հետո, մնացել էին միմիայն փլատակներ ու միմիայն թագավորիկներ, վորոնք անկարող էին զորավիգ լինել հելլենական փառքին։ Պոնտոսի և Հայաստանի յերկու մեծ թագավորները վերջիններն էին, վորոնք կըկարողանային վերանորոգել իրենց ոլեսուտյուններում Հելլադայի գեղեցիկ քաղաքակրթությունը»[1]։

Առաջավոր Ասիայի հետագա կուլտուրական հետադիմության համար ամենամեծ պատասխանատվությունն ընկնում է պարզապես Հռոմի վրա։ Սա ո՛չ միայն կողոպտել ու ավերել էր Արևելքը ռազմական արշավանքների, այլև ֆինանսական ու վաշխառուական շահագործման միջոցով։ Արևելքից գրեթե անընդհատ Իտալիա ու Հռոմ էին ուղարկվում իբրև ավար ու շահույթ յերկրի հարստությունները և իբրև ստրուկ՝ աշխատանքային վորակյալ ուժերը։ Դժվար չէ հետևաբար յենթադրել, վոր ատելության ու հակամարտության այն մեծ վիհը, վոր հաջորդ դարերում գոյություն ուներ իրանական Արևելքի և հռոմեական Արևմուտքի միջև՝ մեծապես խորացրել էր հենց ինքը Հռոմը Տիգրան-Միհրդատյան շրջանում։

Մեր այս ընդհանուր առաջաբանի վերջում անհրաժեշտ է նաև մատնացույց անել, վոր Տիգրան Բ-ի պատմությունը, վորը Մոմզենի, Ռեյնաքի և Ֆեռեռոյի վերոհիշյալ յերկերում քննարկված է իբրև մի միջադեպ ու հավելումն Հռոմի կամ Պոնտոսի պատմության՝ սույն մենագրության մեջ առաջին անգամ ուսում-

[1] Տե՛ս J. de Morgan, Histoire du peuple arménien, Paris 1919, էջ 80։

նասիրված է Հայաստանի պատմության շրջանակի մեջ, որը բավականաչափ ծանոթ չէ յեղել օտար պատմագետներին։

Նոր է մեր ուսումնասիրության մեջ, բացի սկզբնաղբյուրների վկայությունների քննական ու համեմատական լուսաբանումներից, նաև այն, որ մեզ հաջողվել է, շնորհիվ պատմական-աշխարհագրական նախորդ մեր աշխատությունների՝ ճշտել այժմ Լուկուլլոսի ու Պոմպեյոսի արշավանքների ճանապարհները և լուսաբանել տեղագրական այն վիճելի ու մութ խնդիրները, որոնք դեռ մինչև այժմ պարզված չեն աղբյուրների բացակայության պատճառով։ Հին այդ ռազմուղիների պարզորոշ բացատրության համար այս աշխատությանը կցված են մանրամասն ու հատուկ քարտեզներ։

## 2. ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՏԻԳՐԱՆ Բ-ԻՑ ԱՌԱՋ

*Առաջավոր Ասիայի պատմության համար Ալեքսանդր Մակեդոնացու և Սելևկյանների տիրապետությունը սկիզբն յեղավ վոչ միայն նրա տնտեսական զարգացման ու արագ վերելքի, այլ մասամբ նաև նրա սոցիալական կերպափոխման։*

*Մակեդոնական տիրապետությունն արտակարգ մի շրջան դառավ այստեղ առևտրի, արհեստների ու արդյունագործության բուռն բարգավաճման, բազմաթիվ հունական գաղութների ու քաղաքների հիմնարկման և հելլենիստական քաղաքային կուլտուրայի առաջացման, վորով միանգամայն նոր ընթացք տրվեց Մերձավոր Արևելքի հետագա զարգացման։*

*Հելլենական Արևմուտքը, նվաճելով 334—330 թվերին (մեր թվ. առաջ) ամբողջ Մերձավոր Արևելքը և հիմնելով այստեղ աշխարհակալ մի մեծ պետություն, վորը տարածվում եր մինչև Հնդկական ովկիանոսը և Իրանի հյուսիս-արևելյան շրջանները՝ հարուստ այս յերկիրը դարձրել եր հելլենական գաղթավայր և իրեն նպատակ եր դրել, կերպարանափոխելով Արևելքը հելլենիստական ինքնավար քաղաքների ու գաղութների միջոցով՝ միաձուլել նրան իր հետ։ Ալեքսանդր Մակեդոնացուց և նրա հաջորդներից հետո Արևելքի հելլենականացման նույն քաղաքականությունը վարեցին նաև Սելևկյանները, մանավանդ, իրենց տիրապետության առաջին շրջանում։*

*Սակայն հելլենականացման այդ քաղաքականությունը, ինչպես և լայնատարած Արևելքի տևական միացումը, չափազանց դըժվար ձեռնարկություններ եյին, վոր վեր եյին իշխող հելլենների համեմատաբար անհամաչափ ու փոքր ուժերից։*

*Արդեն Սելևկյան ամենահզոր թագավորների ժամանակ սկսվեց հետզհետե նրանց մեծ ու աշխարհակալ պետության անդամատումը և քայքայումը։ Մոտավորապես 305 թվին Սելևկյանները կորցրին նախ և առաջ իրենց հնդկական գավառները։*

Այնուհետև մոտ 255 թվին Սելևկյան թագավորությունից անջատվեցին Բակտրիան և Սոգդիանեն։ Նույն այդ ժամանակներում կարողացան պահպանել իրենց անկախությունը կամ ինքնուրույնությունը Կապպադովկիան, Պոնտոսը, Հայաստանը և Ատրպատականը։ Այնուհետև յերրորդ ու յերկրորդ դարերում (մեր թվ. առաջ) Սելևկյանների դեմ հանդես յեկան նրանց նոր ախոյանները՝ Պարթև Արշակունիները և Հռոմը։ Այս յերկու հզոր պետությունները ժառանգելու եյին հետզհետե նրանց ամբողջ թագավորությունը։

Պարթևական թագավորության հիմնադիրն է համարվում Արշակ Ա-ը, ծագումով պարթևներին ազգակից Ապարն կամ Պարն թափառական ցեղից։ Մոտավորապես 250 թվին (մեր թվ. առաջ) սա ապստամբել եր իր ցեղակիցների հետ Սելևկյանների դեմ և սպանել եր նրանց սատրապին։ Արշակ Ա-ից հետո՝ նրա յեղբայրը և հաջորդը, Տրդատը կամ Արշակ Բ-ը, հաղթելով Սելևկոս Բ. Կալլինիկոսին (248—210 թ.)՝ վերջնականապես հաստատվեց Պարթևստանում և նվաճեց շուտով նաև հարևան Վրկանը, վորի կենտրոնն եր Զադրակարտա քաղաքը՝ այժմյան Աստրաբադը։

Պարթևական թագավորությունը, վոր կազմվեց Սելևկյան մեծ պետության հյուսիս-արևելյան սահմանում՝ սկզբում, ինչպես տեսնում ենք, մեծ չեր։ Նրա աշխարհակալական ընդարձակումը, վորով վերջ դրվեց Սելևկյանների իշխանության ու հելլենիզմի տարածմանն իրանական արևելքում՝ սկսվեց Միհրդատ Ա-ի ժամանակ (171—138 մեր թվ. ա.)։ Սա օգտվեց Սելևկյանների ներքին յերկպառակություններից և նվաճեց նրանց արևելյան յերկրները՝ հնդկական Կովկասից մինչև Եփրատ գետը և Կապպադովկիայի սահմանները[1]։ Արևմտյան հելլենիզմը հարկադրված յեղավ այսպիսով քաղաքական ու կուլտուրական իր դիրքերը զիջելու արևելյան իրանիզմին, և այնուհետև Սելևկյանների իշխանության տակ առժամանակապես մնացին միայն հյուսիսային Ասորիքը և Կիլիկիան։

Հենց նույն այս յերկրորդ դարում, յերբ պարթևները տեր եյին դառնում Սելևկյանների արևելյան յերկրներին՝ արևմուտքում ևս հելլենական մանր պետությունների և Սելևկյան թագավորության դեմ հանդես յեկավ Հռոմը։

---

[1] Տես Justini M. Juniani, Epitoma historiarum Philippicarum Pompei Trogi, XLI, 5, 8:

Նրա ծավալումը Միջերկրական ծովի արևելյան յերկրներում սկսվել եր արդեն փունիկյան յերկրորդ պատերազմից հետո (218—201 թ.)։ Անտիոքոս Մեծի Մագնեսիայի մոտ կրած վճռական ու ծանր պարտությունը 190 թվին հռոմայեցիներին հնարավորություն տվեց ամրացնելու իրենց ազդեցությունը Փոքր Ասիայի մանր պետությունների վրա։ Ինչպես Հունաստանում, նույնպես և այստեղ՝ Հռոմը հրապարակ յեկավ սկզբում՝ իբրև ազատարար ու հովանավոր մանր պետությունների ու ճնշված ժողովրդների։ Սակայն, իրապես, Նրա քաղաքականության Նպատակն եր գրգռել ու թշնամացնել իրար դեմ բարեկամ այդ պետությունները և, ուժասպառ անելով բոլորին՝ հաստատել ամենուրեք իր տիրապետությունը։

Դառնալով տեր ու տնօրեն Հունաստանի ու Մակեդոնիայի՝ Նա շուտով պատռեց անշահասեր ազատարարի իր կեղծ դիմակը և 133 թվին վոտք դրեց Փոքր Ասիա վորպես Նվաճող և հաստատեց իր իշխանությունը Պերգամոնում։ Հռոմեական Նենգ ու ճարպիկ դիվանագիտության յեռանդուն գործունեությանը պետք և վերագրել, հավանորեն, Պերգամոնի թագավոր Ատտալոս Գ-ի կտակը, վորի համաձայն Նա իր թագավորությունն ու ամբողջ հարստությունը թողեց իբրև ժառանգություն Հռոմին։ Պերգամոնը դառավ այնուհետև հռոմեական Նահանգ և անվանվում եր «պրովինցիա Ասիա»։

Իմպերիալիստական Հռոմի այս մուտքն Ասիա, ինչպես կը տեսնենք, սկիզբն եր այն մեծ ավերածության ու աղետի, վորն իր հետևանքներով ահավոր ու կործանարար յեղավ հելլենիստական Արևելքի տնտեսական ու կուլտուրական հետագա զարգացման համար։ Հելլենական աշխարհակալները ևս Նվաճել եյին Արևելքը շահագործման Նպատակով, սակայն Նրանք, ինչպես ասացինք, հիմնելով այստեղ հարյուրավոր քաղաքներ ու գաղութներ և ստեղծելով բարեհաջող պայմաններ առևտրի, արհեստների և արդյունագործության աճման ու զարգացման համար՝ մեծապես Նըպաստել եյին Նրա առաջադիմությանը։ Մինչդեռ հռոմեական հանրապետության տիրապետությունն առաջին դարում (մեր թվ. առաջ) աղետալի մի դարաշրջան եր արևելյան յերկրների տընտեսական ու կուլտուրական հետադիմության՝ անհաշիվ հարստությունների և անթիվ ստրուկների փոխադրման Արևելքից Արևմուտք և, ընդհանրապես, տեղական հելլենիստական պետությունների ու քաղաքների կողոպտման ու կործանման։

Հարկավոր է նաև մատնանշել, որ Ասիայի կողոպտիչներն ու ավերիչներն էին ոչ միայն հռոմեական հանրապետության հռչակավոր զորավարները, պաշտոնյաները և կապալառուները, որ ուղարկվում էին Արևելք, այլ և նրա անվանի ու առաջադեմ համարվող քաղաքական գործիչները։ Ժողովրդական տրիբուն Կայոս Գրաքխոսի առաջարկությամբ 123—122 թվերին հրատարակվել էին մի շարք օրենքներ, որոնք՝ թեև, մեծ մասամբ, անմիջական կապ չունեին Արևելքի հետ՝ սակայն մեծապես սաստկացրել էին պրովինցիա Ասիայի անողոք շահագործումը։ Հենց նրա հայտնի հացահատիկային օրենքը (lex frumentaria), որի համաձայն հռոմեական քաղաքացիները ստանում էին մայրաքաղաքում էժան հաց՝ հարկադրել էր նրան գանձել պրովինցիա Ասիայից ուղղակի ու անուղղակի նոր ու ծանր հարկեր։ Բացի այդ, նա հատուկ օրենքով կարգադրել էր, որ հարկահավաքումը Ասիայում տրվի կապալով հեծվոր դասին։ Նա այդ արել էր պարզապես այն դիտավորությամբ, որպեսզի ապահովի դրամատեր հարուստ այս դասի համագործակցությունն ընդդեմ ազնվականության։ Բացի հարկահավաքումից Սեմպրոնիուսի 123 թվի օրենքով (lex Sempronia judicaria) հեծվոր դասին էր հանձնվել նաև դատական իշխանությունը քրեական գործերում։

Միանգամայն հասկանալի է, իհարկե, որ վերոհիշյալ օրենքների շնորհիվ պրովինցիա Ասիան հյուծվելու ու արնաքամ էր լինելու տնտեսապես հռոմեական կապալառուների ու վաշխառուների քմահաճ կամայականությունների ցանցում[1]։ Ասիական նահանգի ու հռոմայեցիների դաշնակից փոքրասիական պետությունների ծանր դրությունն անկեղծորեն մատնանշված է Լիվիուսի պատմության մեջ։ Նրա ասելով՝ այնտեղ ուր մուտք էին գործում հռոմեական կապալառուները՝ անզոր էր դառնում հանրային իրավունքը և վերանում էին դաշնակիցների ազատությունները[2]։

Հռոմից ու Իտալիայից լեկած խոշոր ու մանր վաշխառուները և հռոմեական բանկերի գործակալները դաժանորեն շահագործում էին ոչ միայն պրովինցիա Ասիան, այլև կեղեքում էին նաև Փոքր Ասիայի մանր պետությունները՝ Բիթանիան, Գալատիան և Կապպադովկիան։ Հռոմի այս դաշնակիցները ևս վաղ թե ուշ,

---

1 Հմմտ. Victor Chapot, La province romaine proconsulaire d'Asie, Paris 1904, էջ 41—49։

2 Տես XLV, 18։

կորցնելով իրենց խարուսիկ անկախությունը՝ զոհ եյին դառնալու հռոմեական գիշատիչ իմպերիալիզմին։

Թե վորքան ծանր եր հռոմեական տիրապետությունն Ասիայում՝ այդ ցայտուն ու պատկերավոր կերպով մատնանշել ե գերմանական պատմագետ Թ. Մոմզենը։

«Կայոս Գրաքխոսի վերոհիշյալ որենքների գործադրումից հետո,—ասում ե Մոմզենը,—հռոմեական առանց այն ել ծանր տիրապետությունը վերածվեց [Արևելքում] այնպիսի անտանելի մի ճնշման, վոր վոչ արքայական թագը և վոչ ել շինականի խրճիթն ապահով չեյին գրավումից. ամեն մի հասկ աճում եր այնտեղ հարկահավաքների համար և ամեն մի յերեխա ծնվում եր, հավանորեն, իբրև զոհ ստրկավաճառների համար։ ...Յեվ յեթե այդ խաղաղ յերկրներում և այնտեղ ապրող փափկակյաց ժողովրդների մեջ յերևան գար մի մարդ, վորն ընդունակ լիներ ազդանշան տալու ընդհանուր ապստամբության՝ կարելի յեր սպասել, վոր այնտեղ տեղի կունենան զարմանալի ու զարհուրելի անցքեր»[1]։

Շուտով, իրապես, ինչպես կտեսնենք, բռնկվեց նախ Փոքր Ասիայում և ապա նաև Հունաստանում մեծ ապստամբություն, վորը հետզհետե փոխարկվեց սոցիալական հեղափոխության։ Հրահրողը պատմական այդ ցնցող դեպքերի Միհրդատ Պոնտացին եր՝ հռոմայեցիների հզոր ու անհաշտ ախոյանը։

Պոնտական թագավորությունը, վորը գլխավոր մասնակիցն եր այդ մեծ անցքերի, գտնվում եր Սև ծովի հարավային կողմում՝ Բիթանիայի, Գալատիայի, Կապպադովկիայի և Փոքր Հայքի միջև։ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ այս յերկիրը, վորի մեջ ապրում եյին սեմական, արիական և բնիկ փոքրասիական ցեղեր՝ մեծ չափով յենթարկվել եր իրանական կենցաղի ու կուլտուրայի ազդեցության։ Նրա ծովափնյա շրջաններում՝ Սինոպում, Ամիսոսում, Տրապիզոնում և մյուս քաղաքներում՝ հաստատվել եյին դեռ Աքեմենյանների աշխարհակալ տիրապետությունից առաջ հունական գաղութներ, վորոնք զորեղ ներցուկներ եյին հելլենական քաղաքակրթության ու լեզվի տարածման։ Պարսկական ազնվականությունը, վորը գրավել եր այստեղ հողեր ու կալվածներ, կազմում եր զգալի մասը իշխող դասի։ Պարսկական ազնվական ամենաբարձր տոհմից եր նաև Մի-

[1] Տես „Римская история", т. II, перевод Неведомского, Москва 1887, եջ 269։





2865 A II/33371

հրդատ Ա–ը (302—266 մեր թվ. առ.), վորը հիմնադիր է համարվում Պոնտական թագավորության։

Նոր հիմնված այս թագավորությունը, վոր բավական ընդարձակվել եր Միհրդատ Ա–ի հաջորդների ժամանակ՝ իր հզորության ու փառքի գագաթնակետին հասավ առաջին դարի սկզբներում (մեր թվ. առաջ) Միհրդատ Եվպատորի թագավորության ընթացքում (111—63 թ.), վորին անվանում են նաև Մեծ։ Պոնտոսի այս հզոր թագավորը կարճ ժամանակում նվաճել եր հին Կողքիսը՝ մինչև Դիոսկուրիա և մինչև այժմյան Սուխումը, նաև այժմյան հարավային Ռուսաստանում՝ Տավրիկյան Խերսոնեսը ու նրա հարևան սկյութական յերկրները, և Պոնտոսի հարավ–արևելքում՝ Փոքր Հայքը, վորը նվաճումից առաջ առանձին թագավորություն եր։ Այս մեծ նվաճումներից հետո Պոնտոսը մեծագույն պետությունն եր դառել Փոքր Ասիայում և ամենահզոր հակառակորդը իմպերիալիստական Հռոմի։

Պոնտոսի և Փոքր Հայքի հարավում գտնվում եր Կապպադովկիան, վորը սահմանակից եր հայկական հին Ծոփքին և տարածվում եր հարավում մինչև Կիլիկիա, արևմուտքում՝ մինչև Լիկաոնիա և հյուսիս–արևմուտքում՝ մինչև Գալատիա։ Այստեղ ևս, ինչպես և Պոնտոսում, Սելևկյանների տիրապետության առաջին տարիներում կազմակերպվել եր առանձին թագավորություն, վորի հիմնադիրն եր Արիարաթ Բ–ը (հավանորեն, 301—280 թ.)՝ ծագումով, ինչպես և Պոնտոսի թագավոր Միհրդատ Ա–ը, պարսկական ազնվականության բարձր տոհմից։ Դիոդորոս Սիկիլիացու վկայությամբ[1] Արիարաթ Բ–ը կարողացել եր տիրել Կապպադովկիային ոգնական զորքերի աջակցությամբ, վոր նա ստացել եր արմենների Արդոատես (᾿Αρδοάτης) թագավորից։ Կապպադովկիայում ևս, ինչպես և Պոնտոսում, իշխող դասակարգը բաղկացած եր, մեծ մասամբ, կալվածատեր պարսիկ ազնվականներից և յերկիրը Աքեմենյան տիրապետության ժամանակ յենթարկվել եր իրանական պետականության և իրանական կուլտուրայի ազդեցության։ Սակայն նաև այստեղ հելլենականությունը հաստատվել եր քաղաքներում և նրա ազդեցությունը զորեղ եր, գլխավորապես, ժողովրդի բարձր խավերի շրջանում։

Բացի Պոնտոսից և Կապպադովկիայից Միհրդատ–Տիգրանյան շրջանի պատմական անցքերին մասնակից եյին նաև Բիթանիան և Գալատիան։

---

1 Տես XXXI, 19, 5:

Բիթանիան գտնվում էր Փոքր Ասիայի հյուսիս-արևմտյան անկյունում՝ Սև ծովի, Բոսփորի և Պրոպոնտիսի ափերին, և տարածվում էր արևելքում մինչև Պափլագոնիա, հարավ-արևելքում՝ մինչև Գալատիա, իսկ հարավում՝ մինչև Միսիա։ Այս երկիրը կոչվում էր Բիթանիա թրակիական բիթանների անունով, որոնք թրակիական ուրիշ ցեղերի հետ գաղթել էին Փոքր Ասիա Բալկանյան թերակղզուց։ Այս գաղթականները հիմնել էին այստեղ Բիթանիայի թագավորությունը, որն Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ կիսանկախ էր և կազմակերպվել էր իբրև անկախ պետություն երրորդ դարի սկզբներում։ Ինչպես և Փոքր Ասիայի մյուս արևմտյան շրջանները՝ Բիթանիան ևս մեծ չափով ենթարկվել էր հելլենական կուլտուրայի ազդեցության։

Փոքր Ասիայի կենտրոնում գտնվում էր Գալատիան, որը սահմանակից էր Բիթանիային, Պոնտոսին և Կապադովկիային։ Իր անունը սա ստացել էր գալատներից կամ կելտերից, որոնք 277—276 թ. մեր թվ. առաջ Թրակիայի վրայով եկել էին Փոքր Ասիա և այստեղ բնակություն էին հաստատել Փռյուգիայում։ Այս եկվոր ու ռազմիկ ժողովուրդը, որ բաղկացած էր երեք ցեղային հատվածներից և բաժանված էր առանձին տոհմերի՝ չէր կարողացել ստեղծել միաբան ու միահար պետություն և խաղալիք էր դառել հռոմեական ճարպիկ դիվանագիտության ձեռին։

Գալատները և Բիթանիայի ու Կապադովկիայի թագավորությունները, ինչպես ներքև կտեսնենք, հլու և հնազանդ դաշնակիցները դառան արշավող հռոմեական իմպերիալիզմի և հռոմեական զորքերի հետ մասնակից եղան թե հռոմեա-պոնտական և թե հայ-հռոմեական բոլոր մեծ պատերազմներին։

## 3. ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՏԻԳՐԱՆ ՅԵՐԿՐՈՐԴԸ

*Աքեմենյան Պարսկաստանի անկումից հետո վո՛չ Ալեքսանդր Մակեդոնացին, վո՛չ էլ Սելևկյանները չկարողացան տիրել Հայաստանին յերկարատև ու հաստատուն կերպով։*

*Պարսկական յերկու սատրապությունների փոխարեն հիմնվեցին այստեղ յերեք առանձին իշխանություններ՝ Փոքր Հայքը, Ծոփքը և Մեծ Հայքը, վորոնց կառավարիչները կամ նախկին սատրապների հետնորդներն եյին և կամ բնիկ իշխանները։ Հայկական այս իշխանությունները, թեև Սելևկյան թագավորության սատրապություններ եյին համարվում, սակայն նրանց վասալական կախումը Սելևկյաններից յեղել է հաճախ գրեթե անվանական։*

*Անտիոքոս Մեծի Մագնեսիայի մոտ կրած պարտությունը (190 թ. մեր թվ. առ.) անկախության ընդհանուր շարժման ազդանշան յեղավ վո՛չ միայն Փոքր Ասիայում, այլև հայկական լեռնաշխարհում։ Այդ պարտությունից հետո, ինչպես վկայում է Ստրաբոնը[1]՝ Անտիոքոս Մեծի յերկու զորավարները, վորոնք կառավարում եյին Մեծ Հայքը և Ծոփքը Անտիոքոսի հավանությամբ՝ անցան հռոմայեցիների կողմը և հայտարարեցին իրենց անկախ թագավորներ։*

*Այսպիսով յերկրորդ դարի առաջին կիսում արմենական յերկրները մնացին դարձյալ բաժանված յերեք անջատ մասերի, վորոնք ունեյին իրենց առանձին թագավորները։ Փոքր Հայքում իշխում եր Փառնակ Պոնտացու (190—169 թ.) դաշնակից Միհրդատ թագավորը, Մեծ Հայքում՝ Արտաշեսը և Ծոփքում, Ակիսենեյում, Ոդոմանտիսում և մի քանի ուրիշ գավառներում՝ Զարեհը։*

*Այս թագավորություններից ամենազորեղն ու ամենաընդարձակը, ինչպես յերևում է նշանավոր հույն պատմագիր Պոլիբիոսի*

---

1 *Տես* XI, 14, 15:

*ուշադրավ մի վկայությունից, Մեծ Հայքն էր։ Վերոհիշյալ Արտաշեսին Պոլիբիոսն անվանում է* «Արմենիայի մեծագույն մասի *կառավարիչ*»[1]։ *Նույնը հաստատում է նաև Ստրաբոնը հետևյալ իր վկայության մեջ։*

> *«Պատմում են,—ասում է Ստրաբոնը,—որ Արմենիան չնչին է առաջ փոքր և մեծացել է Արտաշեսի ու Զարեհի միջոցով։ ...Սրանք ընդարձակել էին իրենց երկրների սահմանները և շրջակա ժողովրդներից գրավել էին հետևյալ շրջանները. մարացիներից՝ Կասպիանեն, Փավնիտիսը և Բասորոպեդան, իբերներից՝ Պարիադրեսի լեռնալանջերը, Խորձենեն և Գոգարենեն, որ գտնվում է Կուր գետի մյուս կողմում, խալիբներից ու մոսինոյկներից՝ Կարենիտիսը և Քսերքսենեն, որոնք սահմանակից են Փոքր Հայքին կամ նրա մասերն են, կատաոններից՝ Ակիլիսենեն և Անտիտավրոսի կողմերը գտնվող երկիրը և ասորիներից՝ Տամոնիտիսը»*[2]։

*Մեջ բերված այս վկայությունից երևում է, որ Արտաշեսը նվաճել էր Կասպյան երկիրը կամ Փայտակարանը* (=Κασπιανή), *Վասպուրականը* (=Βασοροπέδα), *Փավնիտիսը* (°), *Պարիադրեսի լեռնալանջերը (այսինքն՝ Տայքը), Կղարջքը* (=Χορζηνή)[3], *Գուգարքը* (=Γωγαρηνή), *Կարնո գավառը* (=Καρηνῖτις), *Դերջանը* (=Ξερξηνή)[4] *և Տմորիքը* (=Ταμωνῖτις)[5], *իսկ Զարեհը՝ Եկեղյաց գավառը* (=Ἀκιλισηνή) *և Անտիտավրոսի կողմերը գտնվող երկիրը։ Նույն վկայության շարունակության մեջ Ստրաբոնը հաղորդում է նաև, որ ընդարձակված այս Արմենիայի մեջ նրա ժամանակ բոլորը համալեզու էին, այսինքն՝ խոսում էին հայերեն։ Ստրաբոնի այս տեղեկությունը կարելի չէ ընդունել վերոշ, իհարկե, վերապահությամբ։ Հայաստանի զանազան շրջաններում, ինչպես հայտնի է, նույնիսկ Սասանյանների ժամանակ*

---

1 *Տես* „Всеобщая история в 40 книгах", перевод Мищенка, т. I—III, Москва 1890—1899, XXV, 2, 12:

2 *Տես* XI, 14, 5 (528):

3 Χορζηνή-*ն Մարկվարտն առաջարկում է ուղղել և կարդալ* Χολαρζηνή, *տես* Eranschahr nach der Geographie des Ps. Moses Xor., Berlin 1901, *էջ 116*։

4 Ξερξηνή-*ն պետք է ուղղել* Δερξηνή *(ըստ Պլինիոսի* Nat. Hist. 5, 83—Derxene, Derzene), *տես Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», Թրգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա 1907, էջ 21*։

5 *Ստրաբոնի հունարեն բնագրում գրված է* Ταμωνῖτις *փխ.* Ταμωρῖτις, *տես* Marquart, Eranschahr, *էջ 170*։

և անգամ նրանց տիրապետությունից հետո կային օտարալեզու ցեղեր։ Ուրեմն՝ Ստրաբոնի վկայությունը պետք է, ըստ յերևույթին, յենթադրել այն իմաստով, որ Հայաստանում նրա ժամանակ տարածված ու գերիշխող լեզուն յեղել է հայերենը։

Ընդարձակվել էր նույն այս յերկրորդ դարում (մեր թվ. առ.) բացի Մեծ Հայքից ու Ծոփքից նաև Փոքր Հայքը, որը նվաճել էր արևմտյան Պարիադրեսի և հյուսիս-արևելյան Պոնտոսի ծովափնյա շրջանները և հասցրել էր իր սահմանները մինչև Սև ծովը։

> «Փոքր Հայքը,— ասում է Ստրաբոնը,— բավական պտղաբեր յերկիր է։ Այստեղ ևս, ինչպես և Ծոփքում, միշտ կառավարում էյին յերկիրը սեփական իշխանները, որոնք կամ բարեկամ ու դաշնակից էյին մյուս արմեններին և կամ իրենց գործերը վարում էյին առանձին ու անկախ։ Փոքր Հայքն իրեն հպատակեցրել էր խալդայներին և տիբարեններին, այնպես որ նրա իշխանությունը տարածվում էր մինչև Տրապիզոն ու Փառնակիա»[1]։

Հայաստանում և Կապպադովկիայի հյուսիսում կազմվել էյին, ինչպես տեսնում ենք, փոխանակ միահար ու միաձույլ մեծ պետության՝ յերեք արմենական անկախ թագավորություններ։ Յեվ միանգամայն հասկանալի յէ, իհարկե, որ արմենների ցրվածությունն ու այս բաժանումը արգելք էյին հանդիսանալու նրանց ընդհանուր ու համերաշխ գործակցության։

Արմենական յերկրների միացման կարևորությունը, հավանորեն, գիտակցվել է առավելապես նրանց քաղաքական վերելքի այս շրջանում։ Հայտնի յէ, որ Արտաշես Ա-ը, որն անչափ ընդարձակել էր Մեծ Հայքը՝ ուզեցել էր նաև նվաճել հարևան Ծոփքը։ Սակայն Մեծ Հայքի զորեղացումը և արմենական յերկրների քաղաքական միաձուլումը չէյին կարող հանդուրժել Կապպադովկիան և Պոնտոսը։ Փոքր Հայքն ու Ծոփքը, որոնց անկախությանը Արտաշեսյան հզոր թագավորության կողմից վտանգ էր սպառնում՝ սերտ կերպով հարեցին օտար այս պետություններին և ապավինեցին սրանց օգնության։ Դիոդորոս Սիկիլիացին վկայում է[2], որ Արտաշեսին չհաջողվեց իր թագավորությանը միացնել Ծոփքը շնորհիվ Կապպադովկիայի Արիարաթ Ե. թագավո-

[1] Տես XII, 3, 28:
[2] Տես De virt. et vitiis, հատված XXXI, 22:

րի միջամտության։ Այս վերջինի օգնությամբ ստացավ իր հայրենի թագավորությունը Զարեհի որդին, Միրուժանը, որն Արտաշեսի հարձակման ժամանակ փախել էր Կապադովկիա։

Արտաշեսյան Մեծ Հայաստանի մասին մատենագրական աղբյուրները տալիս են, դժբախտաբար, միայն պատահական ու կցկտուր տեղեկություններ։ Այդ տեղեկություններից առանձնապես կարևոր են Ստրաբոնի և Պլուտարքոսի վկայությունները Արտաշատ մայրաքաղաքի մասին, որը հիմնել էր Արտաշես Ա-ը, հավանորեն, 166 թվին (մեր թվ. առ.)[1]։

«Հայաստանի քաղաքներն են,—ասում է Ստրաբոնը, —Արտաքսատան (որն անվանում են նաև Արտաքսասատա և որը հիմնել էր Աննիբալն Արտաշեսի համար) և Արքսատան։ Երկու քաղաքն էլ գտնվում են Արաքսի ափին՝ Արքսատան Ատրպատականի սահմանում, իսկ Արտաքսատան Արաքսի դաշտի մոտ։ Այս վերջինը գեղեցիկ է շինված և յերկրի թագավորանիստ քաղաքն է։ Նա գտնվում է գետածոցում, որը նման է ցամաքակղզու, և նրա շուրջը, բացի պարանոցի մասից՝ գետի առջև ձգվում է պարիսպը, իսկ պարանոցը փակված է խրամով և պատվարով»[2]։

Որ Արտաշատը շինված էր Աննիբալի խորհրդով և նրա ցուցմունքներով՝ այդ մանրամասն հաղորդում է նաև Պլուտարքոսը հետևյալ իր վկայության մեջ։

«Պատմում են,—ասում է Պլուտարքոսը,—որ յերբ Անտիոքոսը պարտություն կրեց հռոմայեցիներից՝ Կարթագենացի Աննիբալը յեկավ Արտաշես արքենի մոտ և հրահանգիչ ու խորհրդատու դառավ բազմաթիվ օգտավետ գործերում։ Նկատելով, բացի այդ, այս յերկրում չօգտագործված ու անտես արված հարմարագույն ու խիստ հաճելի մի վայր՝ նա այդ տեղում ուրվագծեց քաղաքի հատակագիծը։ Աննիբալը տարավ Արտաշեսին, ցույց տվեց հատակագիծը և համոզեց հիմնել այդ տեղում քաղաք»[3]։

Պատմագետներից շատերը կասկածելի յեն համարում թե Արտաշատի հիմնումն Աննիբալի խորհրդով և թե Աննիբալի փախուստը Հայաստան։ Սակայն, այնուամենայնիվ, վերոհիշյալ վը-

---

[1] Տես Fabricius, Theophanes von Mitylene und Q. Dellius als Quellen der Geographie des Strabons, Strassburg 1888. էջ 32 և 131։

[2] Տես XI, 14, 6:

[3] Տես Lucullus, XXXI, 5:

կայությունները խիստ կարևոր են, վորովհետև նրանք պարզ ու վորոշ հաստատում են, վոր Արտաշատը հիմնված ե յեղել յերկրորդ դարում Արտաշես Ա-ի ժամանակ։ Առանձնապես հետաքրքիր են ու կարևոր Արտաշատի տեղադրության ու ամրությունների մասին Ստրաբոնի հաղորդած տեղեկությունները։

Արտաշատի հիմնումն Արարատյան դաշտում կարելի յե համարել Արտաշես Ա-ի կարևորագույն գործերից մեկը։ Այս դաշտն այնուհետև դառավ Հայաստանի քաղաքական ու կուլտուրական միավորման կենտրոնը։

Քաղաքավայրի ընտրությունը աջող եր կատարված թե ռազմական և թե տնտեսական տեսակետներից։ Գտնվելով հայկական լեռնաշխարհի կենտրոնում՝ Արարատյան դաշտն ավելի յեր պաշտպանված արշավող թշնամիներից, քան լեռնաշխարհի սահմաններում գտնվող շրջանները։ Բացի այդ, նրա միջով եր անցնում տարանցիկ առևտրի մեծ ճանապարհը, վորը գալիս եր Միջին Ասիայի ու Ջինաստանի կողմերից և Արտաշատի մոտով գնում եր դեպի Սև ծովի նավահանգիստները։

Ինչպես տեսնում ենք, Արտաշեսյան հարստության հիմնադիրն առաջին կազմակերպողն ե պատմական Մեծ Հայաստանի, և ընդարձակված այս պետությունն արդեն նրա ժամանակ համարյա ամփոփվել եր բնական իր սահմանների մեջ և տարածվում եր հյուսիսային Միջագետքից մինչև Կուր գետը և Ատրպատականից մինչև Ծոփքը և Փոքր Հայքը։ Այս նոր թագավորությունը, վոր դառել եր Առաջավոր Ասիայի ուժեղ պետություններից մեկը՝ այժմ հաշվի յեր առնվում և վորոշ դեր եր կատարում միջպետական հարաբերություններում։ Պոլիբիոսը, վորն իր պատմության մեջ մանրամասն հիշատակել ե Փառնակ Պոնտացու և Փոքր Հայքի Միհրդատ թագավորի 180 թվի կռիվն ընդդեմ Պերգամոնի, Կապադովկիայի և Բիթանիայի թագավորների՝ մեջ ե բերում նրանց ստորագրած խաղաղության դաշինքը և վկայում ե, վոր այդ դաշնադրությանը մասնակից ե յեղել նաև «Արմենիայի մեծագույն մասի կառավարիչ Արտաշեսը»[1]։

Արտաշեսյան անկախ ու միաձույլ Հայաստանի այս զորեղացումը վտանգավոր համարեց Սելևկյան թագավորությունը, վորը հայկական յերկրների նախկին սյուզերենն եր։ Ինչպես վկայում են Դիոդորոս Սիկիլիացին և Ապպիանոսը[2], մոտավորա-

1 Տես XXV, 2, 12:

2 Տես Müller, Fragm. hist. graec. II, եջ X և Appianos, Syr., 45 և 46:

պես 165 թվին (մեր թվ. առ.) Հայաստան արշավեց Անտիոքոս Դ-ը (175—164)։ Սակայն Արտաշես Ա-ը, թեև պարտություն եր կրել, կարողացավ շուտով վերականգնել իր հին իրավունքները։

Դիոդորոս Սիկիլիացու մի այլ վկայությունից[1] հայտնի յե դարձյալ, վոր Սելևկյանների սատրապ Տիմարքոսը, վորն ապըստամբել եր ու հայտարարել իրեն Մարաստանի թագավոր (161 թ.)՝ դաշն եր կնքել Արտաշես Ա-ի հետ և սրա ոգնությամբ ընդարձակել եր իր թագավորության սահմանները մինչև Սելևկիա և Զեգմա։

Աղբյուրների աղքատիկ ու պատահական այս տեղեկությունները չեն տալիս, իհարկե, պարզ ու լրիվ պատկեր այն մեծ շըրջադարձի, վոր տեղի յեր ունեցել Արտաշես Ա-ի ժամանակ։ Սակայն վերոհիշյալ կցկտուր հիշատակությունները անգամ ցույց են տալիս, վոր Արտաշեսյան անկախ ու հզոր Հայաստանի կազմակերպումը սկիզբն եր Հին Հայաստանի պատմության նոր դարաշրջանի։

Ուշագրավ է ու առանձնապես հետաքրքիր, վոր Արտաշեսյան այս շրջանի պատմական մեծ դեպքերը նյութ եյին դառել վիպական հին յերգերի և ավանդությունների, վորոնցից ոգտվել եր Մովսես Խորենացին։ Վոր Արտաշատը հիմնած է յեղել Արտաշեսը՝ այդ հայտնի յե յեղել Խորենացուն, ինչպես ինքն է վկայում, «ի վիպասանացն, որ պատմին ի Գողթան»[2]։ Բացի այդ, ինչպես մատնանշել եմ իմ նախորդ աշխատություններից մեկում[3], Խորենացու մոտ պահպանված են վորոշ հիշողություններ պատմական այն անցքերի ու պատերազմների մասին, վորոնք տեղի եյին ունեցել Հայաստանում Որոնտաս-Յերվանդի և Արտաշես Ա-ի ժամանակաշրջանում և վորոնք նրան հայտնի յեն յեղել նմանապես վիպասանքից կամ հին զրույցներից։ Նոր այս յենթադրությանը կարող են թերևս նեցուկ ծառայել Արմավիրում գտնված հունարեն արձանագրությունները, վորոնք, դժբախտաբար, մինչև այժմ դեռ չեն հրատարակված։

Արտաշես Ա-ից հետո մենք գրեթե տեղեկություններ չունենք Մեծ Հայքի և արմենական մյուս թագավորությունների մասին մինչև Տիգրան Յերկրորդը (95—55 թ. մեր թվ. առ.)։

---

[1] Müller, FHG, II, եջ XII:

[2] Տես «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս 1913, II, գլ. 49։

[3] Տես „О торговле и городах Армении", Эривань 1930, եջ 97։

Յուստինոսի կարևոր մի վկայությունից հայտնի յե միայն, վոր Պարթևական մեծ պետությունը, վորը նվաճել եր հետզհետե Հայաստանի սահմանակից Սելևկյան յերկրները՝ պատերազմ եր մղել նաև հայոց Արտավազդ թագավորի դեմ։ Այս Արտավազդը, հավանորեն, այն Արտավազդն ե, վորը հայկական վեպի մեջ հիշատակված ե իբրև վորդի և հաջորդ Արտաշես Ա-ի[1]։

Վերև մատնանշված վկայության մեջ Յուստինոսը հաղորդում ե, վոր

«Արտավանին հաջորդեց նրա վորդին Միհրդատը, վորն իր գործերի համար կոչվեց Մեծ։ ... Սա մեծ քաջությամբ վարեց հարևանների հետ բազմաթիվ պատերազմներ և միացրեց Պարթևական թագավորությանը շատ ժողովրդներ։ Նույնպես և Սկյութացիների հետ նա մի քանի անգամ աջողությամբ պատերազմեց և վրեժխնդիր յեղավ նախորդների վիրավորանքների համար։ Վերջը կռվեց արմենների թագավոր Արտավազդի հետ»[2]։

Վոչ միայն այս, այլև մատենագրական և ուրիշ վկայություններից հայտնի յե, վոր հենց Միհրդատ Բ. Մեծի ժամանակ միայն (123—88 թ. մեր թվ. առ.) պարթևները կարողացել եյին վերջնականապես նվաճել Միջագետքի յերկրները և Ատրպատականը։ Կարելի յե, ուրեմն, վստահորեն յենթադրել, վոր նրա արշավանքն Արտավազդի դեմ տեղի յեր ունեցել Հայաստանի հարևան յերկրների նվաճումից հետո, ըստ յերևույթին, Ատրպատականի կողմից և, ինչպես յենթադրել ե Մարկվարտը, դաշնակից ու վասսալ Ատրպատականի թագավորի մասնակցությամբ[3]։

Հայ-պարթևական այս պատերազմի ժամանակ, թեև պարթևներին չեր աջողվել նվաճել Հայաստանը, սակայն, հավանորեն, նրանք պարտության եյին մատնել հայերին և, ինչպես վկայում են Յուստինոսը և Ստրաբոնը, պատանդ եյին վերցրել Տիգրան Բ-ին[4]։

Վոր Հայաստանը նվաճված չե յեղել Միհրդատ Մեծի արշավանքի ժամանակ՝ այդ յերևում ե դարձյալ Ստրաբոնի հետևյալ վկայությունից.

«Պարթևները,—ասում ե Ստրաբոնը,—տիրեցին մեդացիների և բաբելոնացիների յերկրներին, բայց վոչ Արմե-

---

1 Տես Խորենացի, I, գլ. Հ և II, գլ. Ծ, ԾԱ—ԾԳ, ԾԵ, ԿԱ և ԿԲ:

2 Տես Just. Epit. XLII, 2, 3—6:

3 Տես Eranschahr, եջ 109։

4 Justin., XXXVIII, 3, 1 և Strabo, XI, 14, 15:

նիային։ Թեև հարձակումներ հաճախ տեղի ունեցան, սակայն յերկիրն ուժով չնվաճվեց։ Ընդհակառակը, Տիգրանը զորեղ կերպով դիմադրեց ու հաղթեց նրանց, ինչպես մենք ասացինք Արմենիայի մասում»[1]։

Պատանդ վերցված Տիգրանի մասին կարևոր են Ապպիանոսի և Ստրաբոնի վկայությունները։ Ապպիանոսի ասելով՝ Տիգրան Բ-ը որդին եր ոչ թե Արտավազդի, այլ Տիգրանի[2]։ Իսկ Ստրաբոնը, խոսելով Արտաշես Ա-ի և Զարեհի մասին՝ վկայում է, որ Տիգրան Բ-ը Արտաշես Ա-ի սերնդից եր[3]։

Պատմական ու բանասիրական նորագույն յերկերում Արտաշես Ա-ի հաջորդների և Արտավազդի ու Տիգրան Բ-ի ազգակցության մասին հայտնվել են հակասական կարծիքներ։ Այդ կարծիքներից հավանական է ըստ իս Ռեյնաքի յենթադրությունը, որը Տիգրան Բ-ին համարում է համաձայն Ապպիանոսի վկայության Տիգրան Ա-ի որդին, իսկ Արտավազդին՝ յեղբայր այս վերջինի[4]։ Պատմագետների ու բանասերների ուշադրությունից վրիպել է, որ Ապպիանոսի հաղորդած տեղեկությունը հաստատվում է Խորենացու պատմության համապատասխան վկայությունների ուշադիր քննությամբ։ Խորենացու մոտ, ինչպես վերև ասացինք, Արտաշեսյան տոհմի առաջին թագավորների մասին պահպանվել են ուշագրավ պատմական հիշողություններ, որոնք հայտնի յեն յեղել նրան վիպասանքից կամ հին գրույցներից։ Հենվելով այդ գրույցների վրա՝ Խորենացին վկայում է, որ Արտաշեսի որդին ու հաջորդը, Արտավազդը, զավակ չի ունեցել և որ Արտավազդից հետո Հայաստանում թագավորել է նրա յեղբայրը՝ Տիրանը[5]։ Պատմահոր հաղորդած կարևոր այս տեղեկությունները, ինչպես տեսնում ենք, համապատասխանում են Ապպիանոսի վերոհիշյալ վկայության։ Կարող ենք ըստ իս, համաձայն այդ տեղեկությունների, հավանական համարել, որ Արտաշես Ա-նին հաջորդել եր նրա որդին, Արտավազդ Ա-ը, և ապա սրա յեղբայրը՝ Տիգրան Ա-ը, որից հետո թագավորել եր այս վերջինի որդին՝ Տիգրան Բ-ը։

---

[1] Str., XVI, 1, 19:

[2] Տես App., Syr., 48:

[3] Տես Str., XI, 14, 15:

[4] Տես Th. Reinach, Mithridate Eupator, եջ 104 և Markwart, Eranschahr, եջ 173։

[5] Տես Խորենացի, II, գլ. ԿԱ։

Մեծ Հայաստանի մասին, ինչպես ասացինք, մենք ունենք մանրամասն տեղեկություններ Տիգրան Բ-ից սկսած։

Տիգրան Բ-ը, վորը պատանդ եր պարթևների մոտ՝ գահ եր բարձրացել 95 թվին (մեր թվ. առ.)։ Գահակալության այս թվականը հայտնի յե մեզ Պլուտարքոսի վկայությունից։ 70 թվին, յերբ Ապպիոս Կլավդիոսը յեկել եր նրա մոտ իբրև դեսպան՝ նա, ինչպես վկայում ե Պլուտարքոսը[1], արդեն 25 տարի թագավորել եր։ Պատանդությունից ազատվելու և իր հայրենի թագավորությունը ստանալու համար նա, ինչպես վկայում ե Ստրաբոնը[2], պարթևներին փրկանք եր տվել յոթանասուն հովիտներ, վորոնք, Մարկվարտի կարծիքով[3], այն շրջաններն եյին, վոր Ատրպատականի կողմերում գրավել եր Արտաշես Ա-ը։

Յերբ Տիգրանն ազատվեց ու վերադարձավ իր հայրենի յերկիրը՝ նա արքայական իր թագը կապեց, ինչպես վկայում ե Ապպիանոսը, Հայաստանի այն վայրում, ուր ինքը հիմնել եր հետո Տիգրանակերտ քաղաքը։ Այս վկայությունից յերևում ե, վոր հին Աղձնիքը, վորի մեջ այժմյան Ֆարկինում վորոշված ե վերջերս հին Տիգրանակերտ քաղաքի տեղը՝ գտնվել ե վոչ թե Ծոփքում, այլ Արտաշեսյան թագավորության մեջ՝ Մեծ Հայքում[4]։

Գահ բարձրանալուց հետո Տիգրան Բ-ի առաջին գործը յեղավ հարևան Ծոփքի միացումն իր թագավորությանը։ Կապպադովկիան, վորը հազիվ եր հռոմայեցիների ոգնությամբ պահպանում իր անվանական անկախությունը՝ անկարող յեղավ պաշտպանել իր հին դաշնակցին ու բարեկամին։ Տիգրան Բ-ը հարձակվեց Ծոփքի վերջին թագավոր Արտանեսի վրա (94 թ. մեր թվ. առ.) և նրա յերկիրը կցեց Մեծ Հայաստանին։

«Արտաշեսի սերնդից եր,—ասում ե Ստրաբոնը,— Տիգրանը. նա իշխում եր բուն Արմենիայում, վորը սահմանակից եր Մարաստանին, Աղվանքին, Իբերիային մինչև Կողքիս և Սև ծովի մոտ գտնվող Կապպադովկիային։ Իսկ Զարեհի սերնդից եր Ծոփաց յերկրի Արտանեսը, վորն իշխում եր Արմենիայի հարավային և, գլխավորապես, արև-

1 **Տես** P l u t., Lucullus, 21:

2 **Տես** S t r., XI, 14, 15:

3 Eranschahr, **եջ 109։**

4 **Տես** M a r k w a r t, Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, **եջ 119։**

մըտյան մասերում։ Տիգրանը սրան հաղթեց և դառավ ինքը տեր բոլոր այդ յերկրներին»[1]։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Տիգրան Բ-ի իշխանության տակ միացան Արևելյան և Արևմտյան Արմենիան, վորոնք թե Աքեմենյանների և թե Սելևկյանների ժամանակ առանձին ու ինքնիշխան յերկրներ եյին։ Արմենական յերրորդ թագավորությունը, Փոքր Հայքը, վորը հայկական լեռնաշխարհի բնական սահմաններից դուրս եր գտնվում՝ Ծոփքի նվաճումից առաջ, արդեն յերկրորդ դարի վերջերում, նվաճել ու միացրել եր իր թագավորությանը Միհրդատ Պոնտացին։

Ծոփքի միացումից հետո Տիգրան Բ-ի հզոր ու ընդարձակ թագավորությունը սահմանակից եր դառնում արևմուտքում բացի Պոնտոսից նաև Կապպադովկիային։ Հարավում և արևելքում Մեծ Հայաստանին հարևան ու սահմանակից եյին պարթևների գերիշխանության տակ գտնվող մանր պետությունները՝ Ոսրոենը, Կորդուքը, Ադիաբենը և Ատրպատականը, իսկ հյուսիսում՝ Աղվանքը և Իբերիան։

94 թվից հետո շուտով սկսվեց Արևելքում Հռոմի ու Պոնտոսի յերկարատև ու համառ պայքարը, վորին, ինչպես կտեսնենք, մասնակից յեղավ նաև Տիգրան Բ-ի հզոր պետությունը։

---

[1] Տես Str., XI, 14, 15:

## 4. ՀԱՅ-ՊՈՆՏԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ ՅԵՎ ՏԻԳՐԱՆ Բ-Ի ԱՐՇԱՎԱՆՔԸ ԿԱՊՊԱԴՈՎԿԻԱ

*Առաջին դարի սկզբներում (մեր թվ. առ.) հզոր ու մեծ պետություն եր դառել, ինչպես վերև տեսանք, Պոնտոսը, վորը խիստ ընդարձակվել եր Միհրդատ Եվպատորի ժամանակ, վորին անվանում են նաև Մեծ։*

*Պոնտոսը կամ հին Պոնտական Կապպադովկիան, վորը Աքեմենյանների ժամանակ միացած եր բուն կամ Մեծ Կապպադովկիայի հետ՝ ուներ այս վերջինի հետ կուլտուրական ու կրոնական և մասամբ նաև ցեղային վորոշ կապեր։ Պոնտոսի հարևան Կապպադովկիան ուներ, բացի այդ, ստրատեգիական մեծ նշանակություն, վորովհետև նրա հյուսիս-արևելյան ընդարձակ սահմանները տարածվում եյին մինչև Փոքր Հայքը և մինչև Պոնտոսի գրեթե թիկունքը։ Դժվար չե, ուրեմն, հասկանալ, թե ինչու Միհրդատ Մեծն ամեն կերպ աշխատում եր ցեղակից ու կրոնակից այս յերկիրը միացնել իր թագավորությանը։*

*Կապպադովկիայի փաստական նվաճումը Միհրդատը հաջողեցրել եր 99 թվին (մեր թվ. առաջ) և թագավոր եր դրել այստեղ իր ութնամյա վորդուն՝ Արիարաթ Թ-ին։ Սակայն շուտով, 95 թվին, հռոմեական ծերակույտի կարգադրությամբ պոնտական զորքերը հարկադրված յեղան մաքրել այդ յերկիրը և Կապպադովկիայի թագավոր ընտրվեց Արիոբարզան Ա. Հռոմեասերը։*

*Հռոմայեցիների հենց այս բարեկամի թագավորության ժամանակ Տիգրան Բ-ը գրավել եր 94 թվին Ծոփքը, վորը, ինչպես ասացինք, սահմանակից եր Կապպադովկիային և հին դաշնակիցն եր ու բարեկամը Արիարաթների թագավորության։ Իբրև նախկին պաշտպանն ու հովանավորը Ծոփաց Զարեհյան թագավորության՝ Կապպադովկիան այժմ, բնականաբար, վտանգավոր հարևան եր համարվելու Մեծ Հայաստանի։ Հասկանալի յե նույնպես, վոր Արիոբարզան Ա-ը, հռոմեական քաղաքականության հլու և հնազանդ սպասավորը, խոչընդոտ եր դառնում պոնտական քաղաքա-*

կանության վերոհիշյալ ձգտումների իրագործման, վորոնցից չէր կարող հրաժարվել Միհրդատ Եվպատորը։

Առաջին դարի սկզբներին Կապադովկիան, ինչպես տեսնում ենք, ընդհանուր թշնամի էյին համարելու և Տիգրանը և Միհրդատը, և միանգամայն բնական է, վոր նրանք աշխատելու էյին միանալ իրար հետ ընդդեմ հարևան այդ թագավորության։ Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին ռուսերեն իմ աշխատության մեջ[1], հենվելով Ռեյնաքի յենթադրության վրա՝ յես մատնանշել էյի, բացի այդ, վոր պոնտական թագավորների և հատկապես Միհրդատ Եվպատորի բարեկամական քաղաքականությունը Հայաստանի, Ատրպատականի և Իբերիայի հանդեպ բացատրվում է պոնտական մեծ առևտրի շահերով[2]։ Այս յերկրների բարեկամությունը խոշոր նշանակություն ուներ Պոնտոսի համար, վորովհետև նրա մեծ նավահանգիստները հավաքատեղեր էյին և հանգուցակետեր համաշխարհային մեծ առևտրի և միջազգային տարանցիկ ճանապարհների, վորոնք գալիս էյին Հեռավոր Արևվելքից ու Միջին Ասիայից և Եկբատանայի ու Արտաշատի վրայով գնում էյին, գլխավորապես, պոնտական Ամիսոս և Սինոպ քաղաքները։

Բարեկամական այս հարաբերությունները, վոր գոյություն ունեյին Պոնտոսի և Մեծ Հայաստանի միջև, Տիգրան Բ-ի ժամանակ դառել էյին ավելի սերտ ու մտերիմ։ Աչքի առաջ ունենալով իրենց յերկրների կենսական շահերը՝ Տիգրան Բ-ը և Միհրդատ Եվպատորը 95 կամ 94 թվին կնքեցին հատուկ դաշնադրություն, վորի նպատակն էր վոչ թե նախապատրաստվող հայ-պոնտական պատերազմն ընդդեմ Հռոմի, ինչպես գունավորված ու շփոթ կերպով պատմում է Յուստինոսը, այլ, հավանորեն, Տիգրան Բ-ի ռազմական աջակցությունը Միհրդատին ընդդեմ հարևան Կապադովկիայի։ Կնքված դաշինքի համաձայն, վորն ամրապնդել էյին Տիգրանի ամուսնությամբ Միհրդատի աղջկան Կլեոպատրայի հետ, յերկու թագավորները պայմանավորվել էյին, վոր նվաճված քաղաքներն ու շրջանները պատկանելու յեն Միհրդատին, իսկ գերիներն ու շարժական գույքը՝ Տիգրանին։

Յուստինոսի վկայությունն այս դաշինքի մասին հարկ եմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

«Այդ ժամանակ Արմենիայի թագավորն էր,—պատմում

[1] Տես „О торговле и городах Армении", եջ 48։

[2] Տես Reinach, Mithridate Eupator, եջ 78 և 234։

է Յուստինոսը,—Տիգրանը, վորը պատանդ եր տրվել վաղուց պարթևներին և քիչ առաջ հետ եր ուղարկվել իր հայրենի թագավորությունը։ Սրան շատ եր ուզում Միհրդատը դաշնակից անել ընդդեմ հռոմայեցիների, վորոնց հետ նա վաղուց հետե մտադիր եր պատերազմ սկսել։ Ցեվ թեև Տիգրանը հռոմայեցիների կողմից չեր կրել վորևե անարգանք՝ նա դրդում է նրան Գորդիոսի միջոցով, վոր հարձակվի Արիոբարզանի վրա, վորը խիստ թույլ եր։ Իսկ վորպեսզի չերևա, վոր վորոշ խորամանկություն կա դրա տակ՝ նա ամուսնացնում է նրա հետ իր աղջկան Կլեոպատրային[1]։ Տիգրանի առաջին հենց հարձակման ժամանակ Արիոբարզանը վերցնում է իր գույքը և փախչում է Հռոմ։ Ցեվ այսպիսով Տիգրանի ոգնությամբ Կապպադովկիայում սկիզբ է դրվում նորից Միհրդատի իշխանության։ Նույն այս ժամանակ մեռնում է Նիկոմեդեսը և նրա վորդուն, վորի անունը նույնպես Նիկոմեդես եր, դուրս է վտարում թագավորությունից Միհրդատը։ Ցերբ սա Հռոմ է գալիս վորպես աղաչավոր՝ ծերակույտը վճռում է, վոր յերկուսն էլ պետք է վերահաստատվեն իրենց թագավորություններում։ Այս գործի համար ուղարկվում են իբրև լեգատներ Մ. Ակվիլիոսը և Մանլիոս Մալթինոսը։ Ցերբ այս բանն իմացվում է՝ Միհրդատը դաշն է կնքում Տիգրանի հետ, վորպես զի պատերազմ սկսե հռոմայեցիների դեմ։ Նրանք պայմանավորվել եյին իրար հետ, վոր քաղաքները և հողերը պատկանելու յեն Միհրդատին, իսկ մարդիկ և ինչ վոր հնարավոր է տանել՝ Տիգրանին»[2]։

Յուստինոսի այս վկայությունը, վոր յեվրոպական պատմագիտության մեջ հիմք է ծառայել անհավանական յեզրակացությունների, ինչպես շատ ճիշտ նկատել է Ռեյնաքը, այնքան խառնաշփոթ է, վոր կարելի յե համարել կասկածելի[3]։

93—89 թվերի վերոհիշյալ պատմական անցքերը, վոր խառն ու հակիրճ կերպով պատմված են Յուստինոսի վկայության մեջ՝ տեղի եյին ունեցել, իրապես, ինչպես յերևում է անկախ Յուստինոսից մատենագրական նաև մյուս աղբյուրների վկայություններից՝ հետևյալ հաջորդականությամբ։

---

1 Տիգրանի ամուսնության մասին Կլեոպատրայի հետ համեմատե նաև Պ լ ու տ ա ր ք ո ս, Լուկուլլոս 22 և Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատականք 104։

2 Տես Յ ու ս տ ի ն ո ս, XXXVIII, 3, 1—5:

3 Տես Mithridate Eupator, եջ 115, ծանոթ. 3։

93 թվին (մեր թվ. առ.), Ծոփքի միացումից անմիջապես հետո, Տիգրան Բ-ը, ինչպես վկայում է Յուստինոսը, Միհրդատի հորդորմամբ հարձակվել էր Կապադովկիայի վրա, գրավել էր ամբողջ յերկիրը և Արիոբարզան Ա-ը փախել էր Հռոմ։ Վերջինիս փոխարեն, նույն 93 թվին, վերահաստատվեց այստեղ իբրև թագավոր Միհրդատի փոքրահասակ վորդին Արիարաթը, վորի խնամակալն էր Գորդիոսը։ Կապադովկիան նվաճելուց հետո, ինչպես տեսնում ենք, Տիգրանն ինքը վերադարձել էր Հայաստան և իր գրաված ամբողջ յերկիրը հանձնել էր Միհրդատի վորդուն։ Հենց ինքն այս փաստը հիմք է տալիս ըստ իս յենթադրելու, վոր Յուստինոսի մատնանշած վերոհիշյալ դաշինքը, վորի համաձայն «քաղաքներն ու հողերը պատկանելու եյին Միհրդատին», կնքված է յեղել, հավանորեն, 93 թվից առաջ։

Հռոմեական ծերակույտի հրամանով, ինչպես հայտնի յե Պլուտարքոսից[1], շուտով Կապադովկիա յեկավ Կիլիկիայի փոխպրետորը՝ Սուլլան։ Սա պարտության մատնեց Գորդիոսի և Տիգրանի զորքերը և նորից հաստատեց Կապադովկիայի գահի վրա դաշնակից Արիոբարզան Ա-ին։ Յերբ Սուլլան գտնվում էր Յեփրատ գետի մոտ՝ նրա մոտ էր յեկել այնտեղ (92 թվին) պարթևների թագավոր Միհրդատ Բ-ի դեսպանը, Որոբազոսը, վորը, ինչպես հաղորդում են աղբյուրները[2], բարեկամական բանակցություններ էր վարել Սուլլայի հետ և առաջարկել էր, վոր Յեփրատ գետը լինի սահման յերկու պետությունների միջև։ Այս վկայությունը պարզ ցույց է տալիս, վոր միանգամայն սխալ է Կուրտ Եքհարդի կարծիքը, վորը Տիգրան Բ-ի կռիվները պարթևների դեմ և Միջագետքի ու պարթևական մանր վասսալ պետությունների միացումը Հայաստանին դնում է 92 թվից առաջ[3]։

Հավանորեն, 91 թվին՝ Սուլլայի հեռանալուց անմիջապես հետո՝ Միթրաասը և Բագոասը, վորոնք, ըստ յերևույթին, Տիգրան Բ-ի զորավարներն եյին՝ նորից հարձակվեցին ու գրավեցին Կապադովկիան։ Արիոբարզանն այս անգամ ևս փախավ Հռոմ և նրա գահը նորից տրվեց Միհրդատի Արիարաթ վորդուն[4]։

---

1 Սուլլա, 5։

2 Տես Պլուտարքոս, Սուլլա, 5, Ապպիանոս, Միհրդատ. 57 և Ֆլորուս 70։

3 Տես K. Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. IX, 4, էջ 403։

4 Ապպիանոս, Միհրդատ. 10։

Նույն 91 թվին, Նիկոմեդես Բ-ի մահից հետո, յերկպառակություններ եյին ծագել նաև Բիթանիայում։ Հռոմն այստեղ թագավոր եր հաստատել Նիկոմեդես Բ-ի մեծ վորդուն՝ Նիկոմեդես Գ-ին։ Սակայն Նրա կրտսեր վորդին, Սոկրատեսը, ապավինելով Միհրդատ Եվպատորին և ստանալով սրանից պոնտական զորքեր՝ կարողացավ ինքը գրավել Բիթանիան, ինարկե, առանց Հռոմի համաձայնության։

Յերկու հալածված թագավորները՝ Արիոբարզան Ա-ը և Նիկոմեդես Գ-ը՝ յեկան, ինչպես վկայում են Ցուստինոսը և Ապպիանոսը[1], Հռոմ և ոգնություն խնդրեցին հռոմայեցիներից։ Հռոմեական ծերակույտն այս անգամ ուղարկեց Արևելք Մանիոս Ակվիլիոսին և Մանլիոս Մալթինոսին, վորոնք 89 թվին, առանց կռվի ու վորևե հակառակության, վերահաստատեցին Նրանց իրենց թագավորություններում։

Մեջ բերված փաստական այս տեղեկությունները, վոր վերաբերվում են 93—89 թվերի վերոհիշյալ պատմական անցքերին՝ պարզ ցույց են տալիս, վոր Ցուստինոսի վկայությունը վոչ միայն խիստ համառոտ ե, այլև տեղ տեղ վիճելի յե ու անհավաստի։

Ցուստինոսի մոտ հիշատակված ե Տիգրան Բ-ի առաջին միայն հարձակումը Կապպադովկիայի վրա և բաց ե թողնված Միթրաաս և Բագոաս զորավարների յերկրորդ արշավանքը։ Նրա վկայությունից ստացվում ե պարզապես այն տպավորությունը, վոր Նիկոմեդես Գ-ը ևս, ինչպես և Արիոբարզանը, փախել եր Հռոմ 93 թվին։ Բացի այդ, համաձայն Նրա վկայության, Միհրդատի ու Տիգրանի դաշնակցությունը վերաբերվում ե վոչ թե 93 և 91 թվերի արշավանքներին, յերբ Տիգրանն ու Միհրդատը գործում եյին, իրապես, համաձայն այդ դաշինքի, այլ 88 թվի հռոմեական-պոնտական մեծ պատերազմին, վորին Տիգրանը, ինչպես կտեսնենք, բնավ չեր մասնակցել։

Յեվրոպական պատմագետները, հավատ ընծայելով Ցուստինոսի կասկածելի այս վկայություններին՝ Տիգրան Բ-ի մասնակցությանը 93—84 թվերի անցքերին տվել են, իմ կարծիքով, միանգամայն վիճելի ու անհավաստի լուսաբանություն։ Բավականաչափ հիմնավորված չե ըստ իս, Նախ և առաջ, ընդհանրացած այն կարծիքը, վոր իբր թե Տիգրանը հլու և անխոս մի գործիք ե յեղել Միհրդատ Եվպատորի քաղաքական Նպատակների իրա-

[1] Ցուստ. XXXVIII, 3, 4 և Ապպիանոս, Միհրդատ., 9—11։

գործման[1]։ Մենք ասացինք արդեն վերև, վոր Տիգրանի մասնակցությունը 93 թվի Կապպադովկիայի նվաճմանը բացատրվում ե պարզապես նրանով, վոր Ծոփքի միացումից հետո այդ յերկիրը վտանգավոր հարևան եր դառել Մեծ Հայաստանի արևմտյան սահմանում։ Դժվար չե նաև կռահել, վոր նաև 91 թվի արշավանքը կարևոր նշանակություն ուներ Հայաստանի համար, վորովհետև պարթևների բարեկամական բանակցություններին Սուլլայի հետ (92 թվ.) մասնակցել եր, ինչպես հաղորդում ե Պլուտարքոսը[2], նաև Կապպադովկիայի թագավոր Արիոբարզան Ա. Հռոմեասերը։ Իսկ պարթևների, Հռոմի և Կապպադովկիայի բարեկամական համաձայնությունը չեր կարող ցանկալի լինել, իհարկե, Տիգրան Բ-ին։ Ցեվ հասկանալի յե, վոր նա, հանձնելով Կապպադովկիայի թագավորությունն Արիարաթին և Գորդիոսին՝ ապահովում եր իր թիկունքն արևմուտքում և ամրացնում եր իր քաղաքական դիրքերը հայ-պարթևական կռիվների համար։

Մի մեծ թյուրիմացություն ե, բացի այդ, Մոմզենի, Մորգանի և ուրիշների կարծիքը[3], վոր իբր թե Տիգրան Բ-ի և Միհրդատ Եվպատորի դաշնադրությունը վերաբերվել ե վո՛չ միայն Կապպադովկիայի, այլև հռոմեական-պոնտական 88—84 թվերի մեծ կռիվներին, վոր նախապատրաստում եյին վաղօրոք Միհրդատը և Տիգրանը։ Այս յենթադրությունը նրանց հիմք ե ծառայել մեղադրելու Տիգրան Բ-ին, վոր սա խախտել ե այդ կռիվների ընթացքում Միհրդատի հետ կնքած դաշինքը[4]։ Մենք կտեսնենք սակայն ներքև, վոր իննսնական թվականների վերջերում (մեր թվ. առ.) վո՛չ Միհրդատը և վո՛չ ել Տիգրանը վորոշած չեյին կարող լինել պատերազմել հռոմայեցիների դեմ։ Միանգամայն նաև անհավանական ե, վոր հայ-պարթևական կռիվներից առաջ Տիգրան Բ-ը համաձայնած լիներ անմիտ ու արկածախնդրական մեծ պատերազմ սկսելու ընդդեմ հզոր ու աշխարհակալ Հռոմի։

Ինձ թվում ե, վոր ավելի քան հավանական կարելի յե հա-

---

1 Համեմատե Th. Reinach, Mithridate Eupator, եջ 105, K. Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, IX, 1, եջ 403—404, Dolens et Khatch, Histoire des anciens Arméniens, Genève 1907, և ուրիշները։

2 Տես Պլուտարքոս, Սուլլա, 5։

3 Տես Моммсен, „Римская история“, т. II, Москва 1887, եջ 286, J. Morgan, Histoire du peuple arménien, Paris1919, եջ 70, В. Брюсов, Летопись исторических судеб армянского народа, Москва 1918, եջ 24 և այլն։

4 Տես, որինակ, Reinach, Mithridate Eupator, եջ 311։

մարել, որ Յուստինոսի օգտագործած հռոմեական աղբյուրը, մատնանշելով որ Միհրդատի ու Տիգրանի դաշինքը կնքված է յեղել Մանիոս Ակվիլիոսի Արևելք գալուց հետո, այսինքն՝ 88—84 թվերի հռոմեական-պոնտական պատերազմից առաջ, հավանորեն հատուկ միտում է ունեցել հետագա կռիվների պատասխանատվությունը վերագրելու Միհրդատին ու Տիգրանին։ Սակայն, իրապես, ինչպես ներքև կտեսնենք, այդ մեծ պատերազմի առիթ տվողը ոչ թե Միհրդատն էր, այլ Մանիոս Ակվիլիոսը։ Իսկ Տիգրանը, որ ամենևին չէր մասնակցել այդ կռիվներին՝ բոլորովին անհիմն կերպով է մեղադրվում դաշնադրության խախտման համար։ Վերոհիշյալ դաշինքով նա պարտավորություններ էր հանձն առել ոչ թե հռոմեական-պոնտական պատերազմի, այլ միմիայն Կապպադովկիայի նկատմամբ։

Որ Յուստինոսի դաշնադրության մասին վկայությունը սխալ է և միտումնավոր՝ այդ ցույց են տալիս, ինչպես կտեսնենք, բոլոր հետագա պատմական փաստերը։

## 5. ՄԻՀՐԴԱՏՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ (88—84 ԹՎ.)

Միհրդատյան այս պատերազմը և սոցիալական մեծ հեղափոխությունն Արևելքում ու Հունաստանում յես հույս ունեմ, որ կըկարողանամ ընդարձակ կերպով քննության առնել հաջորդ իմ ուսումնասիրություններից մեկում։ Իսկ այժմ այդ անցքերի վրա յես կանգ եմ առնելու համառոտ կերպով ու հատկապես այն նկատառումով, որ յեվրոպական պատմագետներից ոմանք, օրինակ, Շպիգելը և Մոմզենը՝ այս պատերազմին սխալմամբ մասնակից են դարձրել նաև Տիգրանյան Մեծ Հայաստանը[1]։

88—84 թվերի պատերազմի մասին գերիշխող է դառել նաև այն կարծիքը, որ իբր թե Միհրդատ Եվպատորը կամ Մեծը համառ կերպով զինվել ու նախապատրաստվել էր կռվի ընդդեմ հռոմայեցիների, նպատակ էր դրել իրեն վտարել նրանց Ասիայից և այդ նպատակով կռվից առաջ դաշն էր կնքել Տիգրան Բ-ի հետ։

Այս ենթադրությունները, իմ կարծիքով, կարոտ են վերաքննության։ Աղբյուրների փաստական վկայություններից պարզ յերևում է, որ Միհրդատն ամեն ջանք գործ էր դրել, որպեսզի կարողանա խույս տալ ահեղ այս պատերազմից։ Նա հսկայական գումարներ էր ծախսել Հռոմում, որպեսզի կաշառված ծերակուտականների միջոցով վիճելի խնդիրները լուծվեն խաղաղ ճանապարհով։ Մշտական գժտությունների առիթ տվող այդպիսի հարցեր էյին ոչ միայն Կապադովկիայի, այլ, մանավանդ, նաև Բիթանիայի թագավորության խնդիրը, որի բարեկամությունն ու չեզոքությունը չափազանց կարևոր էյին Պոնտոսի համար նրա հյուսիս-արևելյան սահմանում գտնվող Բոսփորյան նեղուցի պատճառով։ Միհրդատի ծովեզրյա պետության համար, որի հոյակապ ու հարուստ հելլենիստական քաղաքները խոշոր կենտրոններ էյին

---

[1] Տես F. Spiegel, Eranische Alterthumskunde, Leipzig 1878, Bd. III, էջ 92 և Моммсен, „Римская история“, т. II, перевод Неведомского, Москва 1887. էջ 286 և 287։

համաշխարհային տարանցիկ առևտրի՝ սևծովյան նեղուցների հարցն ուներ, բնականաբար, կենսական նշանակություն:

Վոր Միհրդատը 88 թվին չեր ուզում, իրոք, պատերազմել Հռոմի հետ՝ այդ պարզ յերևում ե հենց իրենց իսկ հռոմեական աղբյուրների վկայություններից: Այդ աղբյուրներից մենք գիտենք, վոր՝ չնայած Կապպադովկիայի ու Բիթանիայի խնդիրների քաղաքական ու տնտեսական բացառիկ կարևորությանը Պոնտոսի համար՝ Միհրդատը, այնուամենայնիվ, խուսափելով պատերազմից՝ չհակառակեց, վոր Նիկոմեդեսը և Արիոբարզանը վերահաստատվեն իրենց թագավորություններում:

88—84 թվերի պատերազմի համար պատասխանատու յե, անտարակույս, վոչ թե Միհրդատը, այլ հռոմեական դեսպան Մանիոս Ակվիլիոսը: Սա յեր, վոր դրդեց Նիկոմեդեսին հարձակվելու և կողոպտելու Պոնտոսի հյուսիս-արևելյան շրջանները մինչև Ամաստրիս և ստիպեց նրան պոնտական թալանված բնակչության հաշվին վճարել իրեն և հռոմեական ֆինանսիստներին նրա գահակալության համար արված ծախսերը:

Միհրդատը չդիմադրեց և չկռվեց մինչևիսկ այս ավազակային հարձակման ժամանակ: Նա շարունակեց իր խաղաղ բանակցությունները և խնդրեց միայն, վոր իրեն թույլ տրվի պաշտպանվել և կռվել Նիկոմեդեսի դեմ: Յեվ յերբ հռոմեական դեսպանները մերժեցին նաև այս դիմումը՝ նա համոզվեց, վոր բանակցություններն այլևս անօգուտ յեն և ինքնապաշտպանության միակ միջոցը պատերազմն ե:

«Չե՞ վոր ավազակի դեմ,—բացականչել եր նա,—ամեն վոք զենքի յե դիմում, յեթե վոչ փրկվելու՝ գոնե վրեժ առնելու համար»[1]:

Միհրդատի խաղաղ բանակցությունները, ինչպես միանգամայն ճիշտ բացատրել ե Մոմզենը, վոչ թե դիվանագիտական խորամանկ խաղեր են յեղել, այլ անկեղծ ձգտում խուսափելու պատերազմից, վորը նա չեր ցանկանում և համարում եր դժվար ու վտանգավոր:

«Թեև բանակցությունների խզումը,—ասում ե Մոմզենը,—չեյին ուզում վոչ հռոմեական ծերակույտը, վոչ Միհրդատ թագավորը և վոչ ել Նիկոմեդես թագավորը՝ սակայն այդ ցանկանում եր Ակվիլիոսը, և պատերազմը սկսվեց»[2]:

---

[1] Տես Յուստինոս, XXXVIII, V, 2:

[2] Տես „Римская история“. II, Москва 1887, եջ 286:

Ընդունելով սակայն, որ Միհրդատը չէր ուզում պատերազմել Հռոմի հետ՝ Մոմզենը, այնուամենայնիվ, ենթադրում է, որ իբր թե պատերազմը սկսելուց առաջ նա կնքել էր նոր ու ավելի սերտ դաշնագրություն Տիգրանի հետ և ստացել նրանից օժանդակ մի զորաբանակ[1]։

Մոմզենի ենթադրությունը նոր դաշինքի կնքման մասին, որ հիմնված է պարզապես Ցուստինոսի վերոհիշյալ վկայության վրա, ինչպես տեսանք, միանգամայն անհավանական է։ Թյուրիմացության արդյունք է նույնպես, ինչպես մատնացույց է արել իր հոդվածներից մեկում Ռեյնաքը[2], նաև Մոմզենի մյուս ենթադրությունը, որ իբր թե պատերազմից առաջ Միհրդատը Տիգրանից ստացել էր օժանդակ զորաբանակ։

Արմենների զորագունդը, որը մասնակցել էր այս պատերազմին և բաղկացած էր 10.000 հոգուց՝ հիշատակված է, իրոք, Ապպիանոսի մոտ[3]։ Վերջինս բացի Միհրդատի բուն զորքից (τὸ οἰκεῖον)՝ 250.000 հետևակ և 40.000 ձիավոր՝ առանձնապես մատնանշում է նաև Փոքր Հայքի օգնական 10.000 հեծելազորը (συμμαχικά)։ Այս այրուձին, ինչպես հայտնի յն աղբյուրների վկայություններից՝ մասնակցել էր Միհրդատի որդու Արիարաթի և, հավանորեն, Նեմանես կամ Նայմանես արմեն զորավարի առաջնորդությամբ հաղթական երկու մեծ կռիվներին Ամնիաս գետի և Պրոտոպաքիոնի մոտ։ Բայց այս զորքը վո՛չ թե Տիգրանի ուղարկած օժանդակ զորաբանակն էր, այլ հեծելագունդն էր Փոքր Հայքի, որն այդ ժամանակ, հավանորեն, միացված էր Արիարաթի Կապպադովկիայի թագավորության[4]։

Ամնիասի և Պրոտոպաքիոնի մոտ Միհրդատի առաջին հաղթություններից հետո կռիվը Փոքր Ասիայում ստացավ հետզհետե նախ ազգային և ապա սոցիալական հեղափոխության բնույթ։ Պոնտական զորքերի հաղթական մուտքն արևմտյան Փոքր Ասիա մեծ վոգևորություն առաջացրեց, գլխավորապես, հելլեն ազգայնականների և, մանավանդ, դեմոկրատների շրջանում։ Այս վերջիններն անչափ ատում էին հռոմեական դաժան իշխանությունը, որը վերացրել էր հելլենների անկախությունը և, պաշտպան կանգնելով ազնվականության ու հարուստների՝ կեղեքում էր սր-

---

1 Տես նույնը, էջ 286 և 287։

2 Տես Revue des études grecques, II, էջ 384։

3 Տես Միհրդատ., 17։

4 Տես Reinach, Mithridate Eupator, էջ 122, ծանոթ. 1։

րանց հետ միասին ռամիկ ժողովրդին։ Թե վորքան վայրագ եյին այս կեղեքումները՝ այդ վկայում են իրենք հենց հռոմայեցիները։ Օրինակ, Կիկերոնը մատնանշում է, վոր հռոմայեցիների անունն Ասիայի համար նողկալի յեր, իսկ հարկերը, տասանորդը և մաքսերը միջոցներ եյին մահվան։

Միհրդատը, վորը պատերազմից առաջ ճանապարհորդել եր ծպտված և ծանոթացել Փոքր Ասիայի ներքին այս դրությանը՝ արդեն պատերազմի սկզբում աշխատեց պաշտպան ու հովանավոր լինել կեղեքված փոքրասիական ժողովրդի։ Գերված ասիացի զինվորներին նա վոչ միայն ազատում և տուն եր ուղարկում, այլ նրանց տալիս եր նաև ճանապարհածախս։

88 թվին Միհրդատն ամենակարճ ժամանակում նվաճեց ամբողջ գրեթե Փոքր Ասիան։ Բնակչությունն ընդունում եր նրան գրկաբաց և պատվում եր նրան՝ իբրև ազատարարի ու նոր Դիոնիսիոսի։ Նրան համարում եյին Ալեքսանդր Մակեդոնացու նման հելլենական-ասիական մի նոր աշխարհակալության հիմնադիր։

Հռոմեական իմպերիալիզմի ավելի քան քառասուն տարի տևող անողոք կեղեքումները, ինչպես ասացինք, առաջ եյին բերել Փոքր Ասիայում կատաղի ու անզուսպ ատելություն դեպի Հռոմը և, մանավանդ, դեպի նրա վարձակալներն ու վաշխառուները։ Յեվ միանգամայն հավանական կարելի յե համարել անգլիական պատմաբան Մերիվելի կարծիքը[1], վոր մոտ 80.000 իտալացիների կոտորածը Փոքր Ասիայում ավելի շուտ պետք է վերագրել այս ատելությանն ու վոխակալությանը, քան Միհրդատի կանխամտածված թաքուն հրահանգներին։

Արդեն 88 թվին ապստամբության հրդեհը հետզհետե տարածվեց Փոքր Ասիայում և ազատագրված յերկրում շուտով տարերային կերպով բռնկվեց սոցիալական ամենամեծ հեղափոխություններից մեկը, վորն անցավ նաև Հունաստան։

88 թվի ամառը Հունաստանում վոտքի յելան և ապստամբեցին աթենացիները, վորոնց Փոքր Ասիայից նրանց դեսպանը հայտնել եր, վոր՝ թոթափելով Հռոմի իշխանությունը՝ նրանք կազատվեն պարտքերից և կվերականգնեն նախկին դեմոկրատիան ու իրենց հին ազատությունները։

88 թվի վերջերում պոնտական զորքերը, Միհրդատի վորդու Արիարաթի առաջնորդությամբ, անցան Յեվրոպա և գրավեցին

---

1 Տես General history of Rom, 1875:



ՄԻՀՐԴԱՏ ԵՎՊԱՏՈՐ

*Թրակիան ու Մակեդոնիայի մի մասը։ Այս Արիարաթի հետ, վո-րը Կապպադովկիայի և, ըստ յերևույթին, նաև Փոքր Հայքի թագավորն էր՝ այստեղ ևս կռիվներին մասնակցել էր արմենական վերոհիշյալ հեծելազորը։ Բացի Թրակիայից և Մակեդոնիայի մի մասից, Աթենքի ապստամբությունից հետո Միհրդատի կողմն անցան Ելլադայի գրեթե բոլոր մանր պետությունները և Եգեյան ծովի բոլոր կղզիները բացի Հռոդոսից։*

*Պետք է ասել, վոր յեվրոպական պատմագիտությունն այս մեծ անցքերը ներկայացրել է գունավորված ձևով և Միհրդատյան շրջանի խոշոր դեմքերը նկարագրել է վորոշ կողմնապահությամբ։ Խիստ բնորոշ է այս տեսակետից, վոր մինչևիսկ հռոմայեցիները, վորոնք վոխերիմ թշնամիներն էին Միհրդատի, ավելի դրական ու ավելի անաչառ կերպով են տվել սրա բնութագիրը, քան յեվրոպական նորագույն պատմագետները։ Կիկերոնը Միհրդատ Եվպատորին համեմատում է Աղեքսանդր Մակեդոնացու հետ և նրան համարում է ամենամեծ թագավորն Աղեքսանդր Մակեդոնացուց հետո[1]։ Յուստինոսը վկայում է, վոր Միհրդատն այնպիսի մի մեծություն էր, վորն իր վեհությամբ գերազանցում էր բոլոր թագավորներին թե իր և թե հետագա ժամանակների[2]։ Ընդհակառակը, Մոմզենը Միհրդատին անվանում է ամենասովորական կարգի խստասիրտ, նենգադրուժ և անխիղճ արևելցի[3], իսկ Ռեյնաքը համարում է նրան հելլենական դիմակ հագած բարբարոս և ատող միջերկրական քաղաքակրթության[4]։*

*Միհրդատի անձնավորության նորագույն թե այս և թե նրման գնահատականները միանգամայն անհավանական են և անհիմն։ Դժվար չէ կռահել, վոր յեվրոպական վերոհիշյալ պատմագետների հակակրանքը Միհրդատի նկատմամբ բացատրվում է մասամբ նրանով, վոր նա փորձ էր արել քայքայել հռոմեական իմպերիալիզմը վոչ միայն զենքով, այլ և սոցիալական դասակարգային հեղափոխությամբ, վորը պատմագետների մեծագույն մասը մահացու մի հանցանք են համարում ընդդեմ քաղաքակրթության։*

*Արդեն իր տիրապետության սկզբներում Միհրդատն ուզեց թեթևացնել Փոքր Ասիայի տնտեսական ծանր դրությունը և ա-*

---

1 **Տես** Acad. II, 1, 3:

2 ***Յուստինոս,*** XXXVII, 1, 7:

3 **Տես** „Римская история", II, Москва 1887, ***էջ 272։***

4 Mithridate Eupator, ***էջ 299։***

զատեց իր գրաված ամբողջ յերկիրը թե հարկային հին ապառքներից և թե հետագա հինգ տարվա հարկերից։ Մոմզենն անմըտություն է համարում նույնիսկ Միհրդատի այս մեծագործությունը[1]։ Փոքր Ասիայի կեղեքված ժողովրդի համար մեծ նշանակություն ունեցան, բացի այդ, նաև նրա 87 և 86 թվականների սոցիալական և տնտեսական ձեռնարկումները տեղական պլուտոկրատիայի դեմ, վորը մասնակից եր Հռոմի հետ միասին Փոքր Ասիայի շահագործմանը և կողմնակից եր, բնականաբար, հռոմեական իմպերիալիզմի իշխանության։

Իբրև պաշտպան և հովանավոր փոքրասիական ժողովրդի՝ Միհրդատն ազատություն տվեց իրեն հնազանդվող քաղաքներին և քաղաքացիության իրավունքներ տվեց տեղական բնակչությանը և օտարականներին։ Նրա կարգադրությամբ վոչնչացված հայտարարվեցին բոլոր պարտքերը, բաժանվեցին հողեր չքավորներին և ստրուկները ստացան ազատություն։

Մոտ 15.000 ազատագրված ստրուկներ, ինչպես հայտնի յե աղբյուրների վկայություններից, կռվում եյին հռոմայեցիների դեմ Հունաստան ուղարկված պոնտական զորքերի շարքերում։ Ուշագրավ է նույնպես, վոր հռոմայեցիների կողմնակից Քիոս կղզու բնակիչներին աքսոր եյին ուղարկել Կողքիս, հանձնելով նրանց սեփական ստրուկների հսկողության։

Հեղափոխության պատճառով պատերազմը շարունակվեց հռոմայեցիների դեմ քաղաքացիական և դասակարգային կռիվների հետ զուգընթաց։ Ցեվ պոնտական պատերազմող բանակի թիկունքում Միհրդատի իշխանության դեմ շուտով վոտքի յելան Փոքր Ասիայի և Հունաստանի ազնվական ու դրամատիրական իշխող դասակարգերը։

Յերբ 87 թվի սկզբներում Սուլլայի զորաբանակը Հռոմից յեկավ Բեովտիա՝ Հունաստանի մեծագույն մասը, վորի մեջ ուժեղ եյին հակադեմոկրատական տարրերը՝ անցավ Հռոմի կողմը։ Հասկանալի յե, ուրեմն, վոր Սուլլայի հաղթական կռիվները Հունաստանում, ինչպես և հռոմեական բանակների հաջողությունները Փոքր Ասիայում՝ պետք է վերագրել վոչ միայն պրոֆեսիոնալ և մարզված հռոմեական զորքերի գերազանցությանը կամ պոնտական Արքեղայոս զորավարի դավաճանությանը, այլև ներքին հակահեղափոխական ապստամբություններին ընդդեմ Միհր—

[1] Տես „Римская история“, II, Москва 1887, եջ 290։

դատի։ Թե վո՛րքան մեծ է յեղել ապստամբների ատելությունն ու զայրույթը դեպի Միհրդատը՝ այդ յերևում է աղբյուրների համապատասխան վկայություններից, վորոնց մեջ մատնանշված է, վոր մոտ 1600 մարդ մահվան եյին դատապարտվել Փոքր Ասիայում, մեղադրվելով իբրև Միհրդատի դեմ մահափորձի դավակիցներ։

Միհրդատյան առաջին պատերազմը վերջացավ 84 թվին և համաձայն Դարդանոսում ընդունված բանավոր դաշինքի պայմանների Միհրդատը հրաժարվեց իր բոլոր նվաճումներից և պարտավորվեց վճարել Սուլլային 2000 տաղանդ ռազմատուգանք և հանձնել նրան 70 կամ 80 ռազմանավ։

Վերոհիշյալ պատմագետները, յենթադրած լինելով վոր Տիգրան Բ-ը մասնակցած է յեղել այս պատերազմին՝ անհասկանալի յեն համարում և տարորինակ, վոր Դարդանոսի դաշնադրության մեջ չի հիշատակվում Մեծ Հայաստանը։

«Այս դաշնադրության մեջ,—ասում է Մոմզենը,—բոլորովին չեր շոշափված հռոմայեցիների վերաբերմունքը դեպի Հայաստանի Տիգրան թագավորը, վորի հետ նրանք փաստորեն պատերազմել եյին։ Միանգամայն հիմնավոր կերպով Տիգրանն ընդունեց այդ հանգամանքն իբրև լռելյան համաձայնության նշան, վոր նրան թույլատրվում է գրավել Փոքր Ասիայում հռոմեական յերկրները։ Քանի վոր չեր կարելի թույլ տալ, վոր այդ յերկրները զոհ դառնան բարբարոսներին՝ անհրաժեշտ եր կամովին կամ ուժով համաձայնության գալ Ասիայի նոր այդ ուժեղ տիրակալի հետ»[1]։

Մոմզենի այս դիտողությունները չեն կարող ընդունելի համարվել և պարզապես թյուրիմացության արդյունք են։ Տիգրանը, ինչպես վերև տեսանք, չեր մասնակցել և պարտավորություններ չեր ստանձնել մասնակցելու այս պատերազմին, ուստի և միանգամայն հասկանալի յե, վոր հռոմայեցիները հիմք չունեյին մասնակից դարձնելու նրան Դարդանոսի դաշնադրության։

Հռոմեական իմպերիալիզմի վերահաստատումը Փոքր Ասիայում սոսկալի և աղետալի յեղավ այս յերկրի համար։ Հեղափոխությունն այստեղ ճնշվեց ամենադաժան կերպով, մի շարք քաղաքներ յենթարկվեցին ավերածության ու կողոպտման, անթիվ քանակությամբ նոր ստրուկներ ուղարկվեցին Իտալիա և Հռոմ։ Ի

---

[1] Տես „Римская история", III, Москва 1887, եջ 32։

պատիժ իր անհավատարմության Փոքր Ասիան վճարելու յեր 2000 տաղանդ ռազմատուգանք և, բացի այդ, նաև նախորդ հինգ տարվա (88—84 թ.) հարկերի ամբողջ գումարը։ Հռոմեական զորքերը մոտ վեց ամիս լիառատ ապրեցին Փոքր Ասիայի քաղաքներում, վորի բնակչությունը պարտավոր եր ամենաճոխ կերպով պահել ու կերակրել նրանց և վճարել յուրաքանչյուրին նրա սովորական ռոճիկի ավելի քան քառասնապատիկը։

Այսպիսով՝ 84 թվից սկսած Փոքր Ասիան շահագործվեց ու թալանվեց այն աստիճան, վոր հարկադրված յեղավ ծախել բոլոր իր հարստությունները և մինչևիսկ աշխատավոր վորակյալ իր ժողովուրդը։ Նա անկարող յեղավ, այնուամենայնիվ, վճարել վոչ միայն վերոհիշյալ վիթխարի պարտքերը, այլև այդ պարտքերի տոկոսները։

Միհրդատյան առաջին այս պատերազմն անհրաժեշտ եր համառոտ կերպով հիշատակել, վորովհետև այդ պատերազմի մասին աղոտ հիշողություններ պահպանված են Խորենացու պատմության և աշխարհագրության մեջ։ Կարևոր այդ վկայությունները, վոր կարոտ են հատուկ քննության՝ մեջ եմ բերում ամբողջությամբ։

1. Խորենացի II, գլ. ԺԲ, եջ 123 (Տփղիս 1913)՝

«Բայց Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց՝ լնու զՈվկիանոս բազմութեամբ նաւաց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արեւմուտս։ Քանզի մեծ յոյզք խռովութեանց եղեալ ի Հռովմ՝ ոչ ոք ընդդիմանայ նմա հզօրապէս։ Այլ ոչ գիտեմ ասել յորպիսի ազդմանէ, ահագին իմն աղմուկ լեալ շփոթից և բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ. իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի, որպէս ասեն՝ յիւրոց զօրացն, թագաւորեալ ամս քսան և հինգ։

Բայց և յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրդեմիտեայ, զԱթենայ, զՀեփեստոս, զԱփրոդիտեայ՝ տայ բերել ի Հայս. որք ոչ ժամանեալ միջամուխ լինել յաշխարհս՝ լսեն զբօթ մահուանն Արտաշիսի. և փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի. և քուրմք գնացին զհետ լինելով, դադարեն առ նոսա»։

2. Խորենացի, II, գլ. ԺԳ, եջ 124՝

«և յառաջ քան յԱսիայ հասանելն՝ յԱտտիկէ դղեկին քարոզեցաւ [Արտաշէս]»։

3. Խորենացի, «Աշխարհացոյց», հրտր. Սուքրյանի, Վենետիկ 1881, էջ 17՝

> «Եւրիոս մեծ կղզի, և Ատալանդ փոքրիկ կղզեակ ի մէջն. զոր առեն գտեալ զօրացն Արտաշեսի Հայոց արքայի, զի մի՛ նաւք ռոճկացն յամիցեն, մինչև պաշարեալն էր զղզեակն Զարմանայր. զի ջուրք յանպատճառս այսր անդր հոսէին. և առեն անդ մեռեալ Արտաշեսի»։

Այս վկայությունների մեջ Զարմանայր դղյակը, ինչպես ուղիղ նկատել է Մարկվարտը[1], Աթենքն է, վորը պաշարել էր Սուլլան, իսկ Եվբեա մեծ կղզին գրավել էյին, իրապես, Միհրդատի զորքերը։ Միանգամայն ճիշտ է նմանապես, վոր 88 թվին՝ Թրակիայի, Մակեդոնիայի և Ելլադայի նվաճման ժամանակ՝ Հռոմը չկարողացավ «հզորապէս ընդդիմանալ» պոնտական զորքերին ներքին մեծ խռովությունների պատճառով։

Սակայն Խորենացին, վորին ծանոթ չեն յեղել Միհրդատյան պատերազմներին վերաբերող հռոմեական և հունական աղբյուրները՝ չի կարողացել, բնականաբար, տալ պատմական այս շրջանի ճշգրիտ պատմությունը և, շփոթելով դեպքերը, յենթադրել է ինքը, վոր վերոհիշյալ անցքերը կարող էյին տեղի ունեցած լինել Կրեսոս Թագավորի և Արտաշես Աշխարհակալի ժամանակ։

Վերև մեջ բերված առաջին հատվածի վերջում ուշագրավ է Խորենացու վկայությունը, վոր Ելլադայից Հայաստան էյին բերվել Դիոսի, Արտեմիդեյի, Աթենասի, Հեփեստոսի և Ափրոդիտեյի արձանները։ Այդ արձանների մասին ֆրանսական գիտնական Ա. Կարիերը կարծիք է հայտնել, վոր «հունական կուռքերի Հայաստան մուծվելը վո՛չ թե իրական վորևե մի դեպքի յե համապատասխանում, այլ արդյունք է Խորենացու խորհրդածող յերևակայության»[2]։

Կարիերի այս պնդումը, ինձ թվում է, ավելի քան վիճելի յե։ Ագաթանգեղոսի և Խորենացու վկայություններից մեզ հայտնի յե, վոր Դիոսի, Արտեմիդեյի, Աթենասի և Հեփեստոսի արձանները գտնվում էյին Անի-Կամախում, Երեզում, Թիլում և Բագաոիճում, վորոնք Միհրդատյան պատերազմի ժամանակ դեռ չէյին կցվել Հայաստանին և պատկանում էյին Միհրդատի պոնտական

---

[1] Eranschahr, Berlin 1901, էջ 4։

[2] Տես «Հեթանոս Հայաստանի ուխտ մեհեանները Ագաթանգեղոսի և Մ. Խորենացւոյ համեմատ», թարգմ. Հ. Վ. Տ ա շ յ ա ն ի, Վիեննա 1899, էջ 39։

*թագավորության[1]։ Միանգամայն հնարավոր է ըստ իս, որ այդ արձանները կարող էյին բերված լինել, ինչպես վկայում է Խորենացին, Հունաստանից Միհրդատյան առաջին պատերազմի ժամանակ, որի մասին Խորենացու մոտ պահպանվել են նաև վերոհիշյալ պատմական հիշողությունները։*

[1] *Տե՛ս* Markwart, Die Genealogie der Bagratiden, Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leipzig 1930, *էջ 63։*

## 6. ՏԻԳՐԱՆ ԵՐԿՐՈՐԴԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Ինչպես վերև տեսանք, իննսնական թվականների վերջերում (մեր թվ. առ.) Տիգրան Երկրորդը դաշն էր կնքել և բարեկամություն հաստատել Միհրդատ Եվպատորի հետ և ապահովել էր իր թիկունքն արևմուտքում։

Այս դաշնադրությունից և Կապպադովկիայի 93 և 91 թվականների արշավանքներից հետո, Տիգրանն ոգտվեց ներքին խառնակություններից, վորոնք ծագել եյին Միհրդատ Բ-ի մահից հետո (90 կամ 88 թ. մեր թվ. առ.) պարթևական թագավորության մեջ, և սկսեց իր հաղթական կռիվներն ընդդեմ թշնամի ու մրցակից պարթև Արշակունիների։ Այս կռիվների, ինչպես և Տիգրանի հետագա մեծ նվաճումների ճշգրիտ թվականները և նրանց ժամանակագրական հաջորդականությունը՝ պատմագիտական ու բանասիրական յերկերում հաճախ խառնաշփոթված և սխալ են վորոշված։

Պատերազմ սկսելով պարթևների դեմ՝ Տիգրանը, նախ և առաջ, յետ վերցրեց այն յոթանասուն հովիտները, վոր նա իբրև փրկանք տվել էր նրանց պատանդությունից ազատվելու համար։ Մարկվարտի կարծիքով, այս հովիտներն այն շրջաններն եյին, վոր գրավել էր Արտաշես Ա-ը Ատրպատականի կողմերում[1]։ Ստրաբոնի ուշագրավ մի վկայությունից յերևում է[2], վոր Տիգրանը նվաճել էր այժմ բացի յոթանասուն հովիտներից նաև Մեծ Աղբակ գավառը, այսինքն՝ այժմյան Բաշքալեյի շուրջը գտնվող յերկիրը, վորը հետո ատրպաաականցիները յետ առան հայերից 33 թվին (մեր թվ. առ.)[3]։ Ստրաբոնի համապատասխան վկայության մեջ Συμβάκη աղավաղված ընթերցվածը Մարկվարտն առաջարկում է ուղղել և կարդալ 'Αλβάκη։

«Մարաստան-Ատրպատականի հզոր հարևաններն են, —

---

[1] Տես Eranschahr, էջ 100։

[2] Տես XI, 13, 2:

[3] Տես Markwart, Eranschahr, էջ 109։

ասում է Ստրաբոնը,—արմենները և պարթևները, վորոնք հափշտակում եյին հաճախ նրա յերկրամասերը։ Սակայն սա դիմադրում եր և յետ եր առնում խլվածը. հենց այդպես նա յետ եր վերցրել հռոմեական իշխանության տակ գտնըվող արմեններից Աղբակը [=Συμβάκην] և բարեկամություն եր հաստատել ինքը Կեսարի հետ»[1]։

Հավանորեն, Աղբակի գրավումից հետո յեր տեղի ունեցել Տիգրանի արշավանքը Ադիաբեն, ուր նա ավերածության եր յենթարկել Նինուեյի և Արբելայի շրջանները[2]։ Հետաքրքիր է ու ուշագրավ, վոր մինչևիսկ այս հեռավոր յերկրում, ինչպես վկայում է Ստրաբոնը, բնակություն եյին հաստատել արմենները, վորոնք կազմում եյին այստեղ բնակչության մի ստվար մասը։

«Ադիաբենի մեծագույն մասը,—ասում է Ստրաբոնը,—դաշտային է։ Լինելով Բաբելոնիայի մասը՝ սա ունի իր սեփական կառավարիչը. բայց յերբեմն միացված է յեղել և Արմենիային։ Մեդացիները, արմենները և բաբելոնացիները, վորոնք ամենամեծ թիվը կազմող ժողովուրդներն եյին միշտ այստեղ՝ սկզբից հենց այնքան եյին հակառակ իրար, վոր հարմար դեպքում միմյանց վրա եյին հարձակվում ու նորից հաշտվում»[3]։

Ադիաբենը և Մարաստան-Ատրպատականը նվաճելուց և իր իշխանությանը յենթարկելուց հետո՝ Տիգրանը հարավ-արևելքում կարողացավ հասնել մինչև պարթև Արշակունիների ամառնային նստավայր Եկբատանա մայրաքաղաքը և այրեց այստեղ նրանց Ադրաբանան ամրոցը, վորը Եկբատանայից գտնըվում եր մոտ 10 կիլոմետր հեռավորության վրա[4]։

Պարթևների պարտությունն ունեցավ, բնականաբար, այն հետևանքը, վոր Հայաստանի բոլոր հարևան պետությունները, վորոնք մինչ այդ վասալներն եյին պարթև Արշակունիների՝ հարկադրված յեղան ընդունել Տիգրանի գերիշխանությունը։ Հայաստանի սահմանակից յերկրների՝ Ադիաբենի, Կորդուքի, Մարաստան-Ատրպատականի թագավորները յենթարկվեցին այնուհետև Տիգրանի իշխանության և, ըստ յերևույթին, պարտավոր

---

1 Տես XI, 13, 2:

2 Տես Ստրաբոն, XI, 14, 15:

3 Տես նույնը, XVI, 1, 19:

4 Տես Իսիդոր Խար., § 6—C. Müller, Geogr. graeci min. 1, 250:

*էին նրան վճարել հարկ և օգնել զորքով պատերազմի ժամանակ։ Կասսիոս Դիոնը վկայում է նույնպես, որ Ատրպատականի Միհրդատ թագավորն ամուսնացել էր Տիգրանի աղջկա հետ*[1]։

*Հաղթված և պարտված պարթևները ոչ միայն հաշտվեցին այս բոլորի հետ, այլ նաև ստիպված եղան Տիգրանին տալ ամբողջ Միջագետքը և նրա մեջ գտնվող Միգդոնիան և Օսրոյենը։ Միևնույն ժամանակ, ինչպես դժվար չէ կռահել Յուստինոսի մի վկայությունից*[2], *նրանք կնքեցին նրա հետ դաշնակցության հատուկ պայմանագիր և հրաժարվեցին «թագավորների թագավոր» տիտղոսից, որը կրելու էր այնուհետև Տիգրան Բ-ը։*

*Յետ դառնալով Հայաստանի հարավային սահմանների մոտ գտնվող Միջագետքին՝ Տիգրանը փոխադրեց հարավային Միջագետքից և բնակեցրեց Օսրոյեն-Եդեսայի շրջաններում արաբական թափառական ցեղեր։ Սրանց նա հանձնարարեց, ինչպես վկայում են Պլուտարքոսը և Պլինիոսը*[3], *տրանզիտային առևտրական ճանապարհների վերահսկողությունը։ Տիգրանի համար նրանք մաքս էին գանձելու, գլխավորապես, Յեփրատ գետի անցքի մոտ, որը գտնվում էր Զևգմայի արևմտակողմում։ Օսրոյենի հարևան Միգդոնիան, որի մեջ ստրատեգիական մեծ կարևորություն ուներ Մծբինը, Տիգրանը կազմակերպել էր, ըստ յերևույթին, իբրև առանձին իշխանություն, որի վերակացությունը նա հանձնել էր իր Գուրաս յեղբորը։*

*Ինչպես յերևում է աղբյուրների ուշադիր քննությունից, հայ-պարթևական կռիվները և Տիգրանի վերոհիշյալ նվաճումները տեղի էին ունեցել, մեծ մասամբ, Միհրդատյան առաջին պատերազմի տարիներում, մոտավորապես, 89—85 թվականներին։ Սխալ է, անտարակույս, Աստուրյանի յենթադրությունը, որը պարթևական յերկրների նվաճումը դնում է Ասորիքի միացումից և 84 թվից հետո*[4]։ *Գուտշմիդը շատ ուղիղ մատնանշել է, որ Ասորիքը, որը սահմանակից չէր Հայաստանին՝ կարելի չէր գրավել նախապես պարթևներին հաղթելուց և Միջագետքը նվաճելուց հետո*[5]։

---

1 *Տես* XXXVI, 14:

2 *Տես* XL, 3:

3 *Տես Պլուտ., Լուկուլլոս 21 և Պլինիոս* VI, *28, 142։*

4 *Տես «Քաղաքական վերաբերությիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմայ», Վենետիկ 1912, էջ 39։*

5 A. von Gutschmid, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, Petersb. 1887, *էջ 20, ծանոթ. 4։*

Հայ-պարթևական կռիվներից հետո, մոտավորապես 84 կամ 83 թվին (մեր թվ. առ.), Տիգրան Բ-ը կարողացավ նաև տիրել ամբողջ վերին Ասորիքին բացի Անտիոքի մոտ գտնվող Սելևկիա քաղաքից։ Ասորիքի գրավման մասին առանձնապես ուշագրավ է Հուստինոսի հետևյալ վկայությունը.

«Երբ լեղբայրների փոխադարձ ատելության և ծնողների թշնամությունների պատճառով,—ասում է Հուստինոսը,—որը շարունակում էին նաև որդիները՝ Ասորիքի և՛ թագավորները և՛ թագավորությունը ուժասպառ լեղան համառ կռիվներում, ժողովուրդն ապավինեց դրսի օգնության և սկսեց փնտռել իր համար օտարերկրյա թագավորներ։ Արդ՝ ժողովրդի մի մասը կարծում էր, որ պետք է հրավիրել Միհրդատ Պոնտացուն, մի մասն էլ՝ Եգիպտոսից Պտղոմեոսին, իսկ վոմանք առարկում էին, որ Միհրդատը խճճվել է հռոմեական պատերազմի մեջ և Պտղոմեոսը միշտ թշնամի յե լեղել Ասորիքին. բոլորը սակայն համաձայնության յեկան Հայաստանի Տիգրան թագավորի նկատմամբ, որն ունեը իր սեփական ուժերը և միաժամանակ պարթևների դաշնակիցն էր և Միհրդատի փեսան էր»[1]։

Ասորիքի և Փյունիկիայի մասին կարևոր է նաև Ստրաբոնի վկայությունը, որը հակառակ Հուստինոսի տեղեկության մատնանշում է, որ այս լերկրները Տիգրանը գրավել էր ո՛չ թե խաղաղ կերպով, այլ զենքի ուժով։

«Իսկ նրա [Տիգրանի] բախտը,—ասում է Ստրաբոնը,—լեղել է փոփոխական. սկզբում նա պարթևների մոտ պատանդ էր. հետո նրան աջողվեց վերադառնալ հայրենիք, տալով նրանց յոթանասուն հովիտ Հայաստանում։ Նա այնուհետև զորացավ և ո՛չ միայն յետ վերցրեց այդ հովիտները, այլև ավերեց նրանց լերկիրը Նինուեյի և Արբելայի շուրջը։ Նա հպատակեցրեց իրեն Ատրպատականը և Կորդուքը և սրանց հետ միասին նաև Միջագետքի մնացած մասը։ Բացի այդ, անցնելով Եփրատ գետը՝ նա նվաճեց բռնությամբ Ասորիքը և Փյունիկիան»[2]։

Ինչպես տեսնում ենք, Ստրաբոնի հաղորդած այս տեղեկությունը հակասում է Հուստինոսի վկայությանը, որը պարզ ու

---

[1] *Տես Հուստինոս*, XL, *1, 1—3*։

[2] *Տես* XI, *14, 15*։

որոշ ասում է, որ Տիգրանն Ասորիքին տիրել էր բնակիչների հոժարակամ առաջարկությամբ։ Այս հակասության մասին միանգամայն հավանական կարելի չէ համարել Ասատուրյանի բացատրությունը։ Նրա կարծիքով՝ վերոհիշյալ յերկու վկայությունն էլ կարող են ուղիղ լինել, որովհետև Տիգրանը՝ հրավիրված լինելով որոշ կուսակցության կողմից՝ պետք է իրեն հպատակեցրած լինեն զենքով մյուս կուսակցությունը[1]։

Ըստ յերևույթին, Տիգրանի կողմնակիցներն են յեղել Անտիոք քաղաքը և միջազգային տարանցիկ առևտրի հետ կապված վաճառականները։ Ասորիքի միացումը Հայաստանին նրանց համար տնտեսական կարևոր նշանակություն ուներ, որովհետև Զեվգմայի վրայով անցնող համաշխարհային գլխավոր ճանապարհը գտնվում էր, Միջագետքի նվաճումից հետո, Տիգրանի ձեռքում։

Հյուսիսային Ասորիքը գրավելուց հետո՝ Տիգրանն այնուհետև նվաճեց նաև արևելյան Դաշտային Կիլիկիան (Cilicia Pedias), վորը Սելևկյան պետության հյուսիս-արևմտյան մասն էր, և, բացի այդ, նույնպես և Կոմագենի փոքր թագավորությունը, վորը գտնվում էր Դաշտային Կիլիկիայի արևելակողմում։

Այսպիսով նա իր պետության արևմտյան սահմանում անմիջական հարևանը դառավ հռոմայեցիների, վորոնք 102 թվին (մեր թվ. առ.) գրավել եյին արևմտյան Լեռնային Կիլիկիան (Cilicia Tracheia):

Անտիոքը, վորը Սելևկյանների մայրաքաղաքն էր և ուներ մոտ կես միլիոն բնակչություն՝ դառավ հարավում Տիգրանի գըլխավոր գահանիստ քաղաքը և այստեղ նրա անունով ու պատկերով տպվում եյին այն գեղեցիկ դրամները, վորոնք մեծ քանակությամբ պահպանվել են և պահվում են այժմ թանգարաններում։ Իսկ Սելևկյան Ասորիքը նա դարձրեց առանձին կուսակալություն և այնտեղ կառավարիչ նշանակեց, ինչպես վկայում է Ապպիանոսը[2], իր Բագարատ (Μαγαδάτης=*Βαγαδάτης) զորավարին։ Մարկվարտի կարծիքով՝ հայկական ավանդությունը, վորը պահպանված է Մար Աբասի մոտ՝ Բագրատունիների նախարարական տոհմի նախահայր է համարում հենց այս Բագարատին[3]։ Սուլլայի և Միհրդատի դաշնագրության հետևյալ տարին, ուրեմն՝ արդեն 83 թվականին, ասորական տարեգրերը, ինչպես մատնանշում է

[1] Տես Ասատուրյան, «Քաղաքական վերաբերութիւններ», էջ 34, ծան. 3։
[2] Տես Սիրիականք, 48։
[3] Տես Eranschahr, էջ 174։

*Մոմզենը[1], Տիգրանին համարում են տեր իրենց ամբողջ յերկրի և Կիլիկիան ու Ասորիքը հիշատակում են՝ վորպես հայկական սատրապություն Բագարատի իշխանության տակ։*

*Ասորիքում հաստատված հայկական տիրապետության մասին հետաքրքիր է Ռեյնաքի հետևյալ գնահատությունը[2].*

*«Ասորիքը,—ասում է նա,—աղատ շունչ քաշեց. և թեպետ նա յենթարկվեց նվաստացուցիչ ոտար իշխանության, սակայն տասնչորս տարվա ընթացքում[3] նա ունեցավ խաղաղություն, ապահովություն և բարեկեցություն»։*

*Աղբյուրների պատահական ու կցկտուր տեղեկություններից յերևում է, վոր Ասորիքին 84 83 թվին տիրելուց հետո Տիգրան Բ-ը յերկար ժամանակ կռիվներ և վարել արևելյան Փոքր Ասիայում և Փյունիկիայում, գլխավորապես, ամուր ու անառիկ քաղաքների դեմ։ Փյունիկիայում և հարավային Ասորիքում դիմադրությունը կազմակերպել եր նրա դեմ Սելևկյան Կլեոպատրա կամ Սելենե թագուհին։ Ցեվ ավելի քան հավանական է, վոր Ասորիքի այս մասերը և Փյունիկիայի ծովափնյա քաղաքները նա գրավել եր հետզհետե համառ ու յերկարատև կռիվներից հետո։*

*Սուլլայի մահից հետո (78 թ.) և Միհրդատյան յերրորդ պատերազմից առաջ (74—71 թ.) Տիգրանը նորից եր արշավել Կապպադովկիա, ըստ յերևույթին, դարձյալ իր աներոջ Միհրդատի սադրանքով։ Այս անգամ Կապպադովկիան, ինչպես մատնանշում է Ապպիանոսը[4], ընկել եր իբր ցանցի մեջ՝ նա այժմ շրջապատված եր հայկական նոր գրավված յերկրներով վոչ միայն Ծոփքի, այլև Կոմագենի ու Դաշտային Կիլիկիայի կողմերից։ Տիգրանին հաջողվեց գրավել այս արշավանքի ժամանակ Կապպադովկիայի Մաժաք մայրաքաղաքը և բազմաթիվ նաև այլ հելլենիստական*

---

[1] „Римская история“, т. III, перевод А. Веселовского, Москва 1887, *եջ 40։*

[2] Mithridate Eupator, *եջ 312։*

[3] *83—69 թ., տես Ապպիանոս, Սիրիականք, 48։ Համաձայն Յուստինոսի՝* (XL, 1, 4) *Տիգրանի տիրապետությունը տևել է Ասորիքում 17 տարի։ Նիզեն կարծում է, վոր Յուստինոսի տված* XVII *թիվը կարող է լինել վրիպակ* (XVII *փխ.* XIII), *տես* Низе, Очерк римской истории и источниковедения. С. Петербург, 1910, *եջ 288։ Ռեյնաքի կարծիքով՝ հայկական տիրապետությունը Յուստինոսը ցույց է տվել մինչև Տիգրանի վերջնական պարտությունը 66 թվին, տես* Mithridate Eupator, *եջ 312, ծան. 6։*

[4] *Տես Միհրդատականք, 67։*

քաղաքներ, որոնց բնակիչներին՝ մոտ 300.000 հոգի՝ նա փոխադրեց իր նորակառույց Տիգրանակերտ քաղաքը[1]։

Անհավանական պետք ե համարել սակայն Մոմզենի կարծիքը, որ իբր թե, դեռևս այս արշավանքից առաջ՝ Տիգրանը միացրել եր Ծոփքին Մելիտենե քաղաքը և ամբողջ շրջանը[2]։ Այս յենթադրությունը, որն ընդունելի յեն համարել նաև Խալաթյանցը[3] և ուրիշները, չի կարող ճիշտ լինել, որովհետև Սալլուստիոսի և Տակիտոսի վկայություններից հայտնի յե, որ 69 թվի Լուկուլլոսի արշավանքի ժամանակ Եփրատ գետի արևմտակողմը և Մելիտենե քաղաքը գտնվել են ոչ թե Տիգրանի, այլ Կապադովկիայի թագավորության սահմաններում[4]։

Բացի կապադովկիական քաղաքների բնակչությունից Տիգրանակերտ ու Հայաստան եյին բերվել նաև Դաշտային Կիլիկիայի քաղաքների և, մասնավորապես, ծովափնյա Սոլի քաղաքի բնակիչները[5]։

Տիգրան Բ-ի կռիվները Փյունիկիայում և, հատկապես, Պտղոմայիդ քաղաքի նվաճումը հիշատակված են Հովսեպոս Փլավիոսի մոտ։ Պտղոմայիդի նվաճումը տեղի յեր ունեցել ոչ թե 74 թվին, ինչպես մատնացույց ե արել Մոմզենը[6], այլ Լուկուլլոսի Հայաստան արշավելուց առաջ՝ 70 թվին (մեր թվ. առ.)[7]։

Հովսեպոսի համապատասխան վկայությունը մեջ եմ բերում ամբողջությամբ։

> «Այդ ժամանակ լուր ստացվեց,— ասում ե Հովսեպոսը,— որ Հայոց Տիգրան թագավորը 300.000 զորքով ներս ե մտել Ասորիք և գալու յե նաև Հրեաստան։ Տեղեկանալով այս մասին՝ սարսափահար յեղան, բնականաբար, Հրեաստանի թագուհին և ժողովուրդը։ Նրանք ուղարկեցին Տիգրանի մոտ, որը պաշարել եր Պտղոմայիդը, դեսպաններ բազմաքանակ ու արժանավայել ընծաներով։ Իսկ Սելենե թագուհին, որի անունն եր նաև Կլեոպատրա և որն իշխում եր Ասորիքում՝ դրդում եր բնակիչներին, որ դիմադրեն Տիգրանին։

1 Տես նույնը, 67. համեմատե նաև Ստրաբոն, XII, 2, 9 (539)։
2 Տես „Римская история", III, Москва 1887, եջ 39։
3 Очерк истории Армении, Москва 1910, եջ 160։
4 Տես Sall. IV, frg. 59 և Tac., Annales 15, 27:
5 Տես Պլուտ., Պոմպ. 28, 4. համեմատե նաև Դիոն Կասսիոս XXXVI, 37։
6 „Римская история", III, եջ 40։
7 Համեմատե Պլուտ., Լուկուլ., 21, 2։

Դեսպանները յեկան նրա մոտ և աղաչեցին, վոր բարի ու վողորմած լինի դեպի իրենց թագուհին և ժողովուրդը։ Յեվ այդ ժամանակվանից Տիգրանը հոգատար վերաբերմունք ունեցավ նրանց նկատմամբ և քաջալերեց նրանց ու հուսադրեց։ Յերբ Տիգրանն արդեն վերցրել եր Պտղոմայիդը՝ նրան հայտնեցին, վոր Լուկուլլոսը՝ հետապնդելով Միհրդատին՝ չի կարողացել նրան բռնել և վերջինս փախել ե Իբերիա։ Նրան նմանապես ազդարարեցին, վոր Լուկուլլոսը պաշարել ե և ավերում ե Հայաստանը։ Յերբ Տիգրանն այս իմացավ՝ վերադարձավ իր բուն յերկիրը»[1]։

Ինչպես վկայում ե նաև Ստրաբոնը, Ասորիքում և Փյունիկիայում տեղի ունեցած այս կռիվների ժամանակ Տիգրանը գերի յեր վերցրել Սելենե-Կլեոպատրա թագուհուն։ Վերջինս բանտարկվեց Զեվգմայի դիմաց գտնվող Սելևկիա բերդում և գլխատվեց Տիգրանի հրամանով Լուկուլլոսի 69 թվի արշավանքից առաջ[2]։

Իր քսանհինգ տարվա թագավորության ընթացքում (95—70 թ. մեր թվ. առ.) Տիգրան Բ-ը, ինչպես տեսնում ենք, կարողացել եր անչափ ընդարձակել իր յերկիրը, վորն այժմ տարածվում եր Կասպից ծովից և Կուր գետից մինչև Միջերկրական ծովն ու Յեգիպտոսի սահմանները և Մեծ Մարաստանից մինչև հռոմեական Լեռնային Կիլիկիան ու Կապադովկիան։ Թեև Հովսեպոսի վկայությունից յերևում ե, վոր Տիգրանը Պաղեստինի վրա չեր հարձակվել, սակայն այդ յերկիրը ևս, ըստ յերևույթին, վորոշ չափով ընդունել եր նրա գերիշխանությունը։ Ուշագրավ ե այս տեսակետից Ապպիանոսի հաղորդած տեղեկությունը[3], վորի համաձայն Տիգրանի գերիշխանությանը յենթարկված ե յեղել ամբողջ Ասորիքը մինչև Յեգիպտոսի սահմանները։

Գրաված լինելով Դաշտային Կիլիկիան ու Կոմագենը՝ Տիգրանն արդեն վոտք եր դրել Փոքր Ասիա և հարևան եր դառել, ինչպես ասացինք, հռոմեական Լեռնային Կիլիկիային։ Կապադովկիան, վորը հռոմայեցիների դաշնակիցն եր՝ շրջապատված եր այժմ Պոնտոսի, Ծոփքի, Կոմագենի և Դաշտային Կիլիկիայի կող-

---

1 Տես Հնախոսություն, XIII, 16, 4. համեմատե նաև Հրեական պատերազմ, I, 5, 3։

2 Տես Ս տ ր ա բ ո ն, XVI, 2, 3։

3 Տես Սիրիականք, 48—49։

մերից ու գրեթե անպաշտպան եր ստրատեգիական աննպաստ իր դրության պատճառով։

Տիգրանի նվաճումները Միջերկրական ծովի ափերին և, մանավանդ, Հռոմի դաշնակից Կապպադովկիայի վերոհիշյալ ավերածությունը, վարկաբեկում եյին, բնականաբար, հռոմեական հանրապետության հեղինակությունն արևելյան յերկրներում։ Սակայն չնայած դրան՝ Հռոմը չեզոքություն պահպանեց և չպաշտպանեց մինչևիսկ իր դաշնակից Կապպադովկիային։

Հռոմի չեզոքությունը միանգամայն հասկանալի յե, վորովհետև Տիգրանի նվաճումները տեղի եյին ունեցել կամ Միհրդատյան պատերազմների ժամանակ և կամ Սուլլայի արյունահեղ դիկտատուրայի ընթացքում, յերբ Հռոմը թույլ եր ու անզոր ներքին յերկպառակությունների պատճառով։ Ինքը Տիգրանը չուներ, իհարկե, վորևե պատճառ պատերազմելու հռոմայեցիների դեմ, քանի վոր սրանք չեյին միջամտում և չեյին խանգարում Հայաստանի աշխարհակալ ընդարձակումը։

Ահա այս բարենպաստ պայմաններն եյին պատճառը, վոր 95—70 թվերին Հայաստանը հետզհետե կարողացավ դառնալ հզոր ու մեծ պետություն։

# 7. ՀԵԼԼԵՆԻԶՄԻ ԶՈՐԵՂԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՅԵՎ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ ՔԱՂԱՔԻ ՀԻՄՆՈՒՄԸ

*Տիգրան Բ-ի մեծ ու լայնարձակ աշխարհակալությունը, վորը խայտաբղետ մի խառնուրդ եր ցեղերի, լեզուների և տարբեր մշակույթների՝ չի կարող, իհարկե, համարվել միահար, կայուն ու ամուր մի պետություն։ Տիգրանի գերիշխանության տակ միացել եյին թե տոհմա-ցեղային նահապետական շրջաններ, թե ֆեոդալական յերկրներ և թե հելլենիստական քաղաքներ, վորոնք ունեյին իրենց հատուկ կազմակերպությունը։*

*Հայաստանի հարևան թագավորությունները, վորոնք ճանաչել եյին «թագավորների թագավոր» Տիգրանի գերիշխանությունը, ըստ յերևույթին, պարտավոր եյին նրան տալ վորոշ հարկ, իսկ պատերազմի ժամանակ ոգնելու եյին նրան իրենց զորքով։ Վասսալական այս թագավորությունները, ինչպես և բուն Հայաստանի իշխանական ինքնավար յերկրները, պահպանում եյին նախկին իրենց հատուկ կարգերը և իրենց ուրույն կազմակերպությունը։*

*Տիգրանի այս հայկական մեծ պետության մեջ առաջնակարգ դեր եր կատարում, անտարակույս, կալվածատեր հայ ազնվականությունը, վորը նրա գլխավոր հենարանն եր, ինչպես վերոհիշյալ հաղթական կռիվներում, նույնպես և պետական ու կառավարչական գործերում։ Յեվ իրավի, մենք տեսանք վերև, վոր Մծբինի վերակացությունը նա հանձնել եր իր Գուրաս յեղբորը, իսկ Անտիոքում կառավարիչ եր նշանակել Բագարատ հայ իշխանին։*

*Հենց Հայաստանի տիրող կալվածատիրական ու զինվորական ազնվականության զորեղացմամբ և, գլխավորապես, Հայաստանի քաղաքական ու տնտեսական անարգել ու առաջընթաց զարգացմամբ՝ բացատրվում են, հավանորեն, Տիգրան Բ-ի գլխապտույտ հաջողությունները և նրա աշխարհակալման ձգտումները։*

«Տիգրան Մեծի հաջողությունները,— ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Գր. Խալաթյանցը,—պետք է վերագրել տնտեսական այն կուտակված մեծ ուժերին, որ հավաքվել եյին Հայաստանում դարերի ընթացքում—պարսիկների խաղաղ տիրապետության շրջանում, Սելևկյանների ժամանակ և ավելի ուշ»[1]։

«Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն իմ աշխատության մեջ մանրամասն նույնպես ցույց եր տրված[2], որ հայ ժողովրդի աճման ու տնտեսական զարգացման տեսակետից Հայաստանը խիստ աննպաստ պայմանների մեջ եր գտնվում Պոմպեյոսի հաղթությունից հետո (66 թ. մեր թվ. առ.)՝ յերբ նա դառել եր բուֆեր պետություն Արեմուտքի և Արևելքի մրցող մեծ պետությունների միջև։ Մինչ այդ, Աքեմենյանների խաղաղ տիրապետության, ինչպես և Սելևկյանների ու Տիգրան Բ-ի նախորդների ժամանակ, Հայաստանում քաղաքական պայմանները միանգամայն բարեհաջող են յեղել թե ժողովրդի աճման և թե յերկրի տնտեսական զորեղացման համար։

Կարելի յե, իմ կարծիքով, վստահորեն յենթադրել, որ հայ ժողովրդի թիվն ավելի մեծ է յեղել Արտաշեսյան թագավորության և Տիգրան Բ-ի ժամանակ, քան հետագա դարերում։ Յեվ, մասնավորապես, Ստրաբոնի վկայություններից ես մենք գիտենք[3], որ նրա ժամանակ արմենները վոչ միայն գրաված են յեղել ամբողջ հայկական լեռնաշխարհը, այլ մեծ թիվ են կազմել նաև Ադիաբենում և հյուսիսային Միջագետքում։

Հայաստանի բնակչության այս աճումը ես, ինչպես և տնտեսական ու քաղաքական նրա խաղաղ զարգացումը նախորդ դարերում՝ մեծապես նպաստել եր, անշուշտ, նրա աշխարհակալական ընդարձակմանը Տիգրանի ժամանակ։

Նախորդ մեր աշխատություններից մեկում մենք, բացի այդ, հավանական եյինք համարել, որ արդեն Արտաշես Ա-ի ժամանակ Հին Հայաստանը գտնվել է նախնական ֆեոդալիզմի շրջանում և ունեցել է ֆեոդալական կազմակերպության հատուկ սաղմերը և առանձին հիմքերը[4]։ Պլինիոսի կարեւոր մի վկայու-

---

[1] Տես Очерк истории Армении, Москва 1910, եջ 161։

[2] „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен", Эривань 1930, եջ 50—53։

[3] Տես XVI, 1, 19 և 26։

[4] Տես Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Յերևան 1934, եջ 248—251։

թյունից հայտնի չէ, որ Հայաստանը բաժանված էր նրա ժամանակ (23—79 մեր թվ. հ.) 120 շրջանների, որոնք նա անվանում է ստրատեգիաներ, այսինքն՝ «զորավարություններ»[1]։ Մեծագույն մասն այս շրջանների, որոնք գոյություն ունեին, հավանորեն, արդեն Տիգրան Երկրորդի ժամանակ՝ համարվելու յեն, ինչպես այգ մատնանշել է Ադոնցը[2], նախարարական յերկըրներ, որոնց մեջ տնտեսապես և քաղաքականապես գերակշռող դեր եր կատարում կալվածատեր ազնվականությունը և, իմ կարծիքով, վոչ այնքան ստրուկ աշխատավորությունը, վորքան կիսազատ և ազատ գյուղացիությունը։

Բացի Պլինիոսի վկայությունից ուշագրավ է նաև Պլուտարքոսի հաղորդած տեղեկությունը չորս թագավորների մասին, վորոնք սպասարկում եյին Տիգրանին։

«Շատ թագավորներ,—ասում է Պլուտարքոսը,—սպասավորում են Տիգրանին, բայց նրանցից չորսը միշտ նրա հետ եյին լինում՝ վորպես ուղեկիցներ և թիկնապահներ. և յերբ նա գնում եր ձիով՝ նրանք կարճ խիտոններ հագած՝ վազում եյին առջևից. իսկ յերբ նստած եր լինում և պաշտոնական գործերով եր զբաղվում՝ նրանք կանգնած եյին լինում նրա շուրջը՝ իրար ձեռքից բռնած»[3]։

Հիմնվելով Պլուտարքոսի այս հաղորդագրության վրա, վորը չափազանցված մի ծաղրանկար է ֆեոդալական հանդիսակարգերի՝ Մարկվարտը կարծում է[4], վոր վերոհիշյալ չորս թագավորները, հավանորեն, Հայաստանի չորս բդեշխներն են, վորոնց ծագումը հավանական է յենթադրել Տիգրան Բ-ի ժամանակ։ Նիկ. Ադոնցը նմանապես հավանական է համարում, վոր ֆեոդալական Հայաստանի չորս բդեշխությունները, վորոնց մասին մանրամասն տեղեկություններ ունեն Ագաթանգեղոսը, Փավստոսը և Մովսես Խորենացին[5], նախկին փոքր ու ինքնուրույն թագավորությունների միապետներ են, վորոնք Տիգրան Բ-ի ժամանակ ճանաչել եյին հայ թագավորների քաղաքական գերիշխանությունը[6]։

---

1 Տես P l i n., Nat. Hist. VI, 10, 2:

2 Армения в эпоху Юстиниана, С.-Петербург 1908, եջ 302։

3 Պ լ ո ւ տ., Լուկուլ., 21, 6։

4 Eranschahr, եջ 171—173։

5 Տես իմ աշխատությունը «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», եջ 34—3։

6 Տես Армения в эпоху Юстиниана, եջ 283 և 410—411։

*Աղբյուրների թռուցիկ ու պատահական տեղեկությունները, դժբախտաբար, հնարավորություն չեն տալիս մեզ հանգամանորեն քննության առնելու Հայաստանի ներքին կյանքը նախարշակունյան այս շրջանում։ Մեզ հայտնի չէ միայն, որ Տիգրան Բ-ի վերանորոգչական գլխավոր գործերն էին լինել Տիգրանակերտի հիմնումը և հելլենիզմի ու հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածման ու զարգացման նրա հատուկ քաղաքականությունը։ Նա հասկացել էր, ըստ յերևույթին, որ նահապետական հայ կենցաղի տնտեսական ու կուլտուրական առաջադիմությանը կարող էր մեծապես նպաստել հելլենիստական տիպի քաղաքը, վորը կենտրոն էր արհեստների, արդյունագործության ու առևտրի զարգացման։*

*Պետք է ասել, վոր հելլենասիրությունը այդ ժամանակ ընդհանուր յերևույթ էր նաև Հայաստանի հարևան յերկրներում։ Գեռևս յերկրորդ դարում Կապպադովկիայի Արիարաթ Ե. Թագավորը (163—130 մեր թվ. առ.), վորը յերկար ժամանակ ճանապարհորդել էր Իտալիայում և Հունաստանում՝ հրավիրել էր Կապպադովկիա հույն արվեստագետներ ու գրողներ և իր յերկրի Մաժաք ու Տիանա գլխավոր կենտրոնավայրերը դարձրել էր հելլենիստական տիպի ինքնավար քաղաքներ, վորոնցից Մաժաքն ընդունել էր ու գործադրում էր, ինչպես վկայում է Ստրաբոնը[1], Խարոնդասի օրենքները։*

*Հելլենական մշակույթը և հելլենիստական քաղաքների հատուկ վարչակարգն ավելի մեծ չափերով տարածվում եյին Պոնտոսում, գլխավորապես, Միհրդատ Եվպատորի ժամանակ, վորին յեվրոպական պատմագետները հնարավոր են համարել համեմատել Պետրոս Մեծի հետ։*

*Այստեղ Պոնտոսում արդեն հնագույն ժամանակներում հելլենական քաղաքակրթության ու լեզվի տարածման գլխավոր նեցուկներն եյին հունական ծովափնյա քաղաքները՝ Ամաստրիսը, Սինոպը, Ամիսոսը, Տրապիզոնը և հունական մյուս ավելի փոքր գաղութները։ Միհրդատ Եվպատորի ժամանակ այս քաղաքները խիստ մեծացել եյին և դառել միջազգային մեծ առևտրի նավահանգստային հարուստ կենտրոններ։ Հռոմեական նվաճումից առաջ, ասում է Ռեյնաքը[2], նրանք վոչ միայն իրենք եյին հասել բարեկեցության ու կուլտուրական զար-*

[1] *Տես* XII, 2, 9:

[2] Mithridate Eupator, *եջ 246։*

*գացման բարձր աստիճանի, այլև, աջակցելով Պոնտոսի և Մեծ Կապպադովկիայի տնտեսական առաջադիմությանը՝ սկսել էին հելլենիզմի կենդանարար ազդեցությունը տարածել և այդ երկրներում։*

*Շնորհիվ Միհրդատի առատաձեռն ու հոգատար աջակցության պոնտական բոլոր քաղաքներում կառուցվել էին հոյակապ ու գեղեցիկ նոր շենքեր, մինչևիսկ ամբողջ թաղամասեր, և բուռն թափով զարգանում էին ամեն տեղ հելլենական գեղարվեստն ու գիտությունը, որոնք վայելում էին թագավորի հատուկ հոգատարությունը։ Միհրդատ Եվպատորը պարզապես հետզհետե կերպարանափոխում էր իր երկիրը և տարածում ամենուրեք հունական քաղաքակրթությունը։ Նրա ժամանակ ոչ միայն հին Ամասիա մայրաքաղաքը, այլ նույնիսկ որոշ ավանգյուղներ դառել էին արդեն հելլենիստական քաղաքներ։ Հելլենական մշակույթի տարածման ու զորեղացման պարզ ցուցանիշներ են պոնտական Կոմանա, Կաբիրա, Գազիուրա, Պիմոլիսա և Տալավրա գյուղաքաղաքները, որոնք պղնձադրամներ էին կտրում հունարեն լեզվով և առասպելական հունական պատկերներով։*

*Ինչպես և Աղեքսանդր Մեծը, ըստ երևույթին, Միհրդատը ևս իրեն նպատակ էր դրել հաշտեցնել իրար հետ և միաձուլել արևելյան իրանական մշակույթը, որի ազդեցությանը մեծ չափերով ենթարկվել էր Պոնտոսը, արևմտյան հելլենական մշակույթի հետ, և սկսել էր արդեն „վերակառուցել իր երկրի տնտեսական ու կուլտուրական կյանքն այդ նոր հիմքերի վրա։*

*Թե որքան զորեղ է եղել իրանիզմի և հելլենիզմի կուլտուրական մերձեցումը՝ այդ ցույց են տալիս, նախ և առաջ, այդ երկու մշակույթների կրոնական հաշտեցումը և պոնտական տեղական աստվածների միաձուլումը հունականների հետ, օրինակ՝ Մա և Որմուզդ աստվածների նույնացումը Արտեմիդեյի և Զևս Ստրատիոսի հետ։ Այդ մերձեցման մի պարզ ապացույց է նաև այն, որ Կոմանայում, որը պոնտական ամենահռչակավոր սրբատեղերից մեկն էր՝ Միհրդատի ժամանակ քրմապետ էր նշանակվել Դորիլաոսը, որը հույն էր։*

*Որ զուգընթաց կուլտուրական ու կրոնական այս մերձեցման տեղի էր ունենում նաև ցեղային զանազան խմբակցությունների մերձեցումը հույների հետ՝ այդ ևս պարզ երևում է պոնտական Ամասիայում ծնված խոշորագույն աշխարհագրագետ Ստրաբոնի կենսագրությունից (մոտավ. 64 թ. մեր թվ. առ.—*

19 մեր թվ. հ.)։ Սա իր նախնիքների շարքում բացի հույներից հիշում է պարսիկ Մոափերնեսին և պափլագոնացի Տիբիոսին[1]։

Միհրդատ Եվպատորի թագավորության մեջ, ինչպես տեսնում ենք, իրագործվում էր Ալեքսանդր Մակեդոնացու սկսած այն մեծ գործը, որի նպատակն էր ըստ Դիոդորոսի[2] Ասիայի ու Եվրոպայի «միաբան համերաշխությունը և տոհմակցական բարեկամությունը»։

Հելլենիստական քաղաքային կուլտուրայի զարգացման և իր երկրի տնտեսական բարեկարգման ու բարգավաճման այդ նույն քաղաքականությունը վարել է նաև Տիգրան Բ-ը Մեծ Հայաստանում։

Վերանորոգչական այս շարժումը, ինչպես մանրամասն մատնացույց ենք արել «Հին Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն իմ աշխատության մեջ[3] սկսվել էր դեռևս Տիգրանից առաջ, գլխավորապես, Ծոփքում, որն անմիջական հարևանն էր Սելևկյանների թագավորության։ Ծոփքի զարգացմանը մեծ չափով զարկ էր տվել տնտեսական ու կուլտուրական մեծ հեղաշրջումն Ասորիքում և Միջագետքում։ Ծով Ծոփքում էին հիմնվել, ինչպես հայտնի է, Հին Հայաստանի հելլենիստական տիպի առաջին քաղաքները՝ Արշամաշատը և Կարկաթիոկերտը։

Հելլենիզմի ազդեցությունը Ծոփքի և Մարաստանի կողմերից որոշ չափով թափանցած պիտի լիներ, բնականաբար, նաև Մեծ Հայքի հյուսիսային շրջանները։ Այդ ազդեցության պարզ ապացույց են Արմավիրում գտնված Սելևկյան շրջանի հունարեն արձանագրությունները։ Այստեղ ևս Արարատյան դաշտում Արտաշես Ա-ը հիմնել էր, ինչպես տեսանք, Արտաշատ քաղաքը։

Սակայն ավելի լայն չափերով և ավելի վճռական կերպով հելլենիզմի ու հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածումը տեղի ունեցավ Մեծ Հայաստանում Տիգրան Բ-ի ժամանակ։

Վերանորոգչական այս գործն ավելի դժվար էր, իհարկե, իրականացնել Հայաստանում, քան Պոնտոսում, որն ուներ արդեն հելլենական բազմաթիվ քաղաքներ։ Քաղաքների ու քաղաքային կուլտուրայի զարգացման համար անհրաժեշտ էր կուլտուրական հարևան երկրներից Հայաստան փոխադրել ամբողջ քա-

---

[1] Տես Ստրաբոն, XI, 2, 18 և XI, 3, 4։

[2] Տես XVIII, 4, 4:

[3] Տես „О торговле и городах Армении", էջ 25—31։

*ղաքներ։ Իսկ այդ հնարավոր եր միմիայն բռնի միջոցներով։ Ուստի և Տիգրանը հարկադրված յեղավ գաղթեցնել դրսից Հայաստան առևտրականներ, արհեստավորներ և այլ վորակյալ աշխատավոր ոտարականներ, վորոնք հիմք եյին դնելու նրա յերկրում հելլենիստական քաղաքային կենցաղի և նեցուկ եյին ծառայելու Հայաստանի տնտեսական ու կուլտուրական զարգացման։*

*Ինչպես վերև տեսանք, հատկապես այդ նպատակով նա բռնի կերպով բնակեցրել եր Հայաստանում Կապպադովկիայի, Կիլիկիայի և, հավանորեն, նաև Ասորիքի, Կորդուքի և Ադիաբենի*[1]*, հելլենիստական այն քաղաքների բնակչությունը, վոր նա գրավել եր իր արշավանքների ժամանակ։*

*Բացի վերև մատնանշված տեղեկություններից՝ այդ գաղթականության մասին կարևոր են ու հետաքրքիր նաև Ստրաբոնի հետևյալ վկայությունները։*

*1. Ստրաբոն,* XI, *14, 15 (532)՝*

> *«Յերբ Տիգրանը զորեղացավ մինչ այդ աստիճան՝ նա հիմնեց մի քաղաք..., վորն անվանեց Տիգրանակերտ և բերեց այդտեղ իր ավերած 12 հելլենական քաղաքների բնակչությունը»։*

*2. Նույնը,* XII, *2, 9 (539)՝*

> *«Վատ վարվեց Տիգրան արմենը մաժաքցիների հետ, յերբ նա արշավել եր Կապպադովկիա։ Նա ամբողջ բնակչությունը քշեց տարավ Միջագետք և նրանց բնակեցրեց մեծ մասամբ Տիգրանակերտում։ Սակայն հետագայում, Տիգրանակերտի նվաճումից հետո, ով վոր կարող եր՝ վերադարձավ հայրենիք»։*

*Նույն գաղթականության մասին, վորը բերված ե յեղել վոչ միայն Տիգրանակերտ, այլև Արտաշատ ու ուրիշ կենտրոնավայրեր՝ ունեն ուշագրավ վկայություններ նաև Փավստոսը և Մովսես Խորենացին, վորոնց հաղորդած տեղեկությունները*[2] *մեջ են բերված և քննված են իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ*[3]*։*

---

1 *Պլուտարքոս, Լուկուլ., 26, 2։*

2 *Տե՛ս Փավստոս,* IV, *գլ. ԻԴ և ԾԵ, Խորենացի,* II, *գլ. ԺԶ. ԺԹ, ԽԹ, ԿԵ,* III, *գլ ԼԵ։*

3 *Տես եջ 216—219։*

*Տիգրան Բ-ի աշխարհակալական պետության քաղաքական ու կուլտուրական կենտրոնն էր լինելու նրա հիմնած Տիգրանակերտ քաղաքը։ Ո՛չ Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքը, ո՛չ էլ Սելևկյանների Անտիոք քաղաքը, որոնք գտնվում էին նրա մեծ պետության ծայրամասերում, չէին կարող ծառայել այդ նպատակին։ Բացի այդ, ընտրելով Անտիոքն իբրև աթոռանիստ կենտրոն՝ նա կկորցներ իր կապը Հայաստանի հետ, որը գլխավոր հենարանն էր ու հիմքը նրա ռազմական աջողությունների։*

*Տիգրանակերտ քաղաքի մասին բավականաչափ տեղեկություններ տալիս են հռոմեական ու հունական մատենագիրները, որոնք նկարագրել են Լուկուլլոսի արշավանքը Հայաստան և Տիգրանակերտի պաշարումն ու առումը։*

*Համաձայն Ապպիանոսի վկայության[1] Տիգրանակերտ քաղաքը շրջապատված էր 50 կանգուն բարձրությամբ պարիսպներով, որոնք այնքան լայն էին, որ նրանց մեջ շինել էին ձիերի համար ախոռներ և պահեստանոցներ։ Քաղաքի ներսում գտնվում էր ամուր ու անմատչելի միջնաբերդը։ Իսկ պարիսպներից դուրս Տիգրանը շինել էր տվել իր փառահեղ պալատը, որի շուրջը գտնվում էին պարտեզներ, զբոսարաններ, որսատեղեր և ձկնավազաններ։ Բացի այդ, այս տեղերի մոտ կառուցել էին նաև մի ամուր ամրոց։*

*Բռնի կերպով Տիգրանակերտ էին գաղթեցրել ո՛չ միայն վերոհիշյալ հելլենիստական քաղաքների բնակիչներին, այլև հայ ազնվականներին ու մեծամեծներին, որոնց գույքն ընդդիմության դեպքում ենթարկվում էին բռնագրավման։ Պլուտարքոսի վկայությամբ[2] թե այս ազնվականությունը և թե քաղաքի հասարակ ժողովուրդն աշխատում էին հաճոյանալ թագավորին և աջակցում էին քաղաքի կառուցման և ընդարձակման։*

*Մոմզենը[3] և հայագետ բանասերներից շատերը, որոնք օգտվել են նրա պատմությունից, հին Տիգրանակերտը համեմատել են Նինուեյի և Բաբելոնի հետ։ Լեման-Հաուպտը նույնպես կարծում է, որ Տիգրանի հիմնած քաղաքն ըստ իր տիպարի ու հատակագծի նման է լեղել ասորեստանյան քաղաքներին[4]։ Այս զուգա-*

---

[1] *Տես Միհրդատականք, 84։*

[2] *Տես Լուկուլ., 26, 3։*

[3] „Римская история" III, Москва 1885, *էջ 41։*

[4] *Տես* C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Berlin 1910, *էջ 396—399։*

դրումը, ինչպես ցույց ենք տվել «Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն մեր աշխատության մեջ[1], ճիշտ չե: Բաբելոնը և Նինուեն վո՛չ ըստ իրենց տիպի և վո՛չ էլ ըստ իրենց հատակագծի չեն կարող, իհարկե, նման ու համապատասխան համարվել այն քաղաքներին, վորոնք հիմնվում եյին հելլենիստական պետություններում: Ինչպես հայտնի յե մատենագրական աղբյուրների նկարագրություններից՝ Բաբելոնում և Նինուեյում անծայրածիր տարածության վրա և առանձին թաղամասերի միջև սփռված եյին վարելահողեր, մարգագետիններ, այգիներ և մրգատու անտառակներ: Այդ քաղաքների բնակիչների գլխավոր պարապմունքն եր վո՛չ այնքան առևտուրը և արհեստները, վորքան գյուղական տնտեսությունը: «Նինուէ,—վկայում ե Հովնան մարգարեն,—էր քաղաք մեծ Աստուծոյ՝ իբրև գնացս երից աւուրցս ճանապարհի» (Գ, 2): Իսկ Բաբելոնի շրջապատը հավասար եր համաձայն Հերոդոտի վկայության[2] 480 ստադիոնի (=մոտ 85 կիլոմ.):

Պարզ ե ուրեմն, վոր Տիգրանակերտը, վորը 69 թվին շրջապատել ու պաշարել եյին Լուկուլլոսի համեմատաբար փոքրաթիվ զորքերը, չե կարող բաղդատվել ու նույնացվել վերոհիշյալ քաղաքների հետ, այլ նա ըստ իր հատակագծի և առևտրական-արդյունագործական բնույթի նման ու համապատասխան կարող եր լինել հելլենիստական տիպի քաղաքներին:

Տիգրանակերտի տեղադրության մասին պատմագիտական յերկերում հայտնված են հակասական կարծիքներ: Նույն անհաշտելի տարաձայնությունները հատուկ են նաև մատենագրական հին աղբյուրներին: Այդ աղբյուրներից ամենահինը, Ստրաբոնը, Տիգրանակերտի տեղը մատնացույց ե անում Միգդոնիայում[3], Պտոլեմեոսը՝ Կորդուքում[4], իսկ Եվտրոպիոսը և Փավստոսը՝ Աղձնիքում[5]: Առանձնապես ուշագրավ ե Տակիտոսի վկայությունը, վորը պարզ ու վորոշ հաղորդում ե, վոր Տիգրանակերտի հեռավորությունը Մծբինից յեղել ե 37 հռոմեական մղոն (= մոտավ. 55 կիլոմ.)[6]:

---

1 Տես „О торговле и городах Армении", եջ 56:
2 Հերոդ., I, 178:
3 Տես Ստրաբ., XVI, 1, 23:
4 Պտոլեմ., V, 13, 22:
5 Եվտրոպ., VI, 9, 1 և Փավ., IV. ԻԴ:
6 Annales, XV, 5:

Հիմնվելով Ստրաբոնի և Տակիտոսի վկայությունների վրա, Մոմզենը[1], ինչպես և ուրիշ գիտնականներ, Տիգրանակերտի տեղը յենթադրել են Մասիոս լեռան ու Տիգրիս գետի հարավում և Մըծբին քաղաքի հյուսիսակողմում[2]։ Իսկ Հ. Կիպերտը, վորը Տակիտոսի վկայությունը համարել եր աղճատված և առաջարկել septem et triginta («յերեսուն և յոթը») ուղղել և կարդալ centum et triginta («հարյուր և յերեսուն»), Տիգրանակերտի տեղը մատնացույց ե արել հին Արզն քաղաքի ավերակների վայրում (այժմյան Սղերդի մոտ), վորոնք գտնվում են Տիգրիս գետի վոչ թե հարավում, այլ հյուսիսում[3]։

Տիգրանակերտի տեղը վորոշելու համար կարևոր են բացի վերոհիշյալ վկայություններից նաև Պլինիոսի և հին աշխարհագրական քարտեզների ցուցումները։ Այս վերջին վկայությունների մեջ ուշադրության արժանի յե նախ այն, վոր Նիկեփորիոս գետը, վորն ըստ Տակիտոսի[4] գտնվել ե Տիգրանակերտի մոտ, Պլինիոսի մոտ հիշատակված ե՝ Պարթենիոս գետի հետ միասին՝ իբրև Տիգրիս գետի ձախակողմյան վտակ[5]։ Ուրեմն, ինչպես տեսնում ենք, համաձայն Եվտրոպիոսի և Փավստոսի ցուցումներին ու նաև Պլինիոսի այս վկայության Տիգրանակերտի տեղը վորոշվում ե Տիգրիս գետի ձախ կողմում և հին Աղձնիքում։ Նույնը հաստատում են նաև Պտոլեմեոսի և Պեվտինգերյան հին քարտեզները, վորոնց մեջ Տիգրանակերտը նշանակված ե դարձյալ Տիգրիս գետի հյուսիսակողմում։

Ոգտագործելով աղբյուրների թե այս և թե նման տեղեկությունները՝ գերմանական գիտնականներ Լեմանը և Բելքը մանրամասն կերպով նայել ու քննել են տեղում բոլոր վերոհիշյալ վայրերը և վորոշել են, վոր հին Տիգրանակերտը գտնվել ե, իրոք, Տիգրիս գետի հյուսիսակողմում և այժմյան Ֆարկին քաղաքի տեղում[6]։ Յեվ հետաքրքիր ե, վոր նույն այս կարծիքը նրանցից առաջ հայտնած ե յեղել նաև գերմանական ֆելդմարշալ Մոլտքեն, ըստ յերևույթին, վորպես ռազմագիտական նկատառումներով[7]։

---

1 Տես Die Lage von Tigranokerta, Hermes IX, 1875:

2 Տես նույնը։

3 Տես Monatsberichte der Akademie der Wissenschaften zu Berlin, 1873:

4 Annales, XV, 4:

5 Տես Nat. Hist. VI, 31, 3. Paris 1883, (հրատ. M. Littré):

6 Համեմատե Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, I, եջ 381—429 և 501—523։

7 Տես Moltke H. von, Briefe über Zustände und Begebenheiten in der Türkei (1835—1839), Berlin, եջ 287։



*Ֆարկին-Տիգրանակերտ քաղաքը։*

*Որ հին Տիգրանակերտի տեղը լեղած պիտի լիներ, իրոք, այժմյան Ֆարկինում՝ այդ հաստատում են այժմ նաև իմ նոր դիտողությունները Պևտինգերյան քարտեզի* Zanserio *և* Cymiza *կայարանների տեղադրության մասին, վորոնք գտնվում եյին պարզապես Տիգրանակերտի հյուսիսակողմում։ Հռոմեական քարտեզի* Cymiza *կայարանը, ինչպես մատնանշված է «Հայաստանի գլխավոր ճանապարհները» իմ աշխատության մեջ*[1], *այժմյան Կիլդիզն է* (*CYΔΔIZA = CYMIZA), *վորը գտնվում եր Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհագծում և Տիգրանակերտ-Ֆարկինից ճիշտ և ճիշտ 50 հռոմեական մղոն կամ մոտ 75 կիլոմետր հեռավորության վրա, ինչպես այդ ցույց է տրված Պևտինգերյան քարտեզում։*

*Տիգրանակերտ քաղաքի համար տեղի այդ ընտրությունը կարելի յե համարել աջող ու նպատակահարմար վոչ միայն քաղաքական, այլ նաև ստրատեգիական ու տնտեսական տեսակետներից։ Ցեվ իրավի, այժմյան Ֆարկինը ընկնում է Տիգրանի հիմնած աշխարհակալության ճիշտ մեջտեղում և, գտնվելով Տավ-*

---

[1] *Տես եջ 90—92։*

րույան լեռների հարավային ստորոտներում՝ բավականաչափ պաշտպանված ե և պատսպարված։ Նաև առևտրական հաղորդակցությունների տեսակետից Տիգրանակերտի տեղադրությունը խիստ հարմար եր, որովհետև նա գտնվում եր Աքեմենյան Պարսկաստանի արքունական մեծ ճանապարհի մոտ և զանազան ուղղություններով կապված եր առևտրական խոշոր կենտրոնների հետ։

Նոր հիմնած այս քաղաքը, ըստ յերևույթին, կենտրոն եր դառնալու ոչ միայն միջազգային առևտրի, արհեստների ու արդյունագործության, այլև հելլենիստական գիտության, արվեստի ու գրականության։ Հայաստան եր հրավիրված, ինչպես վկայում ե Պլուտարքոսը[1], Աթենքից աքսորված նշանավոր հռետոր Ամփիկրատեսը, որը արհամարանքով մերժել եր Սելևկյանների հրավերը և ապրում եր Տիգրանի արքունիքում։ Մետրոդորոս Սկեպսացին[2], որը հայտնի գրող եր և փիլիսոփա և որին Պլինիոսն անվանում ե «ատող հռոմայեցիների» (Misoromaeus)[3], քաղաքական ականավոր գործիչ եր նախ Պոնտոսում և ապա Հայաստանում։ Մետրոդորոսը, ինչպես հայտնի յե, գրած ե յեղել Տիգրան Բ-ի ընդարձակ պատմությունը, որից, դժբախտաբար, որևե հետք չի մնացել։ Տիգրանակերտում, ինչպես հաղորդում ե Պլուտարքոսը[4], կառուցված ե յեղել առանձին թատրոն, որի համար զանազան տեղերից հրավիրված են յեղել հույն դերասաններ։ Պլուտարքոսի ուշագրավ մի վկայությունից հայտնի յե, բացի այդ, որ Տիգրանի որդին Արտավազդը գրած ե յեղել հունարեն լեզվով ողբերգություններ, ճառեր և պատմական յերկեր, որոնցից մի քանիսը ծանոթ են յեղել հռոմայեցիներին մինչևիսկ Պլուտարքոսի ժամանակ[5]։

Հատուկ ուշադրության արժանի յե նաև այն, որ Հայաստանում ևս, ինչպես և Պոնտոսում ու հելլենիստական այլ յերկրներում, հելլենիզմի ազդեցությամբ տեղի յեր ունեցել կրոնների մերձեցում և հայ հեթանոսական աստվածները միաձուլվել եյին հունականների հետ։ Արամազդը համապատասխան եր համարվել Զևսին, Միհրը՝ Հեփեստոսին, Անահիտը՝ Արտեմիդեյին,

---

1 Տես Լուկուլ., 22, 7։

2 Տես Պլուտ., Լուկ., 22, 3—6, Ստրաբոն, XIII, 1, 55 և Ապոլ. Հռոմ. IV, 133։

3 Nat. Hist., XXXIV, 16, 2:

4 Լուկուլ., 29, 4։

Տես Պլուտ., Կրասսոս, 33, 1։



*Ծարկին—հյուսիսային պարիսպի ավերակները։*

*Նանեան՝ Աթենասին, Աստղիկը՝ Աֆրոդիտեյին, Տիրը՝ Ապոլոնին և Վահագնը՝ Հերակլեսին։ Կրոնական այս ազդեցությունն այնքան զորեղ էր, որ Տիգրան Երկրորդի ժամանակ, ինչպես վերև տեսանք, հայկական մեհյաններում էին զետեղել Հունաստանից և Փոքր Ասիայից բերված հունական աստվածների արձանները։*

*Բոլոր այս փաստական տեղեկություններից, որ վերաբերվում են Տիգրան Բ-ի վերանորոգչական գործունեությանը՝ կարելի յե հետևցնել, որ ոչ միայն Կապպադովկիայում և Պոնտոսում, այլև սրանց հարևան Հայաստանում հակադիր հոսանք էր սկսվել ընդդեմ տիրող իրանիզմի և հիմք էր դրվել հին կենցաղի հելլենականացման։*

*Նույն այս փաստերը ցույց են տալիս, որ դժվար է համաձայնել Մոմզենի հետ, որը ինչպես հայ-հռոմեական, նույնպես և Միհրդատյան կռիվները, բնորոշում է իբրև հետադիմական մի շարժում արևմտյան ժողովրդների դեմ։ Առավել ևս սխալ է, անշուշտ, նրա պնդումը, որ իբր թե Միհրդատը յեղել է ասիական այդ ռեակցիայի առաջնորդն ընդդեմ հելլենիզմի*[1]*։*

*Տիգրան Բ-ի թագավորության ժամանակը բացառիկ մի շրջան էր Հին Հայաստանի քաղաքական հզորացման և կուլտուրական ու տնտեսական ներքին զարգացման։ Ուստի և հասկանալի յե, որ վերոհիշյալ պատմական անցքերը նյութ էին դառել անգիր բանահյուսության, պատմվել ու յերգվել էին Հին Հայաս-*

[1] *Տես* „Римская история“ II, Москва 1887, *էջ 273—275*։

տանում և նրանց հիշողությունները պահպանվել էին յերկար դարերի ընթացքում։

Տիգրան Բ-ի մասին նույնիսկ Խորենացու ժամանակ գոյություն են ունեցել վորոշ ավանդություններ և բանաստեղծական առանձին մի գրվածք («Զորս հագներգութիւնք»)[1], վորի հեղինակն ոգտված է յեղել, հավանորեն, պատմական հին յերգերից և ավանդություններից։ Բայց Խորենացին այս աղբյուրների մեջ հիշատակված Տիգրանին, վորը, անտարակույս, Արտաշեսյան տոհմի Տիգրան Բ-ն է, համաձայն իր սխալ ժամանակագրության համարել է դաշնակից պարսից Կյուրոս թագավորի։

Ինչպես ցույց է տվել Մ. Աբեղյանը[2], Տիգրանի մասին այն ընդարձակ հիշողությունները, վոր բերված են Խորենացու պատմության առաջին գրքի ԻԴ—ԼԱ գլուխներում, մեծ մասամբ, պատմական են և համապատասխանում են ոտար աղբյուրների հաղորդած տեղեկություններին։

Յեվ իրավի, վոչ միայն Մարաց տերության նվաճումը, այլև ներքև մեջ բերված վկայությունները վերաբերվում են պարզապես Տիգրան Բ-ին կամ Մեծին։

1. Խորենացի, I, գլ. ԻԴ, եջ 71 (Տփղիս 1913)՝

«Բայց անցցուք այսուհետև որ ինչ յաղագս Տիգրանայ և որ ի նմանէ գործք։ Քանզի սա ամենեցունց թագաւորացն մերոց հզօրագոյն և խոհեմագոյն, և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ։ Որ և... զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւնն, և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրեաւ նուաճեալ հնազանդէր։ Եւ զսահմանս մերոյ բնակութեանս ընդարձակեալ՝ ի հինսն մեր հասուցանէր յեզերս ծայրից բնակութեան, և ամենեցունց որ առ իւրովքն էին ժամանակօք՝ նախանձելի, և ղկնոջս ըղձալի ինքն և ժամանակ իւր»։

2. Խորենացի, I, գլ. ԻԴ, եջ 72՝

«Արանց կացեալ գլուխ և արութիւն ցուցեալ՝ զազգս մեր բարձրացոյց, և զընդ լծով կացեալս՝ լծաղիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէս պէս գունից և

1 Տես Խորենացի, I, գլ. ԻԱ և ԻԴ։

2 Տես «Հայ ժողովրդական առասպելները», Վաղարշապատ 1901, եջ 448—474, համեմատե նաև Հ. Գելցեր, «Համառօտ պատմութիւն Հայոց», թարգմ. Գալեմքյարյանի, Վիեննա 1897, եջ 8—9։



Ֆարկին—արևելյան պարիսպի ավերակները։

անկուածոց՝ արանց միանգամայն և կանանց՝ հասարակաց բազմացոյց. որովք տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք։ Հետևակամարտքն ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն առ հասարակ դիպազեղունք, և չերտաւորքն ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք. մերկքն վահանօք և զգեստուք երկաթեօք պարածածկեալք։ Որոց ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն, և որ ի նոցայն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք՝ զԹշնամիսն արտահալածել։ Խաղաղութեան և շինութեան բերող, իւղով և մեղու զամենայն հասակ պարարեալս։



*Արշակունի հայ թագավորի հունարեն արձանագրությունը*
**(Ծարկինի հյուսիսային պարիսպի վրա):**

3. Խորենացի, I, գլ. Լ, էջ 82—83՝

«Պատմի և այս, թէ զկնի այսպիսի իրաց կատարման՝ յուղարկէ թագաւորապէս գքոյր իւր Տիգրանուհի մեծաւ ամբոխիւ ի Հայս, յաւանն՝ զոր շինեաց յիւր անունն Տիգրան, որ է Տիգրանակերտ»։

4. Խորենացի, III, ԻԸ, էջ 290՝

«Եւ նգախարխար արարեալ զայն [զպարիսպն Տիգրանակերտի], որ ի հայկազնոյն Տիգրանայ հոծեալ և յարմարեալ որմունքն, քակեալ ընկեցին»։

Այս վկայություններից առաջինում ճշտությամբ արտահայտված ու պահված է Տիգրան Բ-ի կարճատև տիրապետությունը Սելևկյան թագավորության հույների վրա[1]։ Երկրորդ վկայության մեջ, որն առանձնապես կարևոր է ու հետաքրքիր, մատնացույց է արված հայկական զորաբանակի վերակազմությունը և նկարագրված են նաև Հայաստանի լիառատ ու բարեկեցիկ վիճակը և այն մեծ հարստությունները, որ կային յերկրում Տիգրանի ժամանակ։ Երրորդ և չորրորդ վկայությունները ևս միանգամայն ստույգ են և պատմական և վերաբերվում են Տիգրանակերտի շինությանն Աղձնիքում։

Վերոհիշյալ յերկրորդ վկայության մեջ, ինչպես մատնանշել եյինք ռուսերեն մեր աշխատության մեջ[2]՝ «իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ» արտահայտությունը հռետորական մի չափազանցություն է, որը ճիշտ կարող է լինել, գլխավորապես, իշխող դասերի նկատմամբ։ Միանգամայն սակայն հնարավոր է և հավանական, որ հարստացած ու փարթամացած այս դասերի զորեղացման և սրանց իշխանության ու արտոնությունների ընդարձակման հետ միասին կարող եր ծանրացած լինել իրավական դրությունը շինական դասի։

Որ Խորենացու մոտ պատմական են ու արժանահավատ նաև վերոհիշյալ հիշողությունները Հայաստանում կիտված դրամական ու այլ հարստությունների մասին՝ այդ հաստատում են, ինչպես կտեսնենք ներքև, Պլուտարքոսի վկայությունները հսկայական այն գումարների մասին, որ տարել եյին Հայաստանից Լուկուլլոսը և Պոմպեյոսը։

[1] Տես Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 454։

[2] „О торговле и городах Армении“, էջ 65—66։

## 8. ՄԻՀՐԴԱՏՅԱՆ ՅԵՐՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՅԵՎ ՄԻՀՐԴԱՏԻ ՓԱԽՈՒՍՏԸ ՀԱՅԱՍՏԱՆ

*Միհրդատյան առաջին պատերազմից հետո Սուլլայի և Միհրդատի միջև կայացել էր միայն բանավոր համաձայնություն և Դարդանոսում կնքված դաշնագրությունն (84 թ. մեր թվ. առ.) ուներ ավելի շուտ ժամանակավոր զինադադարի բնույթ, քան հաստատուն ու տևական խաղաղության։*

*Թե որքան անկայուն էր բանավոր այս հաշտությունը՝ այդ նկատվեց դաշնագրությունից արդեն մեկ տարի հետո։*

*83 թվին հռոմեական Ասիայի կառավարիչ Մուրենան, անտես առնելով Դարդանոսի դաշինքը՝ ինքնագլուխ կերպով, առանց հռոմեական ժողովրդի ու ծերակույտի հավանության, վերսկսեց պատերազմը Միհրդատի դեմ։ Միհրդատյան այս յերկրորդ պատերազմը, վորը տևեց մոտ յերեք տարի (83—81 թ. մեր թվ. առ.), դադարեցվեց Սուլլայի հրամանով միայն այն ժամանակ, յերբ հռոմեական պարտված զորքերը հարկադրված եյին յետ նահանջել Պոնտոսից։*

*Այս յերկրորդ պատերազմից հետո՝ Միհրդատը, վորն անկեղծ կերպով կողմնակից էր խաղաղության՝ ուղարկեց Հռոմ հատուկ դեսպանություններ (79 և 78 թվ.) և խնդրեց, վոր Դարդանոսի դաշնագրությունը ձևակերպվի գրավոր կերպով և վավերացվի հռոմեական ծերակույտի կողմից։ Յեվ յերբ նրա այս դիմումները մնացին անհետևանք՝ նա համոզվեց, վոր կռիվն անխուսափելի կերպով վերսկսվելու յե հակառակ իր ցանկության։*

*Յեթե Միհրդատյան յերրորդ պատերազմը բռնկվեց այս բանակցություններից հինգ տարի հետո՝ դրա պատճառն այն էր, վոր Սուլլայի մահից հետո (78 թ. մեր թվ. առ.) Հռոմում կառավարության դեմ վոտքի յեր կանգնել դեմոկրատական կուսակցությունը և Իսպանիայում վտանգավոր ընթացք եյին ընդունել վտարանդի դեմոկրատների կռիվները Սերտորիուսի հանճարեղ ղեկավարությամբ։*

*Հինգ տարվա այս հանգիստը Միհրդատը մեծապես օգտագործեց և ամենայեռանդուն կերպով նախապատրաստվեց պատերազմի, որն անխուսափելի էր։ Նախորդ կռիվների ժամանակ նա արդեն համոզվել էր, որ փոքր, բայց մարզված և ուժեղ զորքն ավելի կարևոր նշանակություն ունի, քան արևելյան մեծ զորաբանակները, որոնք՝ չնայած իրենց թվական գերակշռությանը՝ չեն կարող դիմադրել ու կռվել հռոմեական վարժված զորքի հետ։ Նա աշխատում էր այժմ զինել, մարզել և կազմակերպել իր բանակը հռոմեական զորքի նմանությամբ և այդ բանում նրան օգնում էին իտալացի վտարանդիները, որոնք ապաստան էին գտել նրա մոտ քաղաքացիական կռիվների ընթացքում։ Նրա նոր զորքը, թեև թվով այնքան շատ չէր ինչպես առաջին պատերազմի ժամանակ, սակայն իր որակով յետ չէր մնում հռոմեական լեգեոնական զորքերից։*

*Ապպիանոսը վկայում է, որ Միհրդատը, բացի այդ, հրամայել էր պատրաստել մեծ քանակությամբ նավեր ու զենքեր և մթերել էր տվել զորքի պարենավորման համար յերկու միլիոն մեդիմն ցորեն (= մոտ 5 միլիոն փութ)։*

*«Միհրդատի պատերազմակիցներն էին,— ասում է Ապպիանոսը,— բացի նախկին ուժերից խալյուբները, արմենները, սկյութները, տավրերը, հույները, հենիոքները, սպիտակ ասորիները և նրանք, որոնց յերկիրը գտնվում է Թերմոդոնդ գետի շրջանում և անվանվում է ամազոնուհիների յերկիր»[1]։*

*Ապպիանոսի այս վկայության մեջ արմենները, որ հիշատակված են խալյուբներից հետո՝ ակներևաբար Փոքր Հայքի արմեններն են, որոնք, ինչպես վերև տեսանք մասնակցել էին նաև Միհրդատյան առաջին պատերազմին։*

*Հետաքրքիր է առանձնապես և ուշագրավ, որ ինչպես Միհրդատյան առաջին պատերազմից, նույնպես և այս յերրորդ պատերազմից առաջ, Տիգրանը, ինչպես վերև մանրամասն հիշել էինք, նորից հարձակվել էր Կապպադովկիայի վրա[2] և Հայաստան էր գաղթեցրել Մաժաք ու այլ քաղաքների բնակչությունը։ Այս հարձակումը, որը տեղի յեր ունեցել ընդհանուր թշնամու Արիոբարզան Ա-ի դեմ, ըստ յերևույթին, Միհրդատի խըն-*

---

*[1] Տես Ապպ., Միհրդատականք, 69։*

*[2] Ըստ Ռեյնաքի 77 թվին մեր թվ. առ., տես* Mithridate Eupator, *էջ 313*

դիրքով՝ պետք է, հավանորեն, ապահովեր այս վերջինի թիկունքը Կապպադովկիայի կողմից։ Հռոմի դաշնակից այս թագավորության յերկիրը, ինչպես վերև ասացինք, Նրա համար ռազմական նշանակություն ունեցող կարևոր մի միջանցք եր և պատերազմի ժամանակ վտանգավոր եր թե Պոնտոսի և թե Հայաստանի համար։

Մենք վերև նույնպես տեսանք, վոր հայ-պոնտական դաշինքը վերաբերվել է վոչ թե հռոմեա-պոնտական պատերազմներին, այլ Կապպադովկիային։ Թեև պատմագիտական յերկերում գերիշխում է այն կարծիքը, վոր իբր թե Տիգրանը պարտավորվել եր ըստ այդ դաշինքի պատերազմել Միհրդատի հետ հռոմայեցիների դեմ և վոր նա հռոմեա-պոնտական յերրորդ պատերազմում լքել եր Միհրդատին և խախտել իր կնքած դաշինքը՝ սակայն այս պնդումները միանգամայն անհավանական են և չեն հաստատվում սկզբնաղբյուրների ուշադիր ու քննական ուսումնասիրությամբ։

Միհրդատի դաշնակիցը յեղել է յերրորդ պատերազմում վոչ թե Տիգրանը, վորի նոր հիմնած մեծ պետությունն ապահովված չեր պարթևական հարձակումների վտանգից, այլ հռոմեական դեմոկրատիայի առաջնորդ Սերտորիուսը, վորը հավաքել ու կազմակերպել եր Իսպանիայում Հռոմի պահպանողական կառավարության դեմ հզոր մի զորաբանակ։ Միհրդատը շատ լավ հասկանում եր, վոր վիթխարի ու զորեղ Հռոմը գրեթե անպարտելի յե։ Նա վորոշել եր չկռվել այժմ յերկու հռոմեական կուսակցությունների հետ միաժամանակ, ինչպես նա այդ արել եր առաջին պատերազմի ընթացքում։ Նրա գլխավոր հույսն այժմ այն եր, վոր նա կըկարողանա փրկել մոտալուտ վտանգից իր յերկիրը, դաշնակցելով ու համաձայնության գալով դեմոկրատական կուսակցության հետ ընդդեմ իշխող կառավարության։

Միհրդատին աջողվեց համաձայնության գալ Սերտորիուսի հետ, ուղարկելով Նրա մոտ Իսպանիա Պոնտոս փախած Լուցիուս Փաննիուս և Լուցիուս Մագիուս հռոմայեցի սպաներին, վորոնք Սուլլայի ու Նրա կողմնակիցների կատաղի հակառակորդներն եյին։ Դաշինքը Նրա հետ կնքվեց հետևյալ պայմաններով՝ պրովինցիա Ասիան մնալու յեր հռոմայեցիների իշխանության ներքո, իսկ Բիթանիան, Պափլագոնիան և Կապպադովկիան, վորոնք միջակա կռվախնձոր եյին Հռոմի և Պոնտոսի միջև և վորոնք Պոնտոսի համար ունեյին կենսական նշանակություն՝ ստանալու յեր Միհրդատը։ Այս վերջինն ուղարկեց Սերտորիուսին Իսպանիա 40 նավ և 3000 տաղանդ դրամական նպաստ։

*Միհրդատյան յերրորդ պատերազմի առիթ եր ծառայել Բիթանիայի միացման խնդիրը Հռոմին։ 74 թվի[1] վերջերում վախճանվել եր Բիթանիայի Նիկոմեդես թագավորը և իր թագավորությունն ու հարստությունները կտակել եր Հռոմին։ Բիթանիան, վորն արդեն վաղուց հետե շահագործում ու հարստահարում եյին հռոմեական կապալառուներն ու վաշխառուները, ուներ արգավանդ հողեր, ձկնորսարաններ, հանքատեղեր, հարուստ քաղաքներ, նավահանգիստներ ու շահութաբեր մաքսատներ։ Բնական ե, վոր այդ հարստությունները ձեռքից բաց չեյին թողնելու շահագրգռված իտալական դրամատերերը։ Թեև Բիթանիայի գրավումը խախտում եր Դարդանոսի դաշնադրությամբ հաստատված քաղաքական հավասարակշռությունը և համազոր եր պատերազմի հայտարարության Միհրդատին՝ նրանք ամեն ջանք գործ դրին և աջողեցրին այդ գրավումը ծերակույտի վորոշմամբ։*

*Հռոմը, հաստատելով այժմ իր տիրապետությունը Բիթանիայում՝ վոչ միայն դառնում եր Պոնտոսի անմիջական հարևանը, այլ և տեր ու տնորենն եր դառնում սևծովյան նեղուցների։ Այնուհետև նա, յերբ ուզենար՝ կարող եր փակել նեղուցները և քայքայել Պոնտոսի ու Բոսփորի առևտրական մեծ քաղաքների տնտեսական բարեկեցությունը։*

*73 թվի գարնանը, յերբ հռոմայեցիները չունեյին դեռևս Փոքր Ասիայում բավականաչափ զորք՝ պոնտական զորքերը հանկարծակի շարժվեցին, առանց պատերազմ հայտարարելու, դեպի Կապպադովկիա և դեպի Բիթանիա, իսկ նավերը՝ Բիթանիայի ափերով դեպի նեղուցները։ Կապպադովկիա ուղարկված զորաբանակը, ըստ յերևույթին, պետք ե պաշտպաներ Պոնտոսի թիկունքը հարավից՝ հռոմեական Կիլիկիայի կողմից։ Իսկ յերկրորդը, գլխավոր ու գործող բանակը, իրեն նպատակ եր դրել գրավել Բիթանիան և տիրապետել նեղուցներին։*

*Մեծ այս յերկրորդ զորաբանակն ամենակարճ ժամանակում անցավ Պափլագոնիայի և Գալատիայի միջով և մտավ անակընկալ կերպով Բիթանիա, փախուստի մատնելով հռոմեական ֆի-*

---

1 *Միհրդատյան յերրորդ պատերազմի ժամանակագրության վերաբերյալ վիճելի հարցերը քննության են առնված Ֆեռերոյի պատմության առաջին հատորի վերջում, տես* „Величие и падение Рима", I, *եջ 338—343։ Սակայն ըստ իս ավելի հավանական են ժամանակագրական դիտողություններն ու ճըշտումները Ռեյնաքի ուսումնասիրության մեջ, տես* Mithridate Eupator, *եջ 321 ծան. և այլն։*

նանախատներին ու պաշտոնյաներին, վորոնք ատելի եյին դառել տեղական բնակչությանը։ Հռոմեական զորքերն ու նրանց զորավարը, պրոկոնսուլ Կոտտան, վորոնք գտնվում եյին Բիթանիայում, ամրացան Բոսփորի ափի մոտ Քաղկեդոն քաղաքում։ Իսկ Հռոմեական մյուս զորավարը, պրոկոնսուլ Լուկուլլոսը, վորին Կոտտայի հետ միասին հանձնարարված եր պատերազմի վարումը և վորն այդ ժամանակ գտնվում եր իր զորաբանակով Փրյուգիայում՝ շտապեց ոգնության հասնել իր ընկերոջ։

Սակայն Կոտտան չուզեց հաղթության պատիվը բաժանել Լուկուլլոսի հետ։ Ցեվ նա, հենվելով միայն իր զորքի վրա՝ ընդունեց մարտը Քաղկեդոնի պարիսպների մոտ և Բոսփորի նեղուցում։ Այս կռվում հռոմեական զորքը ծանր պարտություն կրեց ցամաքի և ծովի վրա։ Հռոմը կորցրեց այստեղ իր ռազմածովային նավատորմը, վոր բաղկացած եր ավելի քան վաթսուն նավերից։ Նա չուներ այնուհետև Պրոպոնտիսում և վոչ մի նավ։ Միհրդատի նավերն ազատ կարող եյին անցնել նեղուցներով Պրոպոնտիս և այստեղից Եգեյան ծով։ Հաղթական ճակատամարտն ունեցավ նաև այն հետևանքը, վոր ամբողջ Բիթանիան անձնատուր յեղավ Միհրդատին։

Նույնպիսի արագությամբ պոնտական մյուս բանակը ևս, հավանորեն, գրաված ե յեղել Կապպադովկիան։ Մնում եր, ուրեմն, նվաճել նաև պրովինցիա Ասիան և այնտեղ հաստատել, համաձայն Սերտորիուսի հետ կնքված դաշինքի, հռոմեական դեմոկրատների իշխանությունը։

Քաղկեդոնի մոտ հաղթություն տանելուց հետո՝ թվում եր, վոր այդ ևս ունի աջողության վորոշ հավանականություն։ Այս յերրորդ պատերազմի ժամանակ պոնտական զորքերը մտնում եյին հռոմեական պրովինցիան վոչ թե նվաճողական նպատակներով, ինչպես առաջին պատերազմում, այլ իբրև Սերտորիուսի դաշնակիցներ։ Նրանց ուղեկցում եր Մարկուս Մարիուս զորավարը, վորը նշանակված եր պրովինցիա Ասիայի կառավարիչ և պրոկոնսուլ։

Ինչպես և առաջին պատերազմի ժամանակ՝ Միհրդատն այս անգամ ևս աշխատեց հռոմեական Փոքր Ասիայում առաջ բերել դասակարգային կռիվ և վոտքի հանել ժողովրդի ճնշված ու կեղեքված ստորին խավերն ընդդեմ Սուլլայի հաստատած դաժան կառավարության։ Նա ուղարկում եր այդ նպատակով զանազան ուղղությամբ հեծելազորի թռուցիկ ջոկատներ, վորոնք,

իրապես, ապստամբություն առաջ բերին Փոքր Ասիայի հարավում՝ հռոմեական Կիլիկիայում, Իսավրիայում և Պիսիդիայում։ Որոշ հաջողություն ունեցավ նաև պրոկոնսուլ Մարկուս Մարիուսը պրովինցիա Ասիայի հյուսիս-արևմտյան շրջաններում։ Այստեղ մի շարք քաղաքներ, օրինակ՝ Լամփսակոսը, Պարիումը, Պրիապուսը և ուրիշները նրան անձնատուր յեղան։ Մարկուս Մարիուսը, մտնելով այս քաղաքները՝ ազատություն էր շնորհում նրանց Սերտորիուսի անունից և զեղջում պարտքերի որոշ մասը։

Պետք է սակայն ասել, որ հեղափոխությունն այս անգամ չտարածվեց նույն արագությամբ, ինչպես առաջին պատերազմի ժամանակ։ Բնակչության բարձր ու հարուստ խավերն ամեն կերպ աշխատեցին խոչընդոտել ու կանխել ապստամբությունը։ Եվ որովհետև այս խավերն ուժեղ ու ազդեցիկ էին խոշոր քաղաքներում, ուստի և մեծ քաղաքներից գրեթե և ոչ մեկը չհարեց ապստամբությանը։ Լուկուլլոսի զորաբանակի համար, որը Կոտտայի պարտությունից հետո մեն մենակ պետք է պաշտպաներ հռոմեական Ասիան՝ սրանց հավատարմությունը և օգնությունն ուներ, իհարկե, մեծ նշանակություն։

Քաղկեդոնի մոտ տեղի ունեցած մեծ ճակատամարտից հետո՝ Միհրդատի զորքերը, շարժվելով դեպի հարավ՝ մտան պրովինցիա Ասիա, գրավեցին այստեղ Լամփսակոս քաղաքը և տեղավորվեցին Պրոպոնտիսի և Հելլեսպոնտի յերկարությամբ։ Լուկուլլոսը, որ մոտից հետևում էր Միհրդատի զորքերի տեղաշարժումներին՝ որոշեց խուսափել վճռական ընդհարումից։ Նա գիտեր, որ թըշնամու զորքերը իրենց որակով յետ չեն մնում հռոմեականից և թվով ավելի շատ են, քան իր զորքը։ Եվ որովհետև Միհրդատի բանակի ամենաթույլ կողմը պարենի մատակարարման դժվարություններն էին, ուստի և նա, վտանգավոր համարելով կռիվը բաց ճակատամարտում՝ որոշեց խանգարել ու կասեցնել պարենի հայթայթումը նրա բանակին։

Եվ նրան այդ իսկապես աջողվեց։ Միհրդատի բանակի պարենավորումը խիստ դժվարացավ ցամաքով, իսկ ծովով՝ Լամփսակոսի վրայով ստացվող սննդամթերքը չէր բավարարում զորքի պահանջները։ Պարենավորման դժվարացման պատճառով Միհրդատը պետք է կամ յետ քաշվեր սևծովյան իր նավահանգիստները և կամ գրավեր Պրոպոնտիսում նաև մի ուրիշ ավելի մեծ նավահանգիստ, ուր կարելի լիներ բեռնաթափել Պոնտոսից բերվող պարենամթերքը։

Հպարտ ու համարձակ թագավորը, փոխանակ յետ նահանջելու՝ վորոշեց պաշարել ու գրավել Կիզիկոս քաղաքը, վորն ամենամեծ նավահանգիստն եր և ամենաուժեղ ամրությունն այժմյան Մարմար ծովի ափին։ Սակայն այստեղ Կիզիկոսի առջև սկսեց բախտը դավաճանել նրան։ Կիզիկոսի պաշարման հենց սկզբում սոսկալի փոթորիկի պատճառով խիստ վնասվեցին Միհրդատի պատերազմական մեքենաները և զորքի հետ միասին ջրասույզ յեղան քաղաքը պաշարող նրա նավերը։ Բացի այդ, փոթորիկների պատճառով սկսեց ընդհատվել պարենի փոխադրումը ծովով և պաշարող զորքերը հետզհետե ուժասպառ յեղան սովից ու հիվանդություններից։ Վերջ ի վերջո, պոնտական հյուծված զորաբանակը հարկադրված յեղավ յետ նահանջել դեպի Լամփսակոս և Բիթանիա։ Յեվ այդ նահանջի ժամանակ նա դարձյալ մեծ կորուստներ կրեց Լուկուլլոսի հետապնդող լեգեոններից։

72 թվի գարնանը Միհրդատն իր մեծ զորքի մնացորդների հետ կարողացավ պատսպարվել Լամփսակոս և Պարիում քաղաքներում։ Բայց այնուհետև ես չար ճակատագիրը դարձյալ ուղեկցում եր նրան։ Պոնտական հարյուրավոր նավեր նորից խորտակվեցին փոթորիկի պատճառով Կիզիկոս և Պարիում քաղաքների մոտ։ Չնայած դրան Միհրդատը դեռ ելի մոտ վեց ամիս շարունակեց պատերազմը ծովի վրա։ Յեվ միայն իր նավատորմի վերջնական պարտությունից հետո նա ստիպված յեղավ յետ քաշվել Պոնտոս։

Բայց նրա ռազմական ուժերի համար աղետալի ու կործանաբեր յեղավ նաև այս վերջին նահանջը։ Բոսփորից դուրս գալուց հետո նորից փոթորիկի զոհ դառան նրա ավելի քան վաթսուն նավերը և մոտ տասը հազար զորքը։ Յեվ նա հազիվհազ կարողացավ վերադառնալ իր յերկիրը գրեթե մեն մենակ։

Կռվի բեմը դառավ այնուհետև Միհրդատի բուն յերկիրը, Պոնտոսը, վորն այժմ գրեթե անպաշտպան եր։

72-թվի յերկրորդ կեսին Լուկուլլոսը ներս մտավ Պոնտոսի արևմտյան մասերը և թույլ տվեց իր զինվորներին ավերել ու կողոպտել հարուստ ու բարեկից այս շրջանները։ Պլուտարքոսի վկայությամբ[1] պատերազմական ավարն այնքան շատ եր այնտեղ, վոր հռոմեական բանակում մեկ յեզն արժեր 1 դենար (= մոտ 35 կոպ. վոսկի փողով)[2], իսկ մեկ ստրուկը՝ 4 դենար (= մոտ 1 ռբ.

1 Լուկուլ., 14, 1։

2 Տես Hultsch, Griechische und römische Metrologie, Berlin 1882, եջ 711 (=0,702 Mark):

40 կով.)։ Այստեղից Լուկուլլոսի զորքերն առաջ շարժվեցին և պաշարեցին պոնտական յերկու նավահանգիստ՝ Ամիսոսը և Թեմիսկիրան։

Միհրդատը թողեց, վոր իր քաղաքները պաշտպանվեն իրենց սեփական ուժերով, իսկ ինքը սկսեց հավաքել նոր զորքեր և ամրանալով իր յերկրի լեռնային շրջաններում՝ աշխատեց նախապատրաստել նոր դիմադրություն։ Միևնույն ժամանակ նա ոգնություն խնդրեց իր վորդուց՝ Մաքարեսից, վորը Բոսփորի փոխարքան եր, նաև պարթևներից, սկյութներից ու Տիգրան Բ-ից։

Սակայն նրա նոր նախաձեռնությանն այլևս վոչ վոք հավատ չեր ընծայում պոնտական զորքերի ծանր անաջողություններից հետո։ Թշնամու կողմն եյին անցնում այժմ շատերը մինչև-իսկ Պոնտոսի մեծամեծներից։ Նրան դավաճանում եյին նույնիսկ սեփական իր դեսպանները։

Միհրդատի հարազատ վորդին Մաքարեսը վոչ միայն չոգնեց հորը, այլ ինքը հարմար առիթի յեր սպասում և հռոմայեցիների հետ ուզում եր կնքել անջատ հաշտություն։

Տիգրանի մոտ ուղարկված դեսպանության մասին Պլուտարքոսը պատմում ե հետևյալը։

«Մետրոդորոսը Միհրդատի կողմից,— ասում ե Պլուտարքոսը[1],— ուղարկված եր Տիգրանի մոտ իբրև դեսպան խնդրելու ոգնություն հռոմայեցիների դեմ։ Սրան հարցրել եր Տիգրանը՝ «իսկ դու ինքդ, ով Մետրոդորոս, ի՞նչ խորհուրդ կըտաս այդ մասին»։ Ցեվ նա՝ կամ Տիգրանին ոգտակար լինելու համար և կամ չցանկանալով՝ վոր Միհրդատը փրկվի՝ ասում ե՝— «իբրև դեսպան խորհուրդ եմ տալիս, իսկ իբրև խորհրդատու՝ խորհուրդ չեմ տալիս»։

Միհրդատի դիմումի մասին Տիգրանին ուշագրավ մի վկայություն ունի նաև Մեմնոնը։

«Միհրդատը... ուղարկեց,—վկայում ե Մեմնոնը[2],—դեսպաններ սկյութացոց թագավորների, պարթևաց թագավորի և յուր փեսայի՝ Տիգրան արմենի մոտ։ Սակայն առաջիններից նա ստացավ մերժում, իսկ Տիգրանը, վորին շարունակ անհանգստացնում եր ու աղերսալից խնդրում Միհրդատի դուստրը՝ վերջ ի վերջո խոստացավ ոգնել»։

---

1 Տես Լուկուլլոս, 22, 4։

2 Գլ. 43, Lipsiae 1816, եջ 64։

Տիգրանի այս խոստումը մնացել էր, ըստ յերևույթին, իբրև սոսկ խոստում։ Սկզբնաղբյուրների մեջ նրա իրական ոգնության ու աջակցության մասին վոչ միայն չկան վորևէ տեղեկություններ, այլ ընդհակառակը՝ կան ակնարկներ նրա չեզոքության մասին, վոր նրանք համարում են աններելի մի սխալ։ Ռեյնաքի կարծիքով, Տիգրանին են վերաբերվում, հավանորեն, Սալլուստիուսի հետևյալ խոսքերը՝

«Դու չգիտես, վոր յեթե վորևէ տներ կրակն ուժգնորեն հրդեհել է, այնքան էլ հեշտ չէ կանխել, վորպես զի չայրվեն նաև հարևան տները»։ [„non tu scis, si quas aedes ignis cepit acriter, haud facile sunt defensû quin et comburantur proximae“][1]:

Ինչպես յենթադրում է դարձյալ Ռեյնաքը, հենց այս տողերի ազդեցությամբ գրված է, հավանորեն, նաև Հորացիուսի հետևյալ տողը՝

«յերբ հարևան պատն այրվում է՝ վտանգը քեզ էլ է վերաբերվում» [„tua res agitur paries cum proximus ardet“][2]:

Պատմագիտական նորագույն յերկերում ևս Տիգրանի չեզոքությունը համարում են քաղաքական մեծ սխալ, վորովհետև այժմ վճռվում էր վոչ միայն Պոնտոսի, այլև Հայաստանի ու Առաջավոր Ասիայի բախտն ու ապագան։

Այս գնահատությունը, իհարկե, ուղիղ է, սակայն Տիգրանին դատապարտողները պետք է նկատի ունենան միևնույն ժամանակ նրա դժվար կացությունը։ Հանդես գալով հռոմայեցիների դեմ՝ նա հարկադրված պիտի լիներ պատերազմելու վոչ միայն նրանց, այլ նաև իր վոխերիմ թշնամիների՝ պարթևների հետ[3]։ Չպետք է նաև մոռանալ, վոր հռոմեական նենգ ու ճարպիկ դիվանագիտությունն աշխատել էր իր հերթին, ինչպես դժվար չէ կռահել Պլուտարքոսի վկայություններից[4], տպավորություն ստեղծել իր խաղաղ տրամադրության մասին Տիգրանի հանդեպ։

---

1 Տես Reinach, Mithridate Eupator, էջ 335, ծան. 1, նաև Sallustius, fr. III, 37:

2 Տես նույնը, էջ 335. ծան. 1։

3 Գուտշմիդը կարծում է նույնիսկ, վոր Տիգրանի վերջին կռիվը պարթևների դեմ շարունակվում էր նաև յոթանասնական թվականների սկզբներին՝ յերբ Միհրդատի դեսպանները յեկել էին ոգնություն խնդրելու նրանցից. տես Geschichte Irans, Tübingen 1888, էջ 82—83։

4 Պլուտ., Լուկուլլոս, 14, 4—7։

71 թվի գարնանը կռիվը Միհրդատի դեմ վերսկսվեց Պոնտոսի կենտրոնական շրջանում Կաբիրայի մոտ (այժմ Նիկսար կամ Նեոկեսարիա—Կելկիդ-Լիկոս գետի ափին)։ Միհրդատը կարճ ժամանակվա ընթացքում կարողացել էր հավաքել ու կազմակերպել այստեղ մի նոր զորաբանակ տեղացիներից ու սկյութական վարձկաններից։

Լուկուլլոսի առաջշարժումը դեպի Կաբիրա բավական ծանր էր ու վտանգավոր, վորովհետև նրա բանակի պարենավորմանը դժվարություններ ու արգելքներ էր հարուցանում Միհրդատի հեծելազորը, վորը խիստ ուժեղ էր և թվով ավելի շատ էր քան հռոմեական այրուձին։

Թեև Կաբիրայի մոտ սկզբում Միհրդատն ունեցավ վորոշ աջողություններ, սակայն շուտով նրան դավաճանեցին զորավարներից մի քանիսը, վորոնց կաշառել էր Լուկուլլոսը։ 71 թվի ամառը պոնտական զորքերը ծանր պարտություն կրեցին Կաբիրայի մոտ և Միհրդատը հազիվ կարողացավ փախչել փոքրաթիվ զորախմբով նախ Կոմանա, և ապա այստեղից Տալավրայի վրայով, վորի տեղադրությունը դեռևս բավարար կերպով լուսաբանված չե, յեկավ Հայաստան ու խնդրեց իր փեսայից տալ իրեն օգնություն և ապաստարան։

Հայաստանում նրան տրվեց, իրոք, ապաստարան. սակայն Տիգրանը, կամենալով չեզոքություն պահպանել՝ նրան չհրավիրեց իր մոտ արքունիք, այլ հրամայեց թագավորավայել պատիվներ մատուցանել աներոջը և պահել նրան իր պետության հեռավոր ու սահմանային յերկրներից մեկում[1]։

Պատմագետներից վոմանք, հավատ ընծայելով Պլուտարքոսի անհավաստի տեղեկություններին՝ մեղադրում են Տիգրանին, վոր նա չե ուզեցել հանդիպել ու մխիթարել իր դժբախտ ազգականին և վոր նա ուղարկել ե Միհրդատին վատառողջ ու ճահճային մի վայր[2]։ Նրանք աչքաթող են արել, վոր Պլուտարքոսի թե այս և թե այլ նման գունավորված տեղեկությունները, վորոնք չեն համապատասխանում մյուս աղբյուրների վկայություններին, հավանորեն, հնարովի հերյուրանքներ են և չունեն պատմական նշանակություն[3]։

---

[1] Տես Մեմնոն, գլ. 46 և Ապպիանոս, Միհրդատականք, գլ. 82։

[2] Տես Պլուտ., Լուկուլ., 22, 1։

[3] Պլուտարքոսի վերոհիշյալ անհավաստի վկայություններին հավատ են ընծայել Ռեյնաքը, Նյոհարդը և ուրիշները, տես Reinach, Mithridate Eupa-

Տիգրանի վարքագիծը պարտված ու իր մոտ փախած Միհրդատի հանդեպ ունեցել է, իրապես, քաղաքական դրդապատճառներ։ Տիգրանը ինչպես Միհրդատյան յերրորդ պատերազմի ընթացքում, նույնպես և Միհրդատի վերջնական պարտությունից հետո, աշխատել եր պարզապես խույս տալ պատերազմից, հույս ունենալով վոր չեզոքության պահպանմամբ նա կըկարողանա պահպանել նաև խաղաղությունը Հռոմի հետ։

Վոր այս սխալ ու կարճատես քաղաքական հաշիվ եր՝ այդ ցույց տվեց մոտ ապագան։

---

tor, **եջ 346,** E c k h a r d t, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, IX, 4, **եջ 402** *և ուրիշ.։*

## 9. ԼՈՒԿՈՒԼԼՈՍԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ Ե ՀԱՆՁՆԵԼ ԻՐԵՆ ՄԻՀՐԴԱՏԻՆ ՅԵՎ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ Ե ՊԱՏԵՐԱԶՄԻ

Միհրդատի վերջնական պարտությունից հետո հռոմեական զորքերը տարածվեցին Պոնտոսի կենտրոնական ու արևելյան շրջաններում և Փոքր Հայքում։ Ազնվականությունը և պաշտոնեությունը գրեթե ամեն տեղ անձնատուր յեղան հռոմայեցիներին և հանձնեցին նրանց յերկրի հարստությունները։ Շարունակում եյին սակայն կռվել ու համառ դիմադրություն եյին ցույց տալիս հելլենական մեծ քաղաքները։

71—70 թվ. ձմեռը Լուկուլլոսը անցկացրեց իր նոր նվաճած Կաբիրա քաղաքում Հայաստան փախած Միհրդատի պալատում։ Կաբիրայի մոտ տեղի ունեցած մեծ կռվից հետո, հավանորեն, 71 թվի վերջերին, նա ուղարկեց Տիգրանի մոտ իր կնոջ յեղբորը Ապպիոս Կլավդիոսին և պահանջեց, վոր Տիգրանը հռոմայեցիների ձեռքը հանձնե պոնտական թագավորին։

Այս դեսպանության մասին մանրամասն տեղեկություններ հաղորդում է Պլուտարքոսը Լուկուլլոսի կենսագրականում, վորի մեջ նա հերոսացրել ու փառաբանել է Լուկուլլոսին և աշխատել է նվաստացնել ու անվանարկել նրա հակառակորդներին։ Յեվրոպական և հայկական գրեթե բոլոր պատմական ու բանասիրական նոր յերկերում առանց ստուգման մեջ են բերված, գլխավորապես, հենց այդ կասկածելի տեղեկությունները։ Պատմագետները, դժբախտաբար, ուշադրության չեն առել, վոր Պլուտարքոսի խեղաթյուրումները հեշտությամբ յերևան են գալիս ուշադիր քննությամբ։

Պլուտարքոսի համապատասխան այդ վկայությունները, վոր կարոտ են վերաքննության, մեջ ենք բերում առանց կրճատումների։

1. Պլուտարքոս, Լուկուլլոս, 19, 2՝

«Յեվ նա [Լուկուլլոսը] նվաճեց խաղդայներին և տիբարեններին, գրավեց նաև Փոքր Հայքը և իրեն յենթար-

կեց ամրոցներն ու քաղաքները։ Այնուհետև նա ուղարկեց Ապպիոսին Տիգրանի մոտ պահանջելու Միհրդատի հանձնումը, իսկ ինքը գնաց Ամիսոս, վորի պաշարումը դեռևս շարունակվում եր»։

2. Նույնը, Լուկուլլոս, 21, 1—2՝

«Ապպիոս Կլավդիոսին, վորն ուղարկված եր Տիգրանի մոտ (Կլավդիոսը Լուկուլլոսի այն ժամանակվա կնոջ յեղբայրն եր)՝ ուղեկցում եյին սկզբում թագավորի առաջնորդները, վորոնք անտեղի կերպով նրան ման եյին ածում յերկրի վերին կողմերում ինչ վոր մանվածապատ զարտուղի ու յերկար ճանապարհներով։ Իսկ հետո, յերբ ստրկությունից ազատ արձակված մի մարդ, ազգով ասորի, ցույց տվեց նրան ուղիղ ճանապարհը՝ նա յետ դարձավ յերկար ու սըխալ այս ճանապարհից, արձակեց բարբարոս առաջնորդներին և մի քանի օրում անցավ Եփրատը և հասավ Անտիոք, վորն անվանվում ե Եպիդափնե։ Ապպիոսին հրաման տրվեց սպասել Տիգրանին, վորը բացակա յեր և նվաճում եր Փյունիկիայի մի քանի քաղաքները։ Այդ միջոցին Ապպիոսն իր կողմը գրավեց իշխանավորներից շատերին, վորոնք ներքուստ մեծ դժվարությամբ եյին հնազանդվել Տիգրան արմենին։ Սրանցից մեկն եր և Զարբիենոսը՝ Կորդվաց թագավորը։ Նաև Տիգրանի նվաճած քաղաքներից շատերին, վորոնք նրա մոտ ծածուկ սուրհանդակներ եյին ուղարկել՝ Ապպիոսը խոստացավ, վոր Լուկուլլոսը կօգնե նրանց, բայց հրամայեց, վոր այժմ դեռ հանգիստ մնան»։

3. Նույնը, Լուկուլլոս, 21, 7—9՝

«[Տիգրանին ներկայանալուց հետո] հենց վոր խոսքը տրվեց Ապպիոսին՝ նա ուղղակի ասաց, վոր յեկել ե Միհրդատին տանելու, վորը հարկավոր ե Լուկուլլոսի հաղթահանդեսի համար։ Հակառակ դեպքում՝ հայտարարում ե Տիգրանին պատերազմ։ Թեև Տիգրանը նրա խոսքերն աշխատում եր լսել ժպտերես ու կեղծ ծիծաղով, սակայն ներկա յեղողների համար աննկատելի չմնաց, վոր նրա դեմքը, յերիտասարդ Ապպիոսի համարձակ ճառը լսելիս, այլայլվեց։ Զի վոր նա միայն այժմ ազատ խոսք եր լսում քսանհինգ տարվա ընթացքում. հենց այդքան ժամանակ եր նա թագավորել կամ ավելի ճիշտ սանձարձակ կերպով մոլեգնել։ Այնուհետև նաև Տիգրանը պատասխանեց Ապպիոսին, վոր

նա մտադիր չե հանձնել Միհրդատին։ Իսկ յեթե հռոմայեցիները պատերազմ կսկսեն՝ ինքը կպաշտպանվի։ Տիգրանը բարկացած լինելով Լուկուլլոսի վրա, վոր սա իր գրության մեջ անվանել եր իրեն թագավոր և վոչ թագավորների թագավոր՝ ինքը ևս իր պատասխանի մեջ նրան չեր անվանել իմպերատոր։ Իսկ Ապպիոսին նա ուղարկեց փարթամ նվերներ, և վորովհետև սա չեր վերցնում՝ ավելացրեց ուրիշ նվերներ ևս։ Սակայն Ապպիոսը, վորպեսզի չկարծեն թե ինքը թշնամաբար ե մերժել՝ վերցրեց միայն մեկ գավաթ, իսկ մյուս նվերները յետ ուղարկեց ու շտապեց վերադառնալ Լուկուլլոսի մոտ։

Պլուտարքոսի այս վկայություններից, նախ և առաջ, անհավաստի յե ու հնարովի նրա հաղորդած հիմնական տեղեկությունը, վոր իբր թե Ապպիոս Կլավդիոսը, մերժում ստանալով Տիգրանից՝ նրան հայտարարել եր պատերազմ։ Այդ չե կարող ճիշտ լինել, վորովհետև հռոմեական ծերակույտը, ինչպես հայտնի յե, չեր լիազորել Լուկուլլոսին պատերազմ հայտնելու Տիգրանին։ Միանգամայն անհավանական ե, բացի այդ, վոր 71 թվի վերջերին Լուկուլլոսը պատերազմ հայտարարած լիներ Տիգրանին, վորովհետև նա դեռևս չեր նվաճել պոնտական խոշոր քաղաքները և չեր ապահովել իր թիկունքը։ Յեվ վերջապես, կարող եր միթե Լուկուլլոսն այնքան անհեռատես ու անզգույշ լինել, վոր հայկական իր արշավանքը սկսելուց մոտ մեկ ու կես տարի առաջ պատերազմ հայտարարեր Տիգրանին, ժամանակ տալով նրան ու հնարավորություն նախապատրաստելու ռազմական իր ուժերը պատերազմի համար։

Պլուտարքոսի վերոհիշյալ վկայության սխալ լինելն այնքան ակներև ե, վոր նրա այդ տեղեկությունն անտես ե արված ականավոր պատմագետների յերկերում, որինակ՝ Մոմզենի, Ռեյնաքի և ուրիշների ուսումնասիրություններում։ Այդ սխալը մեջ ե բերված սակայն Եքհարդի, Ասատուրյանի և Դոլենս-Խաչի աշխատություններում[1]։

Ապպիոս Կլավդիոսի ընդունելության մասին Անտիոքում ավելի վստահելի յեն, անտարակույս, Մեմնոն Հերակլեյացու հա-

[1] Տես K. Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, X, 1, եջ 74 և 75,—դոկտ. Հ. Յ. Ասատուրյան, «Քաղաքական վերաբերություններ ընդմեջ Հայաստանի և Հռովմայ», եջ 49 և Ն. Դոլենս և Ա. Խաչ, Պատմություն հին հայերի, պրակ Գ, Թիֆլիս 1910, եջ 43։

ղորդած տեղեկությունները, վորովհետև սա, պատկանելով փոքրասիական նույն հեղինակների խմբին՝ Հռոմի հակառակորդների նկատմամբ չունի այն միտումնավորությունն ու աչառու վերաբերմունքը, վոր հատուկ են հռոմեական պատմագիրներին։ Յեվ ուշագրավ ե, վոր պատերազմի հայտարարության մասին Մեմնոնը, ըստ յերևույթին, վոչինչ չգիտե։ Բայց նա հանգամանորեն մեջ ե բերում Տիգրանի պատասխանն Ապպիոսին, վորը միանգամայն հիմնավոր եր ու արդարացի, և հավանորեն, հենց այդ պատճառով չե հիշատակված Պլուտարքոսի ու հռոմեական պատմագիրների յերկերում։

> «Լուկուլլոսը, — վկայում ե Մեմնոնը[1], — ուղարկել եր Տիգրանի մոտ իբրև դեսպան Ապպիոս Կլավդիոսին և պահանջում եր իրեն հանձնել Միհրդատին։ Սակայն Տիգրանը չտվեց, ասելով վոր բոլոր մարդիկ իրեն կըպախարակեն, յեթե նա Լուկուլլոսի ձեռքը հանձնե իր կնոջ հորը։ Այլ թե ինչպիսի վատ մարդ ե Միհրդատը՝ այդ ինքն ել գիտե. սակայն խաղք ու խայտառակ կլինի իր ազգականության առջև։ Նա նաև նամակ ե գրում Լուկուլլոսին, վոր բովանդակում եր իր մեջ նրա ասած այդ խոսքերը»։

Ուշադիր քննության յենթարկելով Պլուտարքոսի նաև մյուս վկայությունները՝ դժվար չե նույնպես կռահել, վոր անհավանական ե նմանապես նրա այն տեղեկությունը, վոր իբր թե Տիգրանի ուղարկած առաջնորդները դիտավորյալ կերպով ման են ածել Ապպիոսին յերկար ու գարտուղի ճանապարհներով։ Իսկ, իրապես, Ապպիոսը հենց ինքն եր շահագրգռված այս բանում և ինքն եր, հավանորեն, ճարպիկ կերպով կազմակերպել իր շրջագայությունը լրտեսության հատուկ նպատակով։

Պլուտարքոսի վկայություններից կարելի յե վստահորեն հետևցնել, վոր Ապպիոսը գաղտնի հրահանգ եր ունեցել գրգռելու ու ապստամբեցնելու Տիգրանի դեմ Ասորիքի հունական քաղաքները և Տիգրանին հպատակված ոտար ժողովուրդները։ Պլուտարքոսն աշխատել ե, ըստ յերևույթին, քողարկել դեսպանի լրտեսական շրջագայությունը Հայաստանում և միանգամայն անաջող ու անմիտ կերպով բացատրում ե, վոր Ապպիոսին դիտավորյալ կերպով սխալ ճանապարհով եյին առաջնորդել Տիգրանի ուղարկած ուղեկիցները։

---

[1] Տես գլ. XLVI:

Ապպիոսը, ինչպես մատնանշում է վերոհիշյալ իր վկայության մեջ Պլուտարքոսը, աջողությամբ էր կատարել Լուկուլլոսի հանձնարարությունները։ Նա հռոմայեցիների կողմն էր գրավել, հավանորեն, իր շրջագայության ժամանակ, դժգոհ իշխաններից վոմանց, վորոնց թվումն էր Կորդվաց Զարբիենոս թագավորը։ Իսկ Ասորիքի մի քանի քաղաքներին, վորոնք խոստացել էյին ապստամբել Տիգրանի դեմ՝ նա խորհուրդ էր տվել սպասել մինչև Լուկուլլոսի գալը։

Ապպիոսի Հայաստան յեղած ժամանակ շարունակվում էր դեռ պոնտական մեծ քաղաքների՝ Ամիսոսի և Սինոպի պաշարումը, վորոնք կատաղի կերպով դիմադրում էյին և չէյին համաձայնում անձնատուր լինել հռոմայեցիներին։ Հելլենական քաղաքների այս հավատարմությունը և նվիրվածությունը Միհրդատին խիստ ուշագրավ ու պերճախոս մի փաստ է, վորը ցույց է տալիս, վոր Միհրդատը յեղել է, իրապես, պաշտպան ու հովանավոր հելլենիզմի և հելլենական քաղաքների։ Նրա հելլենասիրական ու առաջադիմական քաղաքականությունը և նրա հելլենական քաղաքային կուլտուրայի տարածման ջանքերը, վոր վերև մանրամասն մատնանշել էյինք, չէյին կարող, իհարկե, հաճելի լինել Պոնտոսի կալվածատեր պահպանողական ազնվականությանը։ Յեվ, ըստ յերևույթին, հենց այդ է պատճառը, վոր Միհրդատին հաճախ դավաճանում էր, գլխավորապես, ազնվականությունը, վորը առանց վորևէ լուրջ դիմադրության հանձնել էր հռոմայեցիներին յերկրի ամրությունները և հարստությունները։

70 թվի գարնանը հռոմայեցիները յերկար պաշարումից հետո կարողացան գրավել Հերակլեան և Սինոպը, իսկ 70 թվի աշնանը՝ նաև Ամիսոսը։ Այս քաղաքների անկումից հետո՝ Հռոմը տեր էր դառնում ամբողջ Պոնտոսի և պատերազմը Միհրդատի հետ կարելի յեր համարել վերջացած։

Նվաճված յերկիրը, մանավանդ, նրա հելլենական հարուստ ու շքեղ քաղաքները մատնվեցին անխնա կողոպուտի։ Հռոմեական զորքերը հրդեհեցին ու իսպառ ավերեցին փարթամ ու հոյակապ Հերակլեա քաղաքը և հռչակավոր ու գեղեցիկ Ամիսոսը, վորը համարվում էր Պոնտոսի Աթենքը։ Յեվ բնորոշ ու հատկանշական է, վոր պատմագիտական մեծահռչակ մի քանի յերկերի մեջ զորավար Լուկուլլոսը, հռոմայեցի ամենախոշոր ավարառուն ու կողոպտիչը, վորը քանդել ու հիմնովին կործանել էր հելլենիստական մեծ ու ճոխ կուլտուրան Պոնտոսում՝ համարվում ու անվանվում է պաշտ-

դյան հելլենական քաղաքակրթության և «հելլենիզմի ջերմ երկրպագու»[1]։

Քաղաքները նվաճելուց հետո՝ Լուկուլլոսը նույն այս 70 թվին վերադարձել էր Պոնտոսից պրովինցիա Ասիա։ Յեվ խիստ ուշագրավ է ու հետաքրքիր, վոր նա Հայաստան արշավելուց առաջ անհրաժեշտ էր համարել թեթևացնել հռոմեական Ասիայի տնտեսական հուսահատական դրությունը։

Այս նահանգն առաջին Միհրդատյան պատերազմից հետո (88—84 թվ.), ինչպես վերև տեսանք, վճարելու էր ի պատիժ իր անհավատարմության, բացի հինգ տարվա հարկերից, նաև քսան հազար տաղանդ ռազմատուգանք։ Նա այժմ կատարելապես սնանկացել ու արյունաքամ էր եղել, վճարելով հսկայական իր պարտքի վաշխառուական տոկոսները։ Հռոմեական ֆինանսիստները, վորոնք դրամական փոխառություն էին տվել աղքատացած այս երկրին՝ իրենց ստանալիք տոկոսների դիմաց բռնագրավում էին այստեղ տները, վարելահողերը, այգիները, հասարակային շենքերը, հափշտակում ու Իտալիա էին տանում արվեստի իրերը, արձանները, պատկերները, տնակահույքը, վոսկեղենն ու արծաթեղենը, և վերցնում էին, բացի այդ, նաև պարտապանների երեխաներին կամ հենց իրենց պարտապաններին ու վորպես ստրուկ ուղարկում նույնպես Իտալիա։ Չնայած սակայն ամբողջ այս նահանգի կատարյալ սնանկացման՝ նրա սկզբնական քսան հազար տաղանդ պարտքը 84 թվից հետո վոչ միայն չէր պակասել, այլ դառել էր 70 թվին քառասուն հազար տաղանդ։ Ընդունելով ըստ Հուլչի, վոր մեկ տաղանդը հավասար է եղել այդ ժամանակաշրջանում մոտավորապես 4200 գերմանական վոսկի մարկի՝ ամբողջ այդ պարտքը կլինի 168 միլիոն մարկ կամ 84 միլիոն վոսկի ռուբլի[2]։

---

[1] Տես, օրինակ, Ферреро, Величие и падение Рима, I, перевод А. Захарова, Москва 1915, էջ 161 և 184։ Նման երկների ազդեցությանը պետք է վերագրել Միհրդատի ու Լուկուլլոսի մասին բնութագրերը Կովալևի դասագրքում։ Միհրդատին Կովալևը համարում է «հունական կրթություն ստացած խորամանկ ու ճարպիկ բարբարոս», իսկ Լուկուլլոսը, նրա ասելով՝ «համոզված արիստոկրատ էր, խիստ հարուստ, հայտնի էր իր ընտիր հյուրասիրություններով («Լուկուլլյան խնջույքներ»), և անձնապես ազնիվ մարդ էր...»։ Տես С. И. Ковалев, История античного общества. Эллинизм и Рим, 1936, էջ 192 և 207։

[2] Տես Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, Berlin 1882, էջ 298 և 711։

Վճարել այս հսկայական գումարը և նրա վրա բարդվող տոկոսները հռոմեական Ասիայի ուժերից վեր էր և այլևս հնարավոր չէր։ Հարստահարվող բնակչությունը չափից դուրս գրգռված էր հռոմայեցիների և, բնականաբար, նաև հռոմեական իշխանության դեմ։ Լուկուլլոսն անհրաժեշտ համարեց հանդարտացնել բնակչության այդ դժգոհությունը և աշխատեց թեթևացնել նրա տնտեսական դրությունը, որ դառել էր արդեն անտանելի։ Նա սահմանեց տուրք տների ու ստրուկների վրա, նաև 25% յեկամտահարկ[1]։ Մասնավոր պարտքերի համար նա արգելեց վերցնել 12%-ից ավելի, արգելեց նմանապես ավելագրել չվճարված տոկոսների վրա նոր տոկոսներ և կարգադրեց, բացի այդ, որ պահանջվող տոկոսների գումարը չպետք է ավելի լինի քան սկզբնական պարտքի գումարը[2]։ Յեթե պարտապանները չեյին վճարում իրենց պարտքերը՝ պարտատերերն իրավունք ունեյին վերցնելու նրանց յեկամուտի միայն մեկ քառորդ մասը[3]։

Յեվրոպական գիտնականներից շատերը, օրինակ, Ֆեռերոն և Շապոն, Լուկուլլոսի ֆինանսական այս միջոցառումները յենթադրում են Միհրդատյան յերրորդ պատերազմի առաջին տարվա ընթացքում, այսինքն՝ 73 թվին[4]։ Այս յենթադրությունը միանգամայն անհիմն է։ Թե Պլուտարքոսը և թե Ապպիանոսը, վորոնք գլխավոր ու միակ աղբյուրներն են վերոհիշյալ վկայությունների պարզ կերպով մատնանշում են, վոր Լուկուլլոսի վերադարձը հռոմեական Ասիա և վերևում նշված նրա բարեփոխությունները տեղի եյին ունեցել Ամիսոս քաղաքի գրավումից և Ապպիոս Կլավդիոսին Հայաստան ուղարկելուց հետո[5]։

Վոր իր բարենորոգումները և հռոմեական Փոքր Ասիայի խաղաղացումը Լուկուլլոսը կարևոր ու անհրաժեշտ էր համարել Հայաստան արշավելուց առաջ՝ այդ ուշագրավ մի փաստ է, վորն ուշադրության չե առնվել պատմագիտական յերկերում։ Շատ պարզ է, վոր նա, վորոշած լինելով պատերազմել Տիգրանի դեմ՝ պետք է ապահովեր իր թիկունքն արևմուտքում, վորոշ զիջումներ անելով հռոմեական Փոքր Ասիայի հուսահատված ու հուզված բնակչությանը։

---

1 Ապպիանոս, Միհրդատականք, 83։

2 Պլուտարքոս, Լուկուլ., 20, 3։

3 Նույնը, Լուկ., 20, 3։

4 Տես Ферреро, Величие и падение Рима, т. I, էջ 340 և V. Chapot, La province romaine proconsulaire d'Asie, Paris 1904, էջ 40—41։

5 Տես Պլուտ., Լուկ., 19, 2 և Ապպիանոս, Միհրդ., 83։

Պատմագիտական յերկերում բնավ չի լուսաբանված նաև Լուկուլլոսի Հայաստան արշավելու նենգ ու խորամանկ ծրագիրը, վորն առանց դժվարության քողազերծվում ու մերկացվում է սկզբնաղբյուրների ուշադիր քննությամբ։

Տիգրանի դեմ իր արշավանքը Լուկուլլոսը կազմակերպում եր բոլորովին թաքուն կերպով։ Նա աշխատել եր ըստ իս քնեցնել Տիգրանի աչալրջությունը և ծրագրել եր հանկարծ ու անսպասելի հարձակվել ու ջախջախել նրան, նախ քան նա հավաքած ու նախապատրաստած կլիներ իր ցրված զորամասերը։

Միանգամայն բնական է ու հասկանալի, վոր Լուկուլլոսի այդ հարձակումն առանց պատերազմի հայտարարության, վորով վոտնահարվում եյին միջազգային որինականության կարգերը, չեն ուզում բացահայտ կերպով խոստովանել հռոմեական աղբյուրները և, մասնավորապես, Պլուտարքոսը, վորը գրել եր Լուկուլլոսի վոչ թե անաչառ պատմությունը, այլ ներբողյանը։ Սակայն պարզ ակնարկներ կան այդ մասին Ապպիանոսի մոտ, վորն իր պատմության այս մասում ոգտվել եր, հավանորեն, վոչ թե հռոմեական, այլ փոքրասիական չեզոք հույն աղբյուրից։

Ապպիանոսի համապատասխան վկայությունից, վոր ամբողջությամբ մեջ ենք բերում, յերևում է, վոր Լուկուլլոսը՝ վերադառնալով 70 թվին[1] հռոմեական Փոքր Ասիա՝ նախ աշխատել եր տպավորություն գործել, վոր իբր թե պատերազմը վերջացել է և ապա շարժվել եր հանկարծ ու արագ յերթերով դեպի Հայաստան։

> «Արդ՝ հենց այսպես,—պատմում է Ապպիանոսը,—Լուկուլլոսն ավերեց Սինոպը և Ամիսոսը։ Նա բարեկամություն հաստատեց Միհրդատի վորդու Մաքարեսի հետ, վորը Բոսփորի թագավորն եր և ուղարկել եր իրեն վոսկե պսակ։ Ապա նա Տիգրանից պահանջեց Միհրդատին։ Իսկ ինքը, վերադառնալով Ասիա, վորը դեռ վճարում եր Սուլլայի սահմանած տուգանքները, վորոշեց վոր վճարեն յեկամուտի մեկ քառորդ մասը, և հարկ դրեց նաև տների ու ստրուկների վրա։ Այնուհետև նա իր հաղթության առթիվ զոհաբերության հանդիսատոներ կատարեց, վորպես թե պատերազմը աջող կերպով ավարտված է։ Ցեվ զոհաբերություններից

[1] Լուկուլլոսի վերադարձը Փոքր Ասիա պետք է յենթադրել վոչ թե Սինոպ ու Ամիսոս քաղաքների առումից առաջ 71 թվին, ինչպես Պլուտարքոսի հաղորդագրության համաձայն կարծում են Ռեյնաքը, Մոմզենը և ուրիշները (տես Mithridate Eupator, եջ 152 և „Римская история“, III, եջ 52), այլ այդ քաղաքների առումից հետո 70 թվին, ինչպես վկայում է Ապպիանոսը։

հետո նա ռազմի յելավ Տիգրանի դեմ, վորը չեր տվել իր ձեռքը Միհրդատին»[1]։

Վոր Լուկուլլոսն արշավել եր Հայաստան ծածկաբար ու հանկարծ՝ այդ ինչպես կըտեսնենք, ակնարկում են նաև Սալլուստիուսը և Մեմնոնը։ Ցեվ ինձ թվում ե, վոր իր գաղտուկ ու գողաբարո հենց հարձակման պատճառով Լուկուլլոսը, վորի անունն աղճատված ձևով պահվել ե հայ ժողովրդական ավանդության մեջ[2]՝ խիստ վատ հիշատակ ե թողել Հայաստանում և հիշվում ե Վայկուն անունով իբրև «յելուզակ», այսինքն, իբրև ավազակ, վորը վրդովել եր հայ յերկրի խաղաղությունը և հարկադրել եր Տիգրանին վերադառնալ Պտղոմայիդ քաղաքից Հայաստան։

Լուկուլլոս-Վայկունի մասին այդ հին ավանդությունը հիշատակված ե Խորենացու պատմության հետևյալ հատվածում։

Խորենացի, II, գլ. ԺԴ, Տփղիս 1913, եջ 128—129՝

> «Եւ նոյն հետայն դիմէ [Տիգրան] յաշխարհն Պաղեստինացւոց՝ վրէժս պահանջել ի Պտղոմայիդ Կղէոպատրայ յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր իւր յանցանաց։ Առեալ գերի բազում և ի Հրէից՝ նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ։ Իսկ դշխոյն Հրէից Աղեքսանդրիայ, որ և Մեսադինայ, որ էլ լեալ կին Աղեքսանդրի, որդւոյ Յոհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչս բազումս տալով՝ դարձոյց զնա անտի։ Քանզի էր լուեալ և համբաւ, թէ Վայկուն ոմն անուն յելուզակ խռովէր զերկիրն Հայոց; զլեառն ամուր կալեալ, որ մինչև ցայժմ յանուն յելուզակին կոչին Վայկունիք»։

Վոր Լուկուլլոսն արշավել եր Հայաստան հանկարծակի ու առանց պատերազմ հայտարարելու՝ այդ կարելի յե համարել, ինչպես կըտեսնենք նաև ներքև, միանգամայն անվիճելի։

---

[1] Ապպ., Միհրդատականք, 83 և 84։

[2] Գրիգոր Խալաթյանցի յենթադրությունը, վոր իբր թե Խորենացին կամայական կերպով Լուկուլլոսին դարձրել ե «Վայկուն յելուզակ» հավանական չե։ Խորենացու այդ վկայությունը հիմնված ե ըստ իս ժողովրդական ավանդության վրա. տես Г. Халатьянц, Армянские Аршакиды, Москва 1903, եջ 64, 375։

# 10. ԼՈՒԿՈՒԼԼՈՍԻ ՀԱՆԿԱՐԾԱԿԻ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ ՅԵՎ ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՐՈՒՄԸ ՀԱՅԵՐԻ ՀԵՏ

*Լուկուլլոսի ծրագրած հանկարծակի ու անսպասելի հարձակումը և պատերազմը Տիգրանի դեմ նախապատրաստվում եր, ինչպես ասացինք, թաքուն կերպով ու դավադրաբար։*

*Տիգրանը չեր սպասում և ամենևին չեր նախազգում իր յերկրին սպառնացող մեծ վտանգը։ Նա գիտեր, ըստ յերևույթին, որ հռոմեական ծերակույտը չեր լիազորել Լուկուլլոսին նոր պատերազմ սկսելու Հայաստանում։ Նրան նաև հայտնի չեր, հավանորեն, որ հռոմեական ծերակույտը՝ վտանգավոր համարելով պատերազմը հզոր Հայաստանի դեմ՝ չեր համաձայնել միջամտել Ասորիքի գործերին և գահ բարձրացնել Սելևկյան օրինավոր ժառանգներին։ Ծերակույտի խաղաղասեր այդ հակումները, ինչպես և պատերազմի վերջացման առթիվ Լուկուլլոսի Եփեսոսում կազմակերպած հանդեսները՝ պիտի վստահություն ներշնչած լինեյին Տիգրանին, որ պատերազմի վտանգը հռոմայեցիների հետ կարելի յե համարել կանխված։ Ուստի և նա ոչ միայն չեր նախապատրաստվում պատերազմի, այլ, ընդհակառակը, անհոգ ու հանգիստ զբաղված եր Տիգրանակերտ քաղաքի շինարարության ավարտման աշխատանքներով։*

*Նրա միամիտ այս լավատեսությունը քաղաքական մեծ սխալ եր, որը, ինչպես կտեսնենք, որհասական հետևանքներ ունեցավ նրա մեծ պետության համար։ Այս սխալը դժվար կարելի յե արդարացնել, որովհետև Միհրդատը, ինչպես աղբյուրների վկայություններից հայտնի յե, նրան նախազգուշացրել եր, որ հռոմեական վայրագ ու անկշտում իմպերիալիզմը անխուսափելի կերպով արշավելու յե Հայաստան։ Յեվ իրավի, Հռոմը վաղ թե ուշ հաշիվ եր պահանջելու Տիգրանից Ասորիքի նվաճման ու Կապադովկիայի ավերածությունների համար, որոնք նրա դաշնակիցներն եյին։ Նա չեր կարող, իհարկե, թույլ տալ, որ փոքրասիական իր գաղութների թիկունքում՝ Կոմմագենում, Արևելյան*

Կիլիկիայում և Միջերկրական ծովի ափերին՝ վերջնականապես կազմակերպվի ու ամրանա աշխարհակալ ու հզոր Հայաստանը, վորը մշտական մի սպառնալիք եր լինելու նրա տիրապետության համար Արևելքում։

Դժվար չեր, ուրեմն, կռահել, վոր հռոմեական զորեղ ու ռազմատենչ հանրապետության ամրացումն ու հարևանությունը Հայաստանի արևմտյան սահմաններում ավելի վտանգավոր եր լինելու հայկական նորակազմ աշխարհակալության համար, քան նրա արևելյան սահմաններում գտնվող համեմատաբար թույլ ու անկայուն Պարթևական թագավորության հարևանությունը։ Ուստի և Տիգրանը, ինչպես իրավացի կերպով ակնարկում են հռոմեական աղբյուրները՝ չպետք է հանդուրժեր իր թիկունքն ապահովող Պոնտոսի խորտակումը և իր աներոջը Միհրդատին օգնություն պետք է ուղարկած լիներ Կաբիրայի կռվից առաջ։

69 թվի գարնանը Լուկուլլոսը, առանց պատերազմ հայտարարելու Տիգրանին և հակառակ հռոմեական ծերակույտի ցանկության՝ իր անձնական նախաձեռնությամբ ու պատասխանատվությամբ, սկսեց հայկական արշավանքը։ Ինչպես հաղորդում է Սալլուստիուսը[1], ամենաարագ յերթերով նա անցավ Կապադովկիայի միջով և շտապեց դեպի Եփրատ գետը, վորը բաժանում եր Հայաստանին կցված հին Ծոփքը Արիոբարզանի թագավորությունից։ Այստեղ Մելիտենի մոտ[2] Կապադովկիայի թագավորը ծածկաբար պատրաստել եր տվել ձմեռվա ընթացքում լաստանավեր[3], վորոնցով Լուկուլլոսը հեշտությամբ անցավ Եփրատ գետը և դուրս ցսկավ Ծոփք։ Վոր Լուկուլլոսը Եփրատ գետն անցել եր թաքուն ու անակնկալ կերպով՝ այդ բացի Սալլուստիուսից վկայում է նաև Մեմնոնը[4]։

Հռոմեական զորքը Մելիտենից մինչև Եփրատ յեկել եր, անշուշտ, կարավանների հին ճանապարհով, վորը մանրամասն նկարագրված է Պևտինգերյան քարտեզում։ Այդ ճանապարհը վորոշվում է ճշտիվ այժմյան Իզոգլուի (գրվում է նաև Իզոլի) և նշանավոր հին Տոմիսայի մոտով, վորը գտնվում եր Եփրատի ձախ

1 Տես fr. IV, 11 (Leipzig 1856):

2 Համեմատե Tacitus, Annales, XV, 26—27:

3 Մոմզենի յենթադրությունը, վոր Տիգրանը նվաճած է յեղել նաև Մելիտենը, ինչպես վերև ասացինք, ճիշտ չէ։

4 Տես Մ ե մ ն ո ն, գլ. 56։ «Լուկուլլոսը,— ասում է այս վկայության մեջ Մեմնոնը,— դուրս գալով Կապադովկիա և ունենալով իբրև բարեկամ նրա Արիոբարզան իշխանապետին՝ անակնկալ կերպով անցավ ոտքով Եփրատը...»։

տիրին։ Համաձայն Ստրաբոնի վկայության՝ Լուկուլլոսը նվիրել էր Տոմիսա ամրոցը Կապպադովկիայի Արիոբարզան Ա. թագավորին այն օգնության համար, վոր ստացել եր նրանից պատերազմի ժամանակ[1]։

Մեջ բերված այս փաստական տեղեկությունները, վորոնք պատմական են և միանգամայն արժանահավատ՝ լռության են տրված Պլուտարքոսի կողմից, վորը, հավանորեն, աշխատել ե սքողել այս արշավանքի գաղտագողի ու յելուզակային բնույթը, վոր պատվաբեր չեր Լուկուլլոսի համար։ Այս տեղեկությունների փոխարեն, վորոնք հայտնի յեն յեղել իրեն, գլխավորապես, Սալլուստիուսի պատմական յերկից՝ Պլուտարքոսը տալիս ե հրաշքներով լի հեքիաթական մի պատմություն, վորի սկզբնաղբյուրը կարող ե յեղած լինել, ինչպես յենթադրում ե Ռեյնաքը[2], Արքիաս Անտիոքացու բանաստեղծական շինծու վիպերգը։

Պլուտարքոսի հաղորդած տեղեկությունները, վոր սովորաբար մեջ են բերվում պատմագիտական յերկերում, ավելորդ չեմ համարում տալ թարգմանաբար առանց կրճատումների։

«Լուկուլլոսը,—ասում ե Պլուտարքոսը[3],—մեծ արագությամբ անցնելով ճանապարհը մինչև Յեփրատ գետը՝ գտավ այդ գետը խիստ հորդացած ու պղտորված անձրևների պատճառով։ Նա անհանգիստ եր, վորովհետև հարկադրված եր ժամանակ վատնել ու աշխատանք գործ դնել և պետք ե լաստանավեր շինել տար ու պատրաստեր նավակամուրջ։ Սակայն յերեկոյան դեմ ջուրը սկսեց իջնել և այնքան պակասեց գիշերվա ընթացքում, վոր լուսաբացին Լուկուլլոսը գետի հունը տեսավ ցամաքած։ Յերբ տեղական բնակիչները տեսան գետանցքում յերևացող փոքրիկ կղզյակներ և նրանց մոտ ջուրը ծանծաղած՝ նրանք ծնկաչոք յերկրպագեցին Լուկուլլոսին, վորովհետև այդ առաջ քիչ եր պատահել, իսկ այժմ սանձահարված ու ընտելացած գետը հոժարակամ անձնատուր եր լինում նրան և նրա տրամադրության տակ եր դնում իր դյուրին ու անարգել անցքը։ Արդ՝ օգտվելով այս աջող դեպքից՝ Լուկուլլոսը տեղափոխեց իր զորքը։ Գետն անցնելու ժամանակ նրան յերևաց կարևոր մի նախանշան։ Այստեղ արածում եյին սրբազան յերինջները պարսկական

---

1 Տես Ստրաբոն, XII, 2, 1:

2 Mithridate Eupator, եջ 442։

3 Տես Լուկուլ., 24, 2—8։

Արտեմիսի, վորին բարբարոսները, վոր ապրում եյին Յեփրատի մյուս ափին՝ ավելի եյին պաշտում, քան մյուս աստվածներին։ Նրանք այս յերինջներից ոգտվում եյին միմիայն զոհաբերությունների համար, իսկ ընդհանրապես այդ տեղերում յերինջներն ազատ շրջում եյին և ամեն մեկը կրում եր իր վրա խարանադրոշմ մի ջահ, վորն աստվածուհու նշանն եր։ Յեթե նրանցից մեկը հարկավոր լիներ՝ նրան այնքան ել հեշտ չեր վերցնել և բավական մեծ աշխատանք եր պետք դրա համար։ Ծերբ զորքն անցնում եր Յեփրատ գետը՝ դրանցից մեկը բարձրացավ սրբազան մի ժայռի վրա, վորը նվիրված եր աստվածուհուն, կանգնեց նրա գագաթին և, խոնարհեցնելով գլուխը, ինչպես այդ անում են թոկով տարվող յերինջները՝ տրամադրեց ինքն իրեն Լուկուլլոսին զոհաբերման համար։ Բարեհաջող գետանցի համար Լուկուլլոսը զոհաբերեց նաև Յեփրատին մի ցուլ»։

Պլուտարքոսի հաղորդած այս տեղեկությունները չունեն հարկավ պատմական վորևե արժեք։ Յեվ, ինարկե, իզուր են նրանք մանրամասն մեջ բերված պատմական նորագույն մի քանի յերկերում առանց վերոհիշյալ փաստական ու արժանահավատ վկայությունների հիշատակության[1]։

Յեփրատ գետն անցնելուց հետո հռոմեական զորքն առաջ շարժվեց Լուկուլլոսի առաջնորդությամբ և դարձյալ արագացրած յերթով գնաց Ծոփքի միջով դեպի Տիգրիս գետը, նպատակ ունենալով հանկարծակիի բերելու Տիգրանին և անակնկալ կերպով հարձակվելու Տիգրանակերտ քաղաքի վրա։ Ծոփքի բնակչությունը վոչ միայն ցույց չեր տվել վորևե դիմադրություն, այլ, ըստ յերևույթին, ինքը հոժարակամ հնազանդվել եր Լուկուլլոսին և, հայթայթելով հռոմեական բանակին անհրաժեշտ պարեն՝ մեծապես հեշտացրել եր նրա առաջխաղացումը դեպի Տիգրանակերտ։

Հռոմեական զորքի առաջշարժումը Ծոփայ աշխարհի միջով նկարագրված է Ապպիանոսի ու Պլուտարքոսի ներքև մեջ բերված վկայություններում, վորոնք իրար հետ համերաշխ են և իրար լրացնում են։

1. Ապպիանոս, Միհրդատականք, 84՝

«Յեփրատ գետն անցնելուց հետո՝ Լուկուլլոսն առաջ

---

1 Տես Լ և ո, Հայոց պատմություն, Թիֆլիս, 1917, եջ 406 և այլն, նաև Դ ո լ ե ն ս և Խ ա չ, Պատմություն հին հայերի, պրակ Գ, Թիֆլիս 1910, եջ 50—51 և ուրիշ։

շարժվեց բարբարոսների միջով, պահանջելով նրանցից միայն այն՝ ինչ վոր հարկավոր եր։ Իսկ ժողովուրդն այս չեր կամենում և չեր ուզում վորևե վնաս կրել, մինչև վոր Լուկուլլոսը և Տիգրանը կվերջացնեյին իրար դեմ պատերազմը»։

2. Պլուտարքոս, Լուկուլլոս, 24, 8՝

«Յեվ այդ որը նա [Լուկուլլոսը] գիշերեց այստեղ [Յեփրատի ձախ ափին], իսկ հետևյալ և հաջորդ որերը նա առաջ շարժվեց Ծոփքի միջով առանց վորևե վնաս հասցնելու բնակիչներին, վորոնք հարում եյին նրան և հոժարությամբ ընդունում նրա զորքը։ Յեվ յերբ զինվորներն ուզեցին վերցնել մի բերդ, վորի մեջ կարծում եյին թե կան մեծ գանձեր՝ նա, ցույց տալով նրանց Տավրոսը հեռվում, ասաց՝ «Մենք պետք ե ավելի շուտ խորտակենք այն բերդը, իսկ սրանք այստեղ կըմնան հաղթողների համար»։ Յեվ նա, արագացնելով իր յերթը և անցնելով Տիգրիս գետը՝ ներխուժեց Հայաստան»։

Ուշագրավ ե, վոր մի ուրիշ վկայության մեջ ես Պլուտարքոսն առանձնապես մատնանշում ե, վոր բացի արաբներից և գորդվացիներից Լուկուլլոսի կողմն եր անցել նաև Ծոփաց աշխարհի բնակչությունը[1]։ Այս վկայություններից անհավանական չի լինի յեզրակացնել, վոր հռոմեական դեսպան Ապպիոս Կլավդիոսի Հայաստան յեղած ժամանակ վոչ միայն Կորդուքը, այլ և Ծոփքը համաձայնած ե յեղել ոգնելու Լուկուլլոսին։ Թե վորքան մեծ կարևորություն ուներ սրա արշավանքի աջողության համար հռոմեական ռազմերթի ճանապարհի վրա գտնվող այս յերկու յերկրների դավաճանական համագործակցությունը հռոմայեցիների հետ՝ այդ հասկանալի յե ինքն ըստ ինքյան։

Արշավող զորքի ճանապարհի ուղղությունը Յեփրատ գետից մինչև Տիգրիս գետը պատմագիտական յերկերում վորոշված ե միանգամայն բավարար ճշտությամբ։ Լուկուլլոսի յերթուղու այս մասը յենթադրում են այժմյան Խարբերդի դաշտի միջով ու Արղանայի վրայով դեպի Տիգրիս գետն Ամիդ-Դիարբեքիրի մոտ. ուրեմն՝ այն հին ճանապարհագծով, վորն Աքեմենյան Պարսկաստանի «արքայական ճանապարհի» մի մասն եր[2] և համապատասխանում եր Պեվտինգերյան քարտեզում նկարագրված Melitene—ad Tygrem ուղեգծին։

---

1 Պլուտ., Լուկուլ., 29, 8։

2 Տես „О торговле и городах Армении", եջ 14—15։

Տիգրիս գետն անցնելուց հետո[1] հռոմեական զորքը, ինչպես վկայում ե Պլուտարքոսը[2], ներս եր խուժել Հայաստան։ Այս կարևոր վկայությունը, վոր բավարարաչափ ուշադրության չե առնվել, լուսաբանում ե Հին Հայաստանի պատմական աշխարհագրության ամենամութ խնդիրներից մեկը։ Պլուտարքոսը, ինչպես պարզ յերևում ե նրա վկայություններից՝ Ծոփքը, վորը Տիգրան Բ-ը միացրել եր Մեծ Հայաստանին, համարում ե առանձին յերկիր ու նրա և բուն Հայաստանի սահման ե ընդունում՝ արևմտյան Տիգրիս գետը[3]։ Կարելի յե, ուրեմն, յենթադրել, վոր Տիգրիս գետի ձախ կողմում գտնվող Աղձնիքը, վորի մեջ եր Տիգրանակերտ քաղաքը, գտնվել ե վոչ թե Ծոփաց Զարիադրեսի պետության մեջ, ինչպես այդ կարծում են Հյուբշմանը և Մարկվարտը[4], այլ յեղել ե Արտաշեսյան Հայաստանի հարավային յերկրներից մեկը։

Մեր այս հետևությունն անուղղակի կերպով հաստատում ե նաև Ապպիանոսը։ Նրա ասելով՝ Տիգրանակերտ քաղաքը հիմնված ե յեղել այն տեղում, վորտեղ «Տիգրանը առաջին անգամ իր գլխին դրել եր Հայաստանի թագը»[5]։

Այս վկայությունից ևս յերևում ե, վոր Ապպիանոսը, ինչպես և Պլուտարքոսը՝ Աղձնիքը ու նրա մեջ գտնվող Տիգրանակերտը համարում են բաղադրամաս Արտաշեսյան Հայաստանի։ Ուշագրավ ե առանձնապես, բացի այդ, և այն, վոր նաև ըստ հայկական ավանդության, վորը մեջ ե բերված Մար Աբասի և Խորենացու պատմական յերկերում, հայերի հնագույն գաղթավայրը ցույց ե տրված հենց նույն այս կողմերում Հայկական Տավրոսի հարավում։

Ուրեմն՝ Մեծ Հայաստանի հարավային սահմանը Տիգրան

---

1 Եքհարդի կարծիքով, հռոմեական զորքը Տիգրիս գետն անցել եր, հավանորեն, այժմյան Ամիդ-Դիարբեքիրից մոտ քսան կիլոմետր հեռավորության վրա այժմյան Շաբխանի մոտ. տես Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 1, եջ 87—88։

2 Տես Լուկուլ., 24, 8։

3 Համեմատե Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus Klio, Bd X, Heft 1, եջ 83։

4 Տես Հյուբշման, «Հին հայոց տեղւոյ անունները», Վիեննա 1907, եջ 77 և Markwart, Eranschahr, Berlin 1901, եջ 178։ Համեմատե սակայն Մարկվարտի ճիշտ կռահումը նրա Südarmenien und die Tigrisquellen աշխատության մեջ՝ եջ 119։

5 Ապպիանոս, Միհրդատ., 67։




*Լուկուլլոսի ճանապարհը Ծոփքի վրայով դեպի Տիգրանակերտ*

*Մեծի և նրա նախորդների ժամանակ կարող էր չեղած լինել իրապես, ինչպես վկայում է Պլուտարքոսը՝ Տիգրիս գետը։*

*Տիգրիս գետից մինչև Տիգրանակերտը (այժմյան Ֆարկինը), ուր շտապում էր հասնել հռոմեական զորքը, ընդամենը միայն մոտ 150 կիլոմետր էր[1]։ Լուկուլլոսի ննդ ու խորամանկ ծրագիրը իրականանում էր, ինչպես տեսնում ենք, ամենամեծ աջողությամբ։ Թշնամին կիպ մոտեցել էր Տիգրանակերտին և ահավոր վտանգը կախված էր արդեն Հայաստանի գլխին, իսկ Տիգրանը դեռ վոչինչ այդ մասին չգիտեր և վոչ զորք էր հավաքել և վոչ էլ կարող էր վորևէ կերպ սպառնացող այդ վտանգը կանխել։*

*Հռոմեական զորքի անակնկալ ներխուժման լուրը թվաց Տիգրանակերտում միանգամայն անհավատալի։ Ապպիանոսի վկայությամբ՝ Տիգրանն այդ լուրը տարածողին համարել էր դրգռիչ ու խռովարար։*

> *«Տիգրանին,—վկայում է Ապպիանոսը[2],—վոչ վոք տեղեկություն չէր տվել Լուկուլլոսի ներխուժման մասին։ Առաջին մարդը վորն այդ ասել էր՝ կախաղան էր հանվել նրա հրամանով, վորովհետև նա կարծել էր, վոր այդ մարդը խուճապ է գցում քաղաքներում»։*

*Խիստ դունավորված ու չափազանցված ձևով լրաբերի մահապատժման մասին պատմում է Պլուտարքոսը, վորի կասկածելի վկայությունները անտեղի կերպով մեջ են բերված, գլխավորապես, հայկական յերկերում[3]։*

> *«Վորովհետև,—ասում է Պլուտարքոսը,—Լուկուլլոսի ժամանման մասին առաջին լուր տվողը վոչ միայն ոգուտ չստացավ, այլև գլխատվեց Տիգրանի հրամանով, ուստի և վոչվոք այլևս նրան չէր հաղորդում այդ մասին. և յերբ պատերազմի հուրն արդեն բորբոքվել էր՝ նա նստած էր անտեղյակ։ Այդ ժամանակ շողոքորթ խոսքեր էր նա լսում, վոր մեծ հրամանատար կըհամարվի Լուկուլլոսը, յեթե կարողանա նրան դիմակայել Եփեսոսում և յեթե Ասիայից իսկույն չփախչի, տեսնելով նրա անհամար զորքերը»[4]։*

---

1 Հռոմեական զորքի ճանապարհը Տիգրիս գետից մինչև Ֆարկին–Տիգրանակերտ սխալ է լուսաբանված Մոմզենի, Խալաթյանցի և մի շարք այլ յերկերում, վորովհետև այդ աշխատություններում սխալ է վորոշված Տիգրանակերտի տեղը։

2 Տե՛ս Միհրդատ., 84։

3 Տե՛ս Լ ե ո, Հայոց պատմություն, էջ 407 և Դ ո լ ե ն ս և Խ ա չ, Պատմություն հին հայերի, պրակ Գ, էջ 51—52։

4 Տե՛ս Պ լ ո ւ տ., Լուկուլ., 25, 1։

*Պլուտարքոսի այս վկայության մեջ հետաքրքիր է, գլխավորապես, այն, վոր Տիգրանի արքունիքում, ըստ յերևույթին, համոզված են յեղել, վոր Լուկուլլոսը դեռևս գտնվել է Նիփեսոսում։ Ինձ թվում է, վոր վերոհիշյալ մեր նոր հետևությունը, վոր Լուկուլլոսը յեկել եր Հայաստան վո՛չ թե Պոնտոսից, ինչպես մինչև այժմ յենթադրել են, այլ Նիփեսոսից՝ անուղղակի կերպով ակնարկված է նաև Պլուտարքոսի սույն հատվածում։*

*Լրաբերի հաղորդած տեղեկության հաստատումն առաջ բերեց Տիգրանակերտում շփոթություն ու իրարանցում։ Տիգրանը, վորը պատերազմի պատրաստությունները դեռ չեր տեսել՝ ստիպված յեղավ մասնակի կերպով քաղաքը դատարկել և հեռանալ ապահով մի տեղ։ Վորպեսզի կարողանա ժամանակ շահել՝ նա իր զորավարներից մեկին, Մեհրուժանին* (=Mithrobouzanēs)[1], *տվեց մի փոքր զորամաս և հրամայեց, վոր նա, ինչ գնով ել վոր լինի, կանգնեցնե ղոնե ժամանակավորապես թշնամու շարժումը դեպի Տիգրանակերտ։*

*Մեհրուժանի զորամասի հռոմեական զորքի դեմ ուղարկման մասին միանգամայն վստահելի ու արժանահավատ տեղեկություն է հաղորդում դարձյալ Ապպիանոսը, վորն, ինչպես վերև ասացինք, իր պատմության այս մասում ոգտվել եր փոքրասիական չեզոք աղբյուրից։*

> *«Յերբ Տիգրանն այնուհետև,—վկայում է Ապպիանոսը[2],—հաստատ իմացավ [Լուկուլլոսի ներխուժման մասին], նա ուղարկեց Մեհրուժանին յերկու հազար հեծելազորով, վորպեսզի նա ուշացնե Լուկուլլոսի գրոհը։ Իսկ Մանկայոսին հանձնարարեց Տիգրանակերտի պաշտպանությունը»։*

*Պլուտարքոսը տալիս է նաև տեղեկություն Մեհրուժանի մահվան մասին հանդուգն ու անհավասար կռվում։ Սակայն թեև նրա այս վկայությունների հիմքը պատմական է, բայց վորոշ մանրամասնությունները հնարովի ու անհեթեթ հերյուրանքներ*

---

[1] *Վոր Պլուտարքոսի ու Ապպիանոսի վկայություններում հիշատակված* Mithrobarzanes *անունը պետք է կարդալ* Mithrobouzanēs՝ *այդ համաձայն Ապպիանոսի ձեռագրների ընթերցվածների քննության պարզաբանված է Մարկվարտի ուսումնասիրություններից մեկում (տես* Untersuchungen zur Geschichte von Eran, Philologus, Bd. 55, *եջ 68—69)։ Ինչպես բացատրված է նույն այդ ուսումնասիրության մեջ,* Mithrobouzanēs *անունը համապատասխանում է հայկական Մեհրուժանին։*

[2] *Տես Միհրդատ., 84։*

են, վորոնց միջոցով նա աշխատում է ըստ իր սովորության անվանարկել Տիգրանին։

«Նրա [Տիգրանի] բարեկամներից առաջինը Մեհրուժանն էր,—պատմում է Պլուտարքոսը[1],—վոր համարձակություն ունեցավ նրան ճշմարտությունը հայտնելու։ Սակայն սրան էլ ազատ խոսքի շնորհն ոգուտ չբերեց։ Սա իսկույն ուղարկվեց Լուկուլլոսի դեմ յերեք հազար հեծելազորով և բազմաթիվ հետևազորով։ Յեվ նրան հրաման տրվեց բռնել զորավարին ու բերել կենդանի, իսկ մյուսներին կոտորել։ Լուկուլլոսի զորքի մի մասն այդ ժամանակ տեղավորվում էր արդեն ճամբարում, իսկ մյուս մասը դեռ ճանապարհին էր։ Յերբ հետախույզները նրան հայտնեցին բարբարոս զորքի մոտեցման մասին՝ նա վախեցավ վոր նրանք, հարձակվելով իր ցրված ու չկարգավորված զորքի վրա, կառաջացնեն շփոթմունք։ Ուստի և ինքը շարունակեց հարդարել ճամբարը, իսկ Սեքստիլիուս լեգատին, վորն ուներ հազար վեցհարյուր հեծելազոր և մի փոքր ավելի ծանր զինված ու թեթև զինված հետևազոր՝ ուղարկեց թշնամու դեմ և հրամայեց մոտ գնալ ու նրանց դիմադրել, մինչև վոր լուր կըստանա, վոր իր հետ յեղած զորքը տեղավորվել է արդեն ճամբարում։ Արդ՝ Սեքստիլիուսն ուզում էր հենց այդպես անել, սակայն նա յենթարկվեց հարձակման Մեհրուժանի կողմից, վորն անվեհեր կերպով մտավ ձեռնակռվի։ Տեղի ունեցած ճակատամարտում Մեհրուժանը կռվելիս սպանվեց, իսկ մյուսները գրեթե բոլորը բացի քչերից մեռան փախուստի ժամանակ»։

Այս վկայության մեջ ակներև, անշուշտ, մի անհեթեթություն է Պլուտարքոսի հաղորդած սարքովի տեղեկությունը, վոր իբր թե Մեհրուժանի փոքրաթիվ զորքին հրաման էր տրված կենդանի բռնել Լուկուլլոսին և վոչնչացնել հռոմեական ահագին զորաբանակը։ Նա ուղարկված էր, իրապես, ինչպես տեսանք, վորպեսզի ուշացնե հռոմեական զորքի առաջխաղացումը դեպի Տիգրանակերտ։ Յեվ բնորոշ է, վոր անգամ Պլուտարքոսի այդ վկայությունը, վորի անմիտ լինելը պարզ է ու անվիճելի, անվերապահ կերպով մեջ է բերված պատմագիտական յերկերում[2]։

---

1 Տես Լուկուլ., 25, 3—6։

2 Տես, որինակ, Reinach, Mithridate Eupator, եջ 359, Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. 10, 1, եջ 90 և ուրիշ.։

Պլուտարքոսի վերոհիշյալ վկայության մեջ սուտ է, անտարակույս, նաև այն, որ իբր թե Տիգրանը, ուղարկելով Մեհրուժանին Լուկուլլոսի դեմ՝ ուղեցել է նրան պատժել, որովհետև նա չէր չերկրորդ անգամ իրեն հայտնել հռոմեական զորքի հարձակման մասին։ Մեհրուժանը, ինչպես պարզել է Մարկվարտը՝ Ծոփքի թագավորական տան արքայազններից էր[1]. ուստի միանգամայն հասկանալի չէ, թե ինչու նա չէր ուղարկվել Լուկուլլոսի դեմ, որը գալիս էր Ծոփքի միջով։

«Այնուհետև Տիգրանը,—պատմում է Պլուտարքոսը,— թողնելով իր հիմնած Տիգրանակերտ մեծ քաղաքը՝ նահանջեց դեպի Տավրոս և սկսեց զանազան կողմերից հավաքել իր ուժերն այնտեղ։ Իսկ Լուկուլլոսը, ժամանակ չտալով նրան պատրաստվելու՝ ուղարկեց Մուրենային, որպեսզի նա դժվարացնե ու արգելե զորքերի համակենտրոնացումը Տիգրանի մոտ, և ուղարկեց նաև Սեքստիլիուսին, որպեսզի նա չետ մղե արաբական մեծ զորամասը, որը գնում էր թագավորի մոտ։ Արդ՝ Սեքստիլիուսը անհապաղ հարձակվեց արաբների վրա, որոնք բանակ էյին դնում, և նրանց մեծագույն մասը կոտորեց, իսկ Մուրենան հետապնդեց Տիգրանին նեղ ու անհարթ ձորում և, օգտվելով հարմար առիթից՝ գրոհեց նրա չերկայնաձգված զորքի վրա։ Ցեվ Տիգրանը կարողացավ ինքը փախչել, թողնելով ամբողջ իր աղխը. սակայն շատերը հայերից այդտեղ սպանվեցին, իսկ մեծագույն մասը գերի ընկավ»[2]։

Ինչպես տեսնում ենք, Լուկուլլոսի վերոհիշյալ ծրագիրը, որով նա նախատեսել էր հանկարծակիի բերել Տիգրանին՝ իրագործված էր այժմ լիովին։ Հռոմեական զորքը գտնվում էր արդեն Տիգրանակերտ քաղաքի մոտ բուն Հայաստանում, իսկ Տիգրանն անկարող էր հակահարված տալ թշնամուն, որովհետև նա դեռ չէր տեսել պատերազմի որևէ պատրաստություն։

Հռոմեական աղբյուրների արհամարական ակնարկները Տիգրանի նկատմամբ բացատրվում են, հավանորեն, նրանով, որ հռոմայեցիների զորավարը և հռոմեական ճարպիկ ու վարպետ դիպլոմատիան մեծ աջողությամբ կարողացել էյին նրան գլխահան անել ու խաբել։

[1] Տե՛ս Markwart, Eranschahr, էջ 176։
[2] Տե՛ս Պլուտ., Լուկուլ., 25, 7—8։

## 11. ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՊԱՇԱՐՈՒՄԸ ՅԵՎ ՏԻԳՐԱՆԻ ՏԵՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՀՐԴԱՏԻ ՀԵՏ

Լուկուլլոսի հանկարծակի ու սրընթաց շարժումը դեպի Տիգրանակերտ առաջացրել էր այստեղ, ինչպես ասացինք, խուճապ ու շփոթ։ Տիգրանի փախուստը քաղաքից կատարվել էր այնքան արագ ու հապճեպ, որ նա չէր կարողացել հետը վերցնել իր կանանոցն ու գանձերը։

Նահանջելով Տավրոսյան լեռներով[1], հավանորեն, այժմյան Ներջիկի ու Շենիկի վրայով[2] դեպի իր թագավորության կենտրոնական ու հյուսիսային շրջանները՝ Տիգրանակերտի պաշտպանությունը Տիգրանը հանձնարարել էր Մանկայոս զորավարին։ Սա պետք է դիմադրեր ու պահեր քաղաքը, մինչև որ ինքը զանազան կողմերից կըհավաքեր իր զորքերը և կըգար նրան օգնության։

Լուկուլլոսի հանկարծակի հարձակումը և Տիգրանակերտ գալը տեղի չեր ունեցել, իմ կարծիքով, ոչ թե 69 թվի ամառը, ինչպես յենթադրում է Ռեյնաքը[3], այլ 69 թվի գարնանը։ Ի նկատի ունենալով ընդհանուր տարածությունը, որ Յեփրատ գետից մինչև Տիգրանակերտ-Ֆարկինը մոտ 300 կիլոմետր է, պետք է յենթադրել, որ հռոմեական զորքը, Յեփրատ գետն անցնելուց հետո (69 թվի գարնանը)՝ արագացրած յերթով կարող էր հասած լինել Տիգրանակերտ առ առավելն յերկու շաբաթվա ընթացքում, ոչ ուշ քան մայիս ամսին։

Հավանական է, ուրեմն, որ հռոմայեցիները Տիգրանակերտը պաշարել եյին արդեն 69 թվի գարնանը։ Քաղաքի պաշարման

---

[1] Տես Պլուտ., Լուկուլ., 25, 7։

[2] Տիգրանակերտից Տարոն ու այնտեղից Արտաշատ տանող մեծ ճանապարհը, որը մանրամասն նկարագրված է հռոմեական հին աշխարհագրական քարտեզում, քննված է ու լուսաբանված իմ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխատության մեջ, եջ 85—114։

[3] Տես Mithridate Eupator, եջ 359։

նախապատրաստությունները Լուկուլլոսը հանձնարարել էր Սեքստիլիուսին, վորը, ինչպես վկայում է Ապպիանոսը[1].

«Շրջափակելով Տիգրանակերտում Մանկայոսին՝ իսկույն գրավել էր թագավորական պալատը՝ վորը գտնվում էր քաղաքի պարիսպներից դուրս, իսկ քաղաքը և միջնաբերդը պատել էր պատնեշով ու փոսով, պատրաստել էր մեքենաներ և պարսպի տակ փորել էր տվել ականներ»։

Բերդապահ զորքը բաղկացած էր, գլխավորապես, հույներից և կիլիկեցիներից։ Ըստ յերևույթին, այս զորքը կազմված էր Տիգրանակերտի քաղաքացիական իրավունքներ ստացած նորաբնակներից, վորոնց այստեղ էր գաղթեցրել Տիգրանը Կիլիկիայից ու Կապպադովկիայից։

Հռոմայեցիների բոլոր ջանքերը գրավելու քաղաքը գրոհով և պատերազմական մեքենաների ոգնությամբ մնացին ապարդյուն ու անհետևանք։

Մանկայոսի[2] առաջնորդությամբ բերդապահ զորքը համառ ու տոկուն կերպով դիմադրում էր հռոմայեցիներին, թափելով նրանց գլխին նետերի տարափ։ Իսկ պաշարման մեքենաների վրա պաշարվածները վերևից ածում էին այրվող նավթ, վորը վոչընչացնում էր մեքենաները[3]։

Այսպիսով ամիսներ շարունակ Տիգրանակերտը մնաց կանգուն ու անպարտելի մինչև Տիգրանի վերադարձը նոր կազմված զորաբանակով։

Ուշագրավ է ու հետաքրքիր, վոր Պլուտարքոսը ավելորդ է համարել մատնանշել հռոմեական զորքի սկզբնական այս անաջողությունը։ Նա վոչինչ չի հաղորդում նաև հայկական հեծելազորի աջող ու հաղթական այն գրոհի մասին, վոր հանգամանորեն հիշատակված է յեղել փոքրասիական չեզոք աղբյուրներում, վորոնցից լայնորեն ոգտվել էին Մեմնոնը և Ապպիանոսը։

Այդ արժանահավատ աղբյուրներից հայտնի յե, վոր Տիգրանակերտի պաշարման սկզբներում Տիգրանն այստեղ ուղարկել

---

1 Միհրդատականք, 84։

2 Մանկայոս անունը համապատասխանում է ըստ Ադոնցի հայկական Մամիկ անվան և, վորովհետև այդ անունը հանդիպում է Մամիկոնյանների տոհմում և նրանց նախահոր անունն է, ուստի և Ադոնցը կարծում է, վոր Մանկայոս-Մամիկը, հավանորեն, հայ զորավար էր Մամիկոնյանների տոհմից, տես Армения в эпоху Юстиниана, եջ 411 և 415։

3 Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 1 b (հրատ. Boissevain-ի)։

*էր մի ընտիր հեծելագունդ, վորին հանձնարարել էր պաշարված քաղաքից ազատել իր կանանոցն ու մեծագին գանձերը։ Մեմնոնի ու Ապպիանոսի մոտ պահպանված այդ տեղեկությունը, վոր անտես են արել հռոմեական աղբյուրները՝ թարգմանաբար մեջ եմ բերում առանց կրճատումների։*

*1. Մեմնոն, 56՝*

*«Յերբ Հայաստանը շատ կողմերից այսպես պաշարված էր՝ Տիգրանը մարդ ուղարկեց և իր մոտ հրավիրեց Միհրդատին․ Նա նույնպես զորք ուղարկեց Տիգրանակերտ քաղաքը, վորի մեջ գտնվում էր նրա կանանոցը։ Սրանք գալով այնտեղ և, կտրելով նետաձգությամբ հռոմեական ճամբարից դուրս գալու ճանապարհը՝ դուրս բերին գիշերով նախապես Տիգրանի կանանոցն ու թանգագին ամենաարժեքավոր իրերը։ Իսկ լուսաբացին հռոմայեցիները և նրանց հետ նաև թրակացիներն արիաբար կռվեցին, շատերին հայերից սպանեցին և կենդանի բռնվածներից շատերին էլ գերի վերցրին։ Սակայն այն, ինչ վոր նախապես ուղարկված էր՝ փրկվեց ու հանձնվեց Տիգրանին»։*

*2. Ապպիանոս, Միհրդատականք, 85՝*

*«Սեքստիլիուսը զբաղված էր հենց այս գործերով [Տիգրանակերտի պաշարմամբ], իսկ Տիգրանը, հավաքելով մոտ յերկու հարյուր հիսուն հազար հետևազոր և մոտ հիսուն հազար հեծելազոր՝ ուղարկեց նախ նրանցից մոտ վեց հազար հոգի Տիգրանակերտ։ Սրանք բռնի կերպով հռոմայեցիների միջով անցան, գնացին դեպի միջնաբերդը, դուրս բերին այնտեղից թագավորի կանանց և վերադարձան։ Իսկ զորքի մյուս մասով Լուկուլլոսի վրա հարձակվեց ինքը Տիգրանը։ Յեվ այդ ժամանակ նրա մոտ յեկավ առաջին անգամ տեսության Միհրդատը և խորհուրդ տվեց, վոր նա հռոմայեցիների հետ կռվի չբռնվի, այլ միայն հեծելազորով ասպատակե ու ավերե յերկիրը և աշխատե, յեթե կարելի յե, նրանց սովածության մատնել․ այնպես, ինչպես և իրեն Լուկուլլոսն առանց կռվի ուժասպառ էր արել Կիզիկոսի մոտ և վոչնչացրել էր զորքը»։*

*Մեմնոնը և Ապպիանոսը, ինչպես տեսնում ենք, համերաշխ ու միաբան վկայում են, վոր Տիգրանի ուղարկած զորամասը աջողությամբ կատարել էր նրա հանձնարարությունը և, պատռելով Տիգրանակերտը պաշարող հռոմեական զորաշղթան՝ դուրս էր բե-*

րել այնտեղից Թագավորի կանանոցը և գանձերը։ Հ. Աստուրյանը կարծում է սխալմամբ, որ այս դեպքը տեղի յեր ունեցել Ծոփքում, ուր հռոմայեցիները պաշարել եյին Բնաբեղ բերդը[1]։

Հայկական հեծելազորի այդ մեծ աջողությունը չի հիշատակել Պլուտարքոսը, հավանորեն, այն պատճառով, վոր նա, ինչպես մատնանշել է Ռեյնաքը[2], աննպատավարեր է համարել այդ դեպքը Լուկուլլոսի համար։

Վերոհիշյալ վկայություններից յերկրորդի մեջ հայկական զորամասի գիշերային գրոհը Ապպիանոսը դնում է Տիգրանի հակահարձակման ժամանակ 69 թվի աշնանը։ Սակայն Եքհարդը, հիմնվելով Մեմնոնի հաղորդած ավելի ստույգ տեղեկության վրա՝ յենթադրում է, վոր այդ գրոհը տեղի յեր ունեցել Տիգրանակերտից Տիգրանի հեռանալուց անմիջապես հետո, ուրեմն՝ 69 թվի գարնանը։ Եքհարդը միանգամայն իրավացի կերպով մատնանշում է, վոր Տիգրանակերտ ներս մտնելը համեմատաբար հեշտ կարող եր լինել և հնարավոր քաղաքի պաշարման սկզբում, յերբ դեռևս չեյին ավարտվել նրա շրջափակման աշխատանքները[3]։

Վերոհիշյալ վկայություններում առանձնապես ուշագրավ է նաև այն, վոր թե Մեմնոնը և թե Ապպիանոսը, հենվելով պարզապես փոքրասիական չեզոք սկզբնաղբյուրների վրա՝ հաղորդում են, վոր Միհրդատը հրավիրված է յեղել Տիգրանի մոտ վոչ թե Լուկուլլոսի Հայաստան արշավելուց առաջ, ինչպես յենթադրել են, համաձայն Պլուտարքոսի սխալ տեղեկության, բոլոր օտար և հայ պատմաբանները, այլ պատերազմը սկսվելուց հետո, յերբ Տիգրանը, հեռանալով իր պետության ներքին նահանգները՝ սկսել եր նախապատրաստվել պատերազմի, այսինքն՝ 69 թվի գարնանը և կամ ամառը։

Ապպիանոսը, ինչպես վերև տեսանք (վկ. 2), պարզ ու վորոշ վկայում է, վոր Միհրդատն առաջին անգամ տեսության եր յեկել Տիգրանի մոտ սրա Լուկուլլոսի վրա հարձակվելուց առաջ։ Նմանապես և Մեմնոնի վերոհիշյալ հատվածում (վկ. 1) Միհրդատի հրավիրումը Տիգրանի մոտ ցույց է տրված դարձյալ Տիգրանակերտի պաշարումից անմիջապես հետո, թեև նրա մոտ այդ տե-

---

[1] Տես Ա ս տ ո ւ ր յ ա ն, «Քաղաքական վերաբերությիւններ», Վենետիկ 1912, եջ 53։

[2] Տես Mithridate Eupator, եջ 360, ծան. 1։

[3] Տես K. E c k h a r d t, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, 1, եջ 92։

սակցության մասին մանրամասն տեղեկություններ են հաղորդված նաև նախորդ 55-րդ գլխում։

Ջնայած սակայն Մեմնոնի ու Ապպիանոսի միանգամայն արժանահավատ այս վկայություններին՝ բոլոր պատմագետները, ինչպես ասացինք, գերադասություն են տվել Պլուտարքոսի տեղեկություններին։ Նրանք ուշադրության չեն առել, վոր Պլուտարքոսը և կամ նրա սկզբնաղբյուրը դիտավորյալ կերպով խարդախել են պատմական իրական յեղելությունը, վորպեսզի թաքցնեն Լուկուլլոսի արշավանքի նենգ ու անիրավ բնույթը և ցույց տան, վոր Տիգրանն ու Միհրդատը, դեռ Լուկուլլոսի արշավանքը չսկսված՝ իրար հետ գաղտնի բանակցություններ եյին վարել և իրենք հենց նախապատրաստել եյին ու սկիզբ դրել պատերազմական գործողությունների։

Վոր Տիգրանի ու Միհրդատի տեսակցության մասին մեր նոր բացատրությունը միանգամայն ստույգ է՝ այդ պարզ ցույց է տալիս նաև ներքև մեջ բերված Մեմնոնի մի այլ կարևոր ցուցումը, վորը բավարարաչափ քննված ու ոգտագործված չէ յեղել պատմագիտական նախորդ յերկերում։

> «Միհրդատը,—պատմում է Մեմնոնը[1],—մնալով մեկ տարի ու ութն ամիս Հայաստանի կողմերում՝ դեռևս չէր ներկայացել և չէր տեսնվել Տիգրանի հետ։ Յեվ յերբ Տիգրանը խնդրեց, վոր Միհրդատը իրեն տեսության գա՝ նա նրան ընդունեց շքով և արժանի համարեց թագավորավայել պատիվների։ Մոտ յերեք որ նա գաղտնի խորհրդակցություն ունեցավ Միհրդատի հետ և ապա բարեկամաբար նրան պարգևեց փարթամ զգեստներ, տվեց տասը հազար հեծելազոր և ուղարկեց Պոնտոս»։

Մեմնոնի այս վկայության համաձայն Տիգրանի տեսակցությունը Միհրդատի հետ տեղի յեր ունեցել վերջինիս Հայաստան գալուց քսան ամիս հետո։ Արդ՝ վերև մենք տեսանք, վոր Միհրդատը Հայաստան յեկել եր 71 թվի աշնանը[2], ուրեմն՝ նրա տեսակցությունը Տիգրանի հետ, համաձայն Մեմնոնի այդ վկայության, պետք է տեղի ունեցած լիներ վոչ թե պատերազմից առաջ, այլ պատերազմը սկսվելուց հետո՝ 69 թվի գարնան վերջերին կամ ամառվա ամիսներին, ինչպես վերև մենք մատնանշել ենք։

---

[1] Տես Մ ե մ ն ո ն, գլ. 55։

[2] Համեմատե նաև R e i n a c h, Mithridate Eupator, էջ 348։

Վոր Տիգրանը միայն այժմ, մոտ յերկու տարուց հետո միայն, թագավորական շքով ընդունեց Միհրդատին՝ այդ միանգամայն հասկանալի յե, վորովհետև Լուկուլլոսի անսպասելի արշավանքից և պատերազմը սկսվելուց հետո Տիգրանի զգուշավոր ու զուսպ դիրքը Հռոմի հանդեպ, ինչպես և նրա չեզոքությունը, վորով նա մտածում եր պատերազմից խուսափել՝ կորցնում եյին այլևս իրենց իմաստը։ Յեվ բնական ե, վոր նա միայն այժմ, հասկացած լինելով իր քաղաքական սխալը՝ կարիք ուներ Միհրդատի օգնության ու գործակցության։

Տիգրանի ու Միհրդատի տեսակցության ժամանակ տեղի ունեցած զրույցի մասին Պլուտարքոսը տալիս ե դարձյալ խիստ գունավորված ու կասկածելի տեղեկություններ։

«Արդ՝ գաղտնի զրույցի ժամանակ,—ասում ե Պլուտարքոսը,—վոր ունեցան [Տիգրանն ու Միհրդատը]՝ նրանք կասկածանքներ իրար հայտնեցին ի վնաս բարեկամների և նրանց համարեցին դժբախտությունների պատճառ։ Դրանցից մեկն եր և Մետրոդորոս Սկեփսացին, վորն անհաճելի չեր իբրև խոսող և բազմակողմանի յեր իբրև գիտնական։ Մետրոդորոսի բարեկամությունը Միհրդատի հետ այնքան սերտ եր, վոր նա անվանվում եր թագավորի հայր։ Ինչպես պատմում են, սա Միհրդատի կողմից ուղարկված եր Տիգրանի մոտ հռոմայեցիների դեմ օգնություն խնդրելու։ Յեվ Տիգրանը նրան հարցրել եր. «Իսկ դու ինքդ, ով Մետրոդորոս, ինչ խորհուրդ կըտաս այդ մասին»։ Իսկ նա, կամ Տիգրանին օգտակար լինելու համար և կամ չցանկանալով վոր Միհրդատը փրկվի՝ ասել եր.—«Իբրև դեսպան՝ խորհուրդ եմ տալիս, իսկ իբրև խորհրդատու՝ խորհուրդ չեմ տալիս»։ Տիգրանն այս պատմեց Միհրդատին և մեղադրեց նրան, չմտածելով վոր դրանով վտանգի յե յենթարկվում Մետրոդորոսը։ Յեվ սա իսկույնևեթ սպանվեց, իսկ Տիգրանը զղջաց. բայց մտածեց, վոր ինքը չե միայն պատճառ Մետրոդորոսի դժբախտության, այլ այդ բանի խթան և հանդիսացել նաև Միհրդատի ատելությունը նրա նկատմամբ։ Վաղուց ի վեր, իրոք, Միհրդատը նրան թշնամացել եր և այդ ակներև յեղավ, յերբ բռնագրավեցին Միհրդատի գաղտնի գրությունները, վորոնց մեջ եր նաև Մետրոդորոսի սպանման կարգադրությունը։ Սրա դիակը Տիգրանը մեծ շքով թաղել տվեց. նա վոչ մի

ծախս չխնայեց մեռածի համար. որին կենդանության ժամանակ ինքը մատնել էր»[1]։

Պլուտարքոսի ընդարձակ այս վկայության մեջ, որը գրված է Տիգրանին վարկաբեկելու հատուկ նպատակով, սարքովի են ու սուտ, իմ կարծիքով, նախ և առաջ, Մետրոդորոսի սպանության վերաբերյալ տեղեկությունը։ Ստրաբոնի մի այլ վկայությունից, որ ներքև մեջ ենք բերելու, պարզ յերևում է, որ Մետրոդորոսը վախճանվել էր 71 թվին։ Ուրեմն՝ շատ պարզ է, որ նա չէր կարող սպանված լինել Տիգրանի ու Միհրդատի տեսակցությունից հետո՝ 69 թվին (նախ քան մեր թվ.)։

Ստրաբոնի վկայությունը թարգմանաբար մեջ եմ բերում ամբողջությամբ։

«Յեվ [Սկեփսացի յեր] բացի նրանից [Դեմետրիոսից],— ասում է Ստրաբոնը[2],—Մետրոդորոսը, որը փիլիսոփա յեր և անցել էր քաղաքական կյանքի ասպարեզ։ Լինելով իր գրվածքներում առավելապես ճարտասան՝ նա գործ էր ածում ինչ որ անսովոր նոր ոճ և զարմանք էր պատճառում շատերին։ Շքեղ հարսանիքի մեծամոլության պատճառով, որ տեղի յեր ունեցել Քաղկեդոնում՝ նա աղքատ էր և համարվում էր քաղկեդոնացի։ Ծառայության մտնելով Միհրդատ Եվպատորի մոտ՝ նա իր կնոջ հետ գնաց նրա մոտ Պոնտոս. առանձնապես հարգված էր այստեղ և պաշտոն էր ստացել դատարանում, որի վճռի դեմ դատապարտվածն իրավունք չուներ վերադատության գանգատ տալու թագավորին։ Սակայն նրա բախտավորությունը հարատև չեղավ, այլ նա՝ զգալով իր դեմ անարդար մարդկանց թշնամությունը՝ թագավորի մոտից հեռացավ և գնաց իբրև դեսպան Տիգրան արմենի մոտ։ Իսկ սա դժկամությամբ յետ ուղարկեց նրան Եվպատորի մոտ, որն արդեն փախչում էր հայրենի յերկրից։ Մետրոդորոսը ճանապարհին մահացել էր՝ կամ թագավորի հրամանով և կամ հիվանդությունից։ Հաղորդում են թե այս և թե մյուս տեղեկությունը»։

Ստրաբոնը, ինչպես տեսնում ենք, պարզ վկայում է, որ Մետրոդորոսը վախճանվել էր Տիգրանի մոտից Պոնտոս վերադառնալիս, յերբ Միհրդատն արդեն փախչում էր հայրենի յերկրից, այսինքն՝ 71 թվին։ Ուրեմն՝ միանգամայն սխալ են Ռեյնաքի,

---

[1] Տես Պլուտ., Լուկուլ. 22, 2—6։

XIII, 1, 55:

Էքհարդի և այլ պատմագետների պնդումները[1], վորոնք՝ հավատ ընծայելով Պլուտարքոսին՝ Մետրոդորոսի սպանությունը յենթադրել են Տիգրանի ու Միհրդատի հանդիպումից հետո, վորը տեղի յեր ունեցել 69 թվին (Նախ ք. մեր թ.)։

Պլուտարքոսի ու Ստրաբոնի մոտ ըստ իս կասկածելի յեն և անհավատալի նաև նրանց վկայությունները Մետրոդորոսի սպանության մասին։ Այդ տեղեկությունները, վոր վերև մեջ բերված վկայություններում խիստ հակասական են՝ բղխում են, ըստ յերևույթին, հակամիհրդատյան աղբյուրներից և հնարված են, հավանորեն, Միհրդատին վարկաբեկելու և անարգելու համար։ Ինձ թվում է, վոր ավելի հավանական կարելի յե համարել Ստրաբոնի ձեռքի տակ յեղած մյուս աղբյուրների տեղեկությունը, վորոնք վոչինչ չգիտեն Մետրոդորոսի սպանության մասին և վկայում են, վոր նա մահացել եր հիվանդությունից[2]։

Ուշադրավ է նաև, վոր Պլուտարքոսի և Մեմնոնի վկայությունններն իրար չեն համապատասխանում նույնպես մի այլ կարևոր կետում։ Մեմնոնը մատնանշում է, վոր յերեք որ տևող խորհրդակցությունից հետո Միհրդատը, ստանալով Տիգրանից տասը հազար հեծելազոր՝ գնաց Պոնտոս, իսկ Պլուտարքոսն այդ տեղեկությունը չունի։ Սակայն նա մի այլ հատվածում, վոր ներքև մեջ ենք բերում, հաղորդում է, վոր խորհրդակցությունից հետո Տիգրանը և Միհրդատը մտադիր եյին Կիլիկիայի ու Լիկաոնիայի վրայով ներխուժել հռոմեական Փոքր Ասիա։

> «Յերբ Լուկուլլոսն իմացավ,—պատմում է Պլուտարքոսը,—վոր Միհրդատը և Տիգրանը դեռ նոր են տեղափոխելու իրենց զորքերը Լիկաոնիա և Կիլիկիա, վորպեսզի իրենք նախապես ներխուժեն Ասիա՝ նա զարմացավ, վոր Տիգրան արմենը, վորը մտադրություն եր ունեցել հարձակվելու հռոմայեցիների վրա՝ Միհրդատին պատերազմի համար չեր օգտագործել, յերբ նա դեռ հզոր եր, և չեր միացրել իր ուժերը նրա մեծ ուժերի հետ, այլ թույլ եր տվել, վոր դրանք պարտվեն ու ջախջախվեն. իսկ այժմ, յերբ այդ ուժերն անկարելի

---

[1] Տես Reinach, Mithridate Eupator, եջ 357. Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Bd. X, 1, եջ 89 և ուրիշ.։

[2] Ռեյնաքը, հիմնվելով, ըստ յերևույթին, ինչ վոր աղբյուրի վրա, վոր ինձ անծանոթ է, յենթադրում է, վոր Մետրոդորոսն իրեն թունավորել է հանկարծամահ եր յեղել, տես Mithridate Eupator, եջ 357։

*յե արդեն վերականգնել՝ նա պատերազմը սկսել է չնչին հույսերով, մատնելով իրեն կործանման»*[1]։

*Պլուտարքոսի այս տեղեկությունը, որը ստույգ ու արժանահավատ է համարվել պատմագիտական բոլոր հին և նոր յերկերում*[2], *վոչ միայն անհավանական է, այլ պարզապես սխալ է։ Տիգրանը, ինչպես վերև տեսանք, վոչ միայն չէր նախապատրաստվել պատերազմի, այլև չէր սպասում, վոր Հռոմը պատերազմ և սկսելու նրա դեմ։ Շատ պարզ է, բացի այդ, վոր Տիգրանը և Միհրդատը, վորոնց հանդիպումը և խորհրդակցությունը տեղի եյին ունեցել Լուկուլլոսի արշավանքից ու Տիգրանակերտի պաշարումից հետո՝ չեյին կարող այդ արշավանքից առաջ ծրագրած լինել նախահարձակ լինելու և ներխուժելու հռոմեական Փոքր Ասիա։*

*Պլուտարքոսը կամ այն աղբյուրները, վորոնցից նա օգտվել եր՝ ցանկացել են, ըստ յերևույթին, սարքովի այս տեղեկության միջոցով պատերազմի պատասխանատվությունը դնել Տիգրանի ու Միհրդատի վրա և ուզեցել են, հավանորեն, արդարացնել Լուկուլլոսի նենգ հարձակումը Հայաստանի վրա, վոր նա սկսել եր հանկարծակի ու գաղտնաբար և առանց պատերազմ հայտարարելու։*

---

[1] *Տես Պլուտ., Լուկուլ., 23, 6։*

[2] *Տես* Моммсен, Римская история, т. III, *եջ 56*, Reinach, Mithridate Eupator, *եջ 358*, Халатьянц, Очерк истории Армении, *եջ 191 և ուրիշ.։*

# 12. ՄԵԾ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՄՈՏ

*Տիգրանակերտ քաղաքը, որը պաշարված էր 69 թվի գարնանը՝ ամիսներ շարունակ դիմացավ պաշարմանը և համառորեն դիմադրեց հռոմայեցիներին, սպասելով որ իրեն ոգնության կըգա Տիգրանի նոր կազմակերպված զորաբանակը։ Իսկ այդ ժամանակ Տիգրանը հետզհետե իր զորքերը հավաքեց զանազան շրջաններից, նաև իրեն ստորադրված վասսալական թագավորություններից և իշխանություններից։ Նրան ոգնության յեկան, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[1], Ատրպատականի ու Ադիաբենի թագավորները, նաև զորամասեր Աղվանքից, Վրաստանից, Արաբիայից և ուրիշ յերկրներից։*

*69 թվի աշնանը Տիգրանը և նրա զորաբանակը ճանապարհ ընկան և Տավրոսյան լեռներով իջան հարավ ազատելու պաշարված Տիգրանակերտը։ Տիգրանի այս ճանապարհը Էքհարդը յենթադրում է Մշո դաշտից դեպի այժմյան Ներջիկ և այնտեղից դեպի ձախ շեղվելով՝ Բատման-սուի ձախ կողմով մինչև Ֆարկինսուի և Բատման-սուի գետախառնուրդը[2]։*

*Հենց նույն այս ժամանակ Տիգրանի մոտ յեկան, ինչպես վկայում են Մեմնոնը և Պլուտաքքոսը, Միհրդատի ուղարկած պատգամավորությունը և նրա հմուտ ու փորձված զորավար Տաքսիլեսը։ Սրանք նախազգուշացրին Տիգրանին, վոր նա խուսափի վճռական պատերազմից, վորովհետև հռոմեական մշտական ու մարզված զորքը գրեթե անպարտելի յէ։ Նրանք խորհուրդ տվին, վոր նա արգելե, ըստ կարելույն, հռոմեական զորքի պարենավորումը և նրանց մատնե սովածության[3]։*

---

[1] *Տես Լուկուլ., 26, 6։*

[2] *Տես* E c k h a r d t, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 1, *էջ 94։*

[3] *Ապպիանոսի վկայությունը, վոր Միհրդատն ինքն էլ էր մասնակցել Տիգրանակերտի ճակատամարտին և վոր ինքն էր տվել այդ խորհուրդը (տես Միհրդատական., 85)՝ չի համապատասխանում Պլուտարքոսի և Մեմնոնի վկայություններին (տես Պ լ ու տ. Լուկ., 29, 1 և Մ ե մ ն., 38), ուստի և համարվում է անհավանական։*

Տիգրանին դժվար եր սակայն հետևել այդ խորհուրդներին, վորովհետև նա, ըստ յերևույթին, չեր ուզում և չեր կարող, յերկարացնելով պատերազմը՝ զոհ բերել Տիգրանակերտ քաղաքը, վորը կարիք ուներ շտապ ու անհապաղ ոգնության։

Ինչպես վերև մենք տեսանք, հելլենիստական այս նոր քաղաքի կառուցման վրա, վոր կուլտուրական մեծ ու հոյակապ մի գործ եր՝ ծախսված եյին ու գործադրված հսկայական միջոցներ ու աշխատանք։ Այս քաղաքը, համաձայն Տիգրանի ծրագրի, լինելու յեր նրա պետության լուսատու կենտրոնը և հետզհետե հեղաշրջելու և նորոգելու յեր նրա հայրենի յերկրի հետամնաց նահապետական կյանքը։ Տիգրանակերտը, ինչպես ասացինք, նպաստելու յեր նաև առևտրի ու արդյունագործության զարգացմանը Հայաստանում և ոժանդակելու յեր նույնպես հելլենիստական քաղաքակրթության և հելլենական արվեստի ու գիտության տարածմանը։ Պարզ ե, ուրեմն, ու հասկանալի, թե ինչու Տիգրանը չհետևեց Միհրդատի ու նրա զորավարի խորհրդին և, ոգնության շտապելով Տիգրանակերտին, ուզեց դադարեցնել նրա պաշարումը։

Ուշագրավ ե, վոր Լուկուլլոսն ինքը ևս, ինչպես վկայում ե Պլուտարքոսը[1], պաշարելով Տիգրանակերտը՝ հասկացել ու նախատեսել եր, վոր Տիգրանը չե կարող այդ հանդուրժել և անպայման գալու յե և ճակատամարտ ե տալու իր նոր մայրաքաղաքը փրկելու համար։

69 թվի հոկտեմբեր ամսի սկզբներին Տիգրանի զորաբանակը մոտեցավ Տիգրանակերտին և ընդհարումը հռոմայեցիների հետ դառավ անխուսափելի։

Տիգրանակերտի ճակատամարտը տեղի յեր ունեցել, ինչպես յերևում ե սկզբնաղբյուրների վկայություններից՝ Նիկեփորիոն գետի մոտ, վորից մոտավորապես 750 մետր հեռավորության վրա գտնվում եր մի ցած բլրակ։ Պլուտարքոսը վկայում ե, վոր պաշարված Տիգրանակերտցիները տեսել և ցույց եյին տվել հռոմայեցիներին ռազմադաշտի տեղը, ուր բանակել եյին Տիգրանի զորքերը։

Հիմնվելով սկզբնաղբյուրների և, գլխավորապես, Պլուտարքոսի նկարագրության ու ցուցումների վրա՝ ճակատամարտի տեղը Ֆարկինի մոտ յենթադրաբար վորոշել ե գերմանական գիտնական Բելքը, վորի հոդվածից[2] ավելորդ չեմ համարում մեջ բերել մի քանի հատվածներ։

«Ֆարկին-սուի լայնանիստ ձորադաշտից հանդարտ ցած

[1] Տես Լուկուլ., 26, 4։

[2] Տես Zeitschrift für Ethnologie, 1899, եջ 272 և այլն։

իջնելով դեպի հարավ-արևելք,—ասում է Բելքը,—մոտ քսան կիլոմետր անցնելուց հետո՝ հասնում ենք մի մեծ դաշտ, ջրառատ Բատման-սուի գետադաշտը, վորը հյուսիսում սկըսվում է մեր գտնված տեղից մոտ 20 կիլոմետր հեռավորության վրա գտնվող մեծ կամուրջի տակից և շարունակվում է այնուհետև 12—15 կիլոմետր դեպի հարավ, և ապա վերջանում է։ Դաշտի լայնությունը տարբեր տեղերում մեկից մինչև յերեք կիլոմետր է.....։ Սա կատարյալ մի հարթավայր է առանց վորևե յելևեջների և այնքան ընդարձակ, վոր կարող է իբրև բանակատեղ ծառայել ամենաստվար զորքի։ Իսկ գետը... վորը պետք է անցներ Լուկուլլոսը՝ Բատման-սուն էր, վորը 30, 40 և կամ 50 մետր լայնությամբ, հանդարտ ու անաղմուկ, սակայն սրընթաց՝ հոսում և թափում էր իր հորդառատ ջրերը ավելի փոքր Դիարբեքիրի գետի մեջ...... Ուղիղ [Բատման-սուի] դեմը... գտնվում է մի մեծ սարահարթ, վորը գրեթե ղահավիժորեն իջնում է արևմտյան ուղղությամբ դեպի Բատման-սուն, վորը սարահարթի ստորոտից հեռու չէ գտնվում մոտ 5—6 կիլոմետր, իսկ հարավ-արևմտյան ուղղությամբ ցածրանում է, ընդհակառակը, աստիճանաբար դեպի գետը... Այստեղ հենց, այս մեղմ սարալանջի վրա, բանակել էր Տիգրանի մեծ զորքը, վորը 150—200 մետր համեմատական բարձրություն ունեցող այս կետից կարող էր տեսնել Տիգրանակերտը և պաշարող զորքի վրանները։ Նմանապես և պաշարվածները կարող եյին սրանց տեսնել. վորովհետև այն տեղից պարզ տեսնվում է ամբողջ տարածությունը՝ սարահարթը, մեղմ սարալանջը, Բատման-սուն և հարթավայրը»։

Բելքի այս բացատրության համաձայն, վոր ընդունելի չէ համարվում, Տիգրանակերտի ճակատամարտի տեղը յենթադրվում է, ուրեմն, Ֆարկին քաղաքի հարավ-արևելյան շրջանում, այժմյան Ֆարկին-սուի և Բատման-սուի միավորման մոտ գտնվող ձորադաշտում։ Վոր ճակատամարտը տեղի չէր ունեցել, իրոք, այժմյան Ֆարկին-սուի մոտ՝ այդ միանգամայն անկասկածելի չէ, վորովհետև դասական հեղինակների մոտ այդ գետն անվանվում է Նիկեփորիոն կամ Նիկեփորիոս, այսինքն՝ «Հաղթաբեր», իսկ այդ անունը, ինչպես մատնանշել է Մարկվարտը[1], նա ստացել էր Լուկուլլոսի հաղթության պատճառով։

---

[1] Տես Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, էջ 132։

*Երբ հայկական զորքն արդեն Տիգրանակերտի մոտ էր գտընվում՝ Լուկուլլոսն անհրաժեշտ համարեց, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[1], գումարել ռազմական խորհուրդ։ Խորհրդակցության ժամանակ ժողովականներից ոմանք առաջարկեցին վերացնել քաղաքի պաշարումը և բոլոր ուժերով գնալ թշնամու դեմ։ Իսկ ոմանք, վտանգավոր համարելով Տիգրանակերտի քաղաքապահ զորքի ներկայությունն իրենց թիկունքում՝ խորհուրդ տվին մնալ Տիգրանակերտի մոտ և ընդունել ճակատամարտը նրա պարիսպների տակ։*

*Պլուտարքոսի ասելով՝ Լուկուլլոսն այդ կարծիքներն ընդունելի չհամարեց և ինքը վճռեց զորքի մի մասով շարունակել Տիգրանակերտի պաշարումը, իսկ մյուս մասով արշավել Տիգրանի դեմ։ Տիգրանակերտի առջև նա թողեց 6000 զորք, նաև իր զորապետներից Մուրենային, իսկ մնացած բանակով, որը բաղկացած էր ըստ Պլուտարքոսի 10.000 հետևազորից, 3000 հեծելազորից և 1000 թեթևազեններից, ինքը գնաց Տիգրանի դեմ։*

*Պլուտարքոսի այս թվերը և, ընդհանրապես, հնագույն աղբյուրների համապատասխան նաև մյուս վկայությունները հռոմեական ու հայկական զորքերի թվի մասին՝ կարոտ են, ինչպես իրավամբ մատնանշվում է նորագույն ուսումնասիրություններում, ուշադիր ու մանրազննին քննության ու ճշտման։ Ամենակարևորներն այդ վկայություններից, որ մեծ չափով իրար հակասում են, մեջ ենք բերում ներքև մանրամասն կերպով։*

Ա. Հայաստան արշավող հռոմեական զորքի թիվը.

1. *Պլուտարքոս* (Lucullus, 24, 1)՝
   *12.000 հետևակ և մոտ 3000 ձիավոր։*
2. *Եվտրոպիոս* (Breviarium, VI, 9, 1)՝
   *18.000 ռազմիկ* (milites):
3. *Ապպիանոս* (Mithrid., 84)՝
   *յերկու ընտիր լեգեոն և 500 ձիավոր։*

Բ. Հռոմեական զորքի թիվը Տիգրանակերտի կռվում.

1. *Պլուտարքոս* (Lucullus, 28, 2)՝
   *24 վաշտ* (cohors)՝ *ոչ ավել քան 10.000 ծանրազեն, ամբողջ հեծելազորը, այսինքն՝ 3000 ձիավոր և 1000 պարսավոր ու աղեղնավոր։*

[1] *Տես Լուկուլ., 27, 1։*

2. *Փրոնտինուս* (Strateg., II, 1, 14)՝
*15.000 զինվոր* (armati)։

Գ. Հայ զորքի թիվը Տիգրանակերտի կռվում.

1. *Պլուտարքոս* (Lucullus, 26, 9)՝
*20.000 աղեղնավոր և պարսավոր, 55.000 ձիավոր, վորոնցից 17.000 զրահավոր, 150.000 ծանրազեն հետևակ, 35.000 կամուրջ ու ճանապարհ շինող և այլ աշխատավորներ։*
2. *Ապպիանոս* (Mithr., 85)՝
*250.000 հետևակ և 50.000 ձիավոր։*
3. *Եվտրոպիուս* (Breviarium, VI, 9, 1)՝
*7.500 ձիավոր զրահավոր և 100.000 հետևակ։*
4. *Մեմնոն, գլ. 57՝*
*80.000 զորք։*
5. *Փլեգոն*[1] (Olympiades, fr. 12, Müller, Fr. H. Gr. III, 606)՝ *30.000 ձիավոր և 40.000 հետևակ։*

*Պատմագիտական ուսումնասիրություններից շատերում*[2] *վստահելի ու արժանահավատ են համարել, գլխավորապես, Պլուտարքոսի վերոհիշյալ թվերը, վորովհետև սա օգտված է յեղել հռոմեական սկզբնաղբյուրներից՝ Սալլուստիուսից, Տիտոս Լիվիուսից և, հավանորեն, նաև այն պաշտոնական գրություններից, վոր Տիգրանակերտի ճակատամարտից հետո Լուկուլլոսն ուղարկած է յեղել ծերակույտին։ Հենվելով այդ թվական տվյալների, ինչպես և Պլուտարքոսի մոտ մեջ բերված Տիտոս Լիվիուսի վկայության վրա*[3] *Մոմզենը և նրան հետևելով նաև ուրիշ պատմագետներ Տիգրանի զորքի թիվը համարել են հռոմեական զորքի թվից քսան անգամ ավելի։*

*Սակայն պատմագիտական ավելի նոր ուսումնասիրություններում, որինակ՝ Ռեյնաքի, Ֆեռերոյի, Եգհարդի յերկերում՝ Պլուտարքոսի վկայությունը, հատկապես Տիգրանի զորքերի թվի*

---

[1] *Փլեգոնի այս վկայությունը վերաբերվում է, Եգհարդի կարծիքով, վոչ թե Արածանիի, այլ Տիգրանակերտի ճակատամարտին, տես* Klio, Bd. X, Heft 1, *էջ 98, ծան. 5։*

[2] *Համեմատե* Моммсен, Римская история, III, *էջ 57,* Нич, История римской республики, Москва 1908 *և ուրիշները։*

[3] *Տիտոս Լիվիուսի ասելով՝ Տիգրանակերտի ճակատամարտում յուրաքանչյուր հռոմայեցի ունեցել է իր դեմ քսան թշնամի, տես Պլուտարքոս Լուկուլ., 28, 12։*

մասին, համարվում ե ակներև մի չափազանցություն[1] և գերադասություն ե տրվում փոքրասիական չնչին հեղինակների, Մեմնոնի և Փլեգոն Տրալլացու, վերոհիշյալ վկայություններին, ըստ որոնց հայ բանակի զորաթիվը ցույց ե տրված ոչ թե 260.000, այլ միայն 70.000 կամ 80.000։ Որ այս վերջին թվերը նախընտրելի յեն՝ այդ, իհարկե, անտարակուսելի յե, որովհետև, ինչպես հայտնի յե, հռոմեական զորավարներն իրենց պաշտոնական զեկուցագրերում թշնամու քանակի մասին տալիս եյին միշտ չափազանցված ու սուտ տեղեկություններ։ Եքհարդը մատնանշում ե, բացի այդ, որ տեղափոխել Տավրոսյան լեռներով ու նեղ արահետներով 260.000 զորք գրեթե անհնարին եր։

Հռոմեական զորքի թվի նկատմամբ գրեթե բոլոր պատմագետները համամիտ են և, հենվելով Պլուտարքոսի և Փրոնտինուսի վերոհիշյալ վկայությունների վրա՝ Տիգրանակերտի կռվին մասնակցողների ընդհանուր թիվը յենթադրում են 14.000–15.000։ Սակայն Ռեյնաքը և Եքհարդն իրավացի կերպով մատնացույց են արել[2], որ Պլուտարքոսի վկայություններն իրար չեն բռնում։ Տիգրանակերտի ճակատամարտի առթիվ Պլուտարքոսի մոտ տրված են, ինչպես տեսանք, հետևյալ թվերը՝ 6000 զորք Մուրենայի, իսկ Լուկուլլոսի հետ՝ 10.000 ծանրազեն, 3000 հեծելազոր և 1000 պարսավոր ու աղեղնավոր, ուրեմն՝ ընդամենը 20.000 զորք։ Իսկ Հայաստան արշավող հռոմեական ամբողջ զորքի քանակը նրա մոտ նշանակված ե՝ 12.000 հետևակ և 3000 հեծելազոր, ընդամենը՝ 15.000։ Եքհարդի կարծիքով, այս վերջին թվի մեջ չեն հիշատակված Մուրենայի 6000 զորքը և 1000 թեթևազենները։ Այս ուղղումն անելուց հետո Հայաստան արշավող հռոմեական զորքի թիվը ստացվում ե նրա մոտ ոչ թե 15.000, այլ 22.000։

Յեթե ընդունելու լինենք Եքհարդի ուղղումը հավանական, ինձ թվում ե, այնուամենայնիվ դժվար ե համաձայնել, որ Լուկուլլոսը հնարավոր եր համարել փոքրաթիվ այդ ուժերով ռազմական մեծ արշավանք սկսել ընդդեմ Տիգրան Բ-ի, որին, ինչպես նա շատ լավ գիտեր, միանալու յեր նաև Միհրդատը։ Պատմա-

---

[1] Տես Reinach, Mithridate Eupator, եջ 360, Ферреро, Величие и падение Рима, I, եջ 182, Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 1, եջ 96—100։

[2] Տես Reinach, Mithridate Eupator, եջ 358, ծան. 1 և Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 1, եջ 78—82։

բանները, ինչպես շատ ճիշտ նկատել է Ասատուրյանը[1], աչքաթող են արել, վոր հռոմեական աղբյուրները մատնանշել են միմիայն հռոմեական զորքերի թիվը, բայց չեն հիշատակել Հռոմի դաշնակիցների փոքրասիական զորքերը։ Իսկ վոր այդ ոգնական զորքերը գործոն մասնակցություն եյին ունեցել հայկական կռիվներին՝ այդ յերևում է հենց իրենց իսկ հռոմեական կամ նաև այլ աղբյուրներից։

Ստրաբոնի ուշադրավ մի վկայությունից դժվար չե, որինակ, կռահել, վոր Լուկուլլոսը, հավանորեն, ոգնական զորքեր եր ստացել Կապպադովկիայի Արիոբարզան թագավորից, վորին ռազմական այդ գործակցության համար նա տվել եր իբրև վարձատրություն Ծոփաց յերկրում գտնվող նշանավոր Տոմիսա բերդը[2]։ Մենք կտեսնենք ներքև, վոր Տիգրանակերտի ճակատամարտին մասնակցել եյին թրակացի և գալատացի թեթևազեն հեծելագունդերը, վորոնք, հավանորեն, նույնպես ոժանդակ զորքեր եյին և չեյին համարվում բաղադրիչ մասեր հռոմեական վերոհիշյալ զորքի։ Բացի այդ, Սալլուստիուսի մոտ ևս իբրև ոգնական զորքեր հիշատակված են բյութանացիները, վորոնք 68 թվի աշնանը հռոմեական մյուս զորամասերից առաջ հասել եյին Արածանիի գետափին[3]։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, փոքրասիական ոգնական ու դաշնակից զորքերի մասնակցությունը հայկական կռիվներին միանգամայն անժխտելի յե։ Ոգնական այդ զորքերը, վորոնցից վորոշակի հիշատակված են գալատացիները, թրակացիները և բյութանացիները՝ կազմում եյին, ըստ յերևույթին, Լուկուլլոսի զորաբանակի նշանակալի մասը։ Ուստի և մենք սխալված չենք լինի, յեթե Լուկուլլոսի ամբողջ զորքի թիվը ընդունենք Տիգրանակերտի ճակատամարտում վոչ թե 15.000 կամ 22.000, ինչպես այդ յենթադրվում է պատմագիտական յերկերում, այլ անհամեմատ ավելի։

Այսպիսով հռոմեական ու հայկական բանակների վերոհիշյալ մեկ առ քսան հարաբերությունը, վոր մատնանշված է Մոմզենի, Նիչի և այլ պատմագետների մոտ, ինչպես տեսնում ենք, ակներև մի սխալ է։ Ընդունելով վոր ոգնական դաշնակից զորամասերի

[1] Տես «Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմայ», էջ 338—343։

[2] Տես Ստրաբոն, XII, 2, 1 (535)։

[3] Տես Sallustius, IV, fragm. 74:

թիվը պակաս չեր լինի հռոմեական զորքերի թվից՝ դժվար չե համոզվել, որ Տիգրանի զորքը կարող եր Լուկուլլոսի զորքից ավելի լինել ոչ թե քսան, այլ առ առավելն յերկու անգամ։

Տիգրանակերտի ճակատամարտը տեղի ունեցավ, ինչպես հայտնի յե, 69 թվի հոկտեմբերի 6-ին։ Մեծ այդ ճակատամարտի մասին կարևորագույն աղբյուրներն են՝ Պլուտարքոսը, Ապպիանոսը, Մեմնոնը և Ֆրոնտինուսը, վորոնք թեև հիմնական վորոշ կետերում իրար չեն հակասում, սակայն մանրամասնությունների նկատմամբ իրար հետ բոլորովին անհաշտելի յեն։ Նրանց տարաձայնությունները, ինչպես կտեսնենք, այնքան են մեծ, վոր միանգամայն անհնարին ե մանրամասնաբար վերականգնել ճակատամարտի ամբողջ ընթացքը, թեև այդ վստահ ու անվերապահ կերպով արված ե պատմագիտական բազմաթիվ յերկերում[1]։

Ճակատամարտի ամենամանրամասն նկարագրությունը տվել ե Պլուտարքոսը, վորի պատմության այդ մասը համեմված ե այնպիսի թատերական ու դրամատիկական միջադեպերով, վորոնք հավանական ցուցանիշներ են համապատասխան այդ հատվածների անհավաստության։ Նման կասկածելի զրույցներից ե, իմ կարծիքով, ճակատամարտի նկարագրության հենց սկզբում տրված նրա հետևյալ տեղեկությունը։ Ճակատամարտը դեռ չսկսված, պատմում ե Պլուտարքոսը, յերբ Լուկուլլոսի զորքը բանակ եր դրում գետի մոտ՝ Տիգրանը, տեսնելով փոքրաթիվ այդ զորքը՝ հեգնանքով բացականչել եր,—«Յեթե դրանք իբրև դեսպաններ են յեկել՝ շատ են, իսկ յեթե իբրև զինվորներ՝ քիչ են»[2]։ Այս վկայությունը չե կարող ճիշտ լինել, վորովհետև Պլուտարքոսի մատնանշած հռոմեական ու հայկական զորքերի վերոհիշյալ թվական հարաբերությունը, ինչպես տեսանք, չափազանցված ու սխալ ե։

«Լուսաբացին,—ասում ե այնուհետև Պլուտարքոսը,— Լուկուլլոսը ճամբարից դուրս բերեց իր զինված զորքը։ Բարբարոսական զորքերը գտնվում եյին գետի արևելյան կողմում, և վորովհետև սրա հոսանքը շեղվում եր դեպի արև-

---

1 Տես Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, 1, եջ 100—104, Drumann, Geschichte Roms, Bd. IV, Berlin 1899, եջ 147 և այլն, Sachau, Ueber die Lage von Tigranokerta, Abhandl. der kgl. Akademie der Wissensch. zu Berlin, 1880, և ուրիշ։

2 Նույն այս վկայությունն ունի նաև Մեմնոնը (գլ. 57)։ Նրա մոտ Տիգրանակերտի ճակատամարտին վերաբերող ամբողջ հաղորդագրությունը հիմնըված ե, ըստ յերևույթին, հռոմեական աղբյուրների վրա։

ժուտք, վորտեղ նա հեշտությամբ անցանելի յեր, և վորովհետև Լուկուլլոսը հենց այդ ուղղությամբ արագորեն տանում եր իր զորքը թշնամու դեմ՝ Տիգրանը կարծեց, վոր նա նահանջում է։ Տիգրանը ծիծաղելով կանչեց Տաքսիլեսին և ասաց,—«Միթե դու չես տեսնում, վոր հռոմեական զորքերը փախչում են առանց ճակատ տալու»։ Իսկ Տաքսիլեսը պատասխանեց,—«Յես կուզենայի, ով թագավոր, վոր այդպիսի մի բան քո բախտից հանկարծ պատահեր, սակայն ճանապարհ գնալիս՝ վոչ փայլուն հանդերձանքներ են հագնում, վոչ էլ մաքրված վահաններ ու մերկ սաղավարտներ. ինչպես է, վոր այժմ դուրս են հանված զենքերը կաշվե պատյանների միջից. այդ պայծառությունը սակայն սպասվող ճակատամարտի է, անշուշտ, թշնամու դեմ յելուստի համար է[1]»։

Տիգրանակերտի մեծ ճակատամարտը, վոր այնուհետև տեղի ունեցավ գետի ձախ ափին, նկարագրել են, ինչպես ասացինք, Պլուտարքոսը, Ապպիանոսը, Մեմնոնը և Փրոնտինուսը, վորոնցից հատկապես առաջին յերկուսի ընդարձակ ու հիմնական վկայությունններն այնքան խառնակ են ու իրար հակասող, վոր միանգամայն անհնարին է տալ նրանց ոգնությամբ ճակատամարտի ու պատերազմական իրադարձությունների ճշգրիտ ու մանրամասն պատկերը։ Ցույց տալու համար այդ հակասությունները, վոր ներքև քննության ենք առնելու՝ մեջ ենք բերում վերոհիշյալ հեղինակների նկարագրությունները բառացի թարգմանությամբ։

1. Պլուտարքոս, Լուկուլլոս, 27, 7—9 և 28, 1—9՝

«Ուրեմն՝ մեծ աղմուկով զորքը դասավորվեց այսպես մարտակարգով։ Ինքը թագավորը վերցրեց կենտրոնը, Ադիաբենի թագավորին տվեց ձախ թևը, իսկ մեդացիների թագավորին՝ աջ թևը. առջևում սրա մոտ գտնվում եր նաև մեծագույն մասը զրահավոր հեծելազորի։ Յերբ Լուկուլլոսն ուզեց գետն անցնել՝ զորագլուխներից վոմանք նրան խորհուրդ տվին զգուշանալ, վորովհետև այդ որն այն դժբախտ որերից մեկն եր, վորն անվանվում է սև. այդ որը կոտորվել եր Կեպիոնոսի հետ միասին հռոմեական զորքը, վորն ընդհարում եր ունեցել կիմբրացիների հետ։ Լուկուլլոսը սակայն նրանց պատասխանեց և ասաց հետևյալ անմոռանալի

[1] Տես Պլուտ., Լուկուլ., 27։

խոսքերը,—«Իսկ ես հռոմայեցիների համար այդ օրը կդարձնեմ բախտավոր»։ Եվ եր այդ հոկտեմբերյան Նոնների նախորեյին [=6 հոկտ.]։

Այդ խոսքերն ասելուց հետո՝ նա հրամայեց աչալուրջ լինել, անցավ այնուհետև գետը և թշնամիների դեմ գնաց առաջինը։ Նա հագել եր յերկաթե թեփուկապատ շողշողուն զրահ, ծոպազարդ թիկնոց և հանել եր անմիջապես մերկացրած սուրը, վորովհետև պետք ե իսկույն նետաձիգ մարդկանց դեմ գնար ձեռնակռվի և պետք ե արագ ու բուռն գրոհով գրավեր նետամատչելի տարածությունը։ Երբ նա ապա տեսավ, վոր զրահավոր հեծելազորը, վորի մասին շատ եյին խոսում, դասավորված ե մի հարթ ու լայն գագաթ ունեցող բլրի տակ և տեսավ նաև, վոր բլրի վերելքը, վորն ուներ չորս ստադիոն[1] յերկարություն, վոչ առանձնապես թեք ե և վոչ ել դժվարամատչելի՝ նա հրաման տվեց թրակացի և գալատացի հեծելազունդին, վորն ուներ իր հետ, վոր նրանք զրահավորների վրա հարձակվեն կողքից և սրերով նրանց նիզակները մղեն յետ։ Միակ պաշտպանությունը զրահավոր հեծելազորի հենց այդ նիզակներն եյին. ուրիշ վոչ մի բան նրանք վոչ իրենց պաշտպանելու համար, վոչ ել թշնամու դեմ չեյին կարող գործածել. պատճառը հանդերձանքների ծանրությունն եր և ահագին այն զանգվածը, վորի մեջ կարծես նրանք փակված եյին իբր շենքերի մեջ։ Ինքը Լուկուլլոսը, իր հետ վերցնելով յերկու վաշտ (cohors)[2], շտապեց դեպի բլուրը։ Նրա յետևից արիաբար գնացին նաև զինվորները, վորովհետև սրանք տեսնում եյին, վոր Լուկուլլոսը՝ զինված ու հետիոտն՝ առաջինը հենց ինքն եր իրեն յենթարկում դժվարությունների և բոլոր ուժերով իրենց գործակցում։ Բլուրը բարձրանալուց հետո՝ Լուկուլլոսը կանգնեց բոլորի համար տեսանելի տեղում և, բարձր գոչելով՝ ասաց,—«Մենք հաղթում ենք, ով մարտակիցներ, մենք հաղթում ենք»։ Այդ ասելուց հետո՝ նա զորքը առաջնորդեց զրահավոր հեծելազորի դեմ և հրամայեց բոլորին տեգերը չգործադրել, այլ գնալ ձեռնակռվի և հարվածել թշնամիների ազդրերը և սրունքները (զրահավոր հեծվորների մարմնի

[1] Հռոմեական մեկ ստադիոնի յերկարությունը մոտ 185 մետր եր։

[2] Կոհորտը լեգեոնի տասներորդ մասն եր և բաղկացած եր ամենաշատը 600 հոգուց։




Տիգրանակերտի ճակատամարտն ըստ Պլուտարքոսի և Նըհարդի

այդ մասերն էյին միայն մերկ ու անպաշտպան)։ Այս ճակատամարտը կարիք չուներ, իրոք, վորևե այլ գործողության, քանի վոր սրանք չդիմացան հռոմայեցիների հարձակմանը, այլ մեծ աղմուկով ու ամենախայտառակ կերպով փախան թե իրենք և թե իրենց ձիերը և ընկան խռնված հետևազորքի վրա, նախ քան սրա կռվի բռնվելը։ Այսպիսով առանց վերք ստացվելու և առանց արյուն թափելու բազմաբյուրավոր այս զորաբանակը կրեց պարտություն։ Այնուհետև սկսվեց արդեն փախչողների մեծ կոտորածը, մանավանդ նրանց, վորոնք նոր էյին ուզում փախչել։ Շարքերի

խտության ու խորության պատճառով այս վերջիններն անկարող էին փախչել և արգելք էին հանդիսանում իրենք իրենց։ Իսկ Տիգրանը դեռ սկզբում, դուրս գալով քչերի հետ՝ փախավ, և տեսնելով, վոր իր վորդին ևս հաղորդակից է նույն բախտին՝ վեր առավ գլխից խույրը և արտասվելով հանձնեց նրան ու հրամայեց, վոր նա ինքն իրեն ազատե մի այլ ճանապարհով, ինչպես վոր կարող է։ Իսկ պատանին չհամարձակվեց խույրը դնել իր գլխին, այլ տվեց պահելու իր ամենահավատարիմ ծառային։ Սա պատահմամբ գերի ընկավ և տարվեց Լուկուլլոսի մոտ, ու այսպիսով միյուս ավարի հետ վերցրել էին նաև Տիգրանի խույրը։ Ասում են, վոր հետևազորից կոտորվել եր ավելի քան 100.000 մարդ, իսկ հեծելազորից շատ քչերն էին ազատվել։ Հռոմայեցիներից վիրավորվել էին 100 մարդ և սպանվել 5 մարդ»։

2. Ապպիանոս, Միհրդատականք, գլ. 85՝

«Լուկուլլոսը տեսնելով Տիգրանի Թիկունքում հարմար մի բլուր՝ իր հեծելազորին հրամայեց, վոր նա թշնամուն նեղե ճակատի կողմից, նրան քաշե դեպի իրեն և կամավոր կերպով յետ նահանջե, վորպեսզի հետապնդող բարբարոսների շարքերը քայքայվեն։ Իսկ ինքը հետևազորի հետ միասին, անցնելով թշնամու թիկունքը՝ գաղտնաբար բարձրացավ բլուրը։ Յեվ յերբ նա տեսավ, վոր թշնամիները հեծելազորը հալածելիս, իբր թե հաղթած լինելով՝ բոլորովին ցրբիվ էին յեկել, բայց նրանց ամբողջ գրաստագումակը գտնվում եր իր առջև՝ գոչեց,—«Մենք հաղթում ենք, ընկերներ», և ապա վազելով՝ նախապես հարձակվեց գումակի վրա։ Իսկ գրաստագումակն իսկույն աղմկելով փախավ և ընկավ հետևազորի վրա, և հետևազորը՝ հեծելազորի վրա։ Այնուհետև պարտությունը յեղավ լիակատար, վորովհետև հռոմեական հեծելազորը ևս յետ դառավ ու կոտորեց նրանց, վորոնք հարձակվելիս ցրվել էին հեռուները։ Իսկ գրաստագումակը, սեղմված լինելով՝ ընկել եր մյուսների վրա։ Յեվ այդ մեծ խուճապի մեջ շատերը տրորվել էին վոտքերի տակ, բայց չգիտեյին ճշտիվ, թե վորտեղից եր սկսվել այդ արհավիրքը։ Կոտորածը շատ մեծ յեղավ, վորովհետև վոչ վոք ժամանակ չեր կորցնում կողոպուտի վրա. այդ խստիվ արգելել եր Լուկուլլոսը. ուստի և, ձեռք չտալով




*Տիգրանակերտի ճակատամարտն ըստ Ապպիանոսի։*

*նույնիսկ ապարանջաններին ու մանյակներին՝ նրանք առաջ էին գնացել մոտ 120 ստադիոն, մինչև որ վրա չէր հասել գիշերը։ Իսկ այնուհետև միայն նրանք վերադարձան ու կողոպտեցին դիակները, որովհետև այդ այժմ թույլ էր տվել Լուկուլլոսը»։*

*3. Մեմնոն, գլ. 57՝*

*«Սա [Տիգրանը], հավաքելով 80.000 զորք, իջավ ցած, որպեսզի հարստահարիչների ձեռքից Տիգրանակերտն առնե և թշնամիներին հեռացնե։ Կամենալով այդ շուտ վերջացնել և տեսնելով, որ հռոմայեցիների զորաբանակը սակա-*

վաթիվ ե՝ նա ասաց,—«Յեթե նրանք ուզում են վորպես դեսպաններ ներկայանալ՝ մեծ բազմությամբ են յեկել, իսկ յեթե վորպես թշնամիներ են յեկել՝ չափազանց քիչ են»։ Յեվ այդ ասելուց հետո՝ նա բանակ դրեց։ Իսկ Լուկուլլոսը վարպետությամբ ու հոգացողությամբ ճակատամարտի համար մարտակարգ կազմեց և, քաջալերելով իր զորքը՝ իսկույն փախուստի մատնեց աջ թևը, հետո սրա միջոցով յետ մղեց հարևան զորքը և ապա հերթով՝ ամբողջ զորքը։ Հայերն ահաբեկված ու անզուսպ կերպով դիմեցին փախուստի և մարդկանց թվի համեմատ եր նաև նրանց կոտորածը։ Իսկ Տիգրանն իր արքայական խույրը և ապարոշը տվեց վորդուն և ինքը փախավ իր ամրոցներից մեկը»։

4. Փրոնտինուս (Strategmaton, II, գլ. 1, 14)՝

«Թեև Տիգրանակերտի մոտ Մեծ Հայաստանում Տիգրանի ու Միհրդատի դեմ ինքը Լուկուլլոսն ուներ վոչ ավելի քան 15.000 զինվոր (armati), իսկ թշնամին ուներ անթիվ բազմություն, վորը նույն այդ պատճառով դժվարաշարժ եր—նա թշնամու այս անհարմարությունից օգտըվեց, հարձակվեց նրա դեռևս չկարգավորված մարտաշարքերի վրա և իսկույնևեթ այնպես ցրիվ տվեց, վոր նույնիսկ իրենք թագավորները, դեն գցելով պատվանշանները՝ փախան»։

5. Նույնը (Strategmaton, III գլ. 2, 4)՝

«Լուկուլլոսը, վորը Տիգրանակերտի մոտ Մեծ Հայաստանում մարտնչելու յեր Տիգրանի ու Միհրդատի դեմ՝ իսկույն իր զորքի մի մասով գրավեց մոտակա բլրի հարթ գագաթը, սլացավ ապա ցածում գտնվող թշնամիների վրա և հարձակվեց նրանց հեծելազորի վրա կողքից։ Անմիջապես հետամուտ լինելով խանգարված թիկունքից նաև նրանց հետևազորին՝ փայլուն հաղթություն տարավ»։

Ուշադիր կերպով ծանոթանալով բոլոր այս նկարագրություններին՝ դժվար չե համոզվել, վոր Տիգրանակերտի ճակատամարտի մասին մեր ձեռքը հասել են յերկու տարբեր հաղորդագրություններ, վորոնք հիմնված են յերկու տարաձայն ավանդությունների վրա՝ հռոմեական և փոքրասիական։ Հռոմեական ավանդությունը պահպանված ե Պլուտարքոսի մոտ, վորն օգտվել եր Սալլուստիուսի և Տիտուս Լիվիուսի պատմական յերկերից, իսկ փոքրասիականը՝ Ապպիանոսի մոտ, վորը Լուկուլլոսի որ-

շավանքներին վերաբերող տեղեկությունները քաղել եր, գլխավորապես, փոքրասիական հելլենական վորևե աղբյուրից, թերևս, ինչպես յենթադրում ե Ռեյնաքը[1], Նիկողայոս Դամասկացու պատմությունից։

Վերև մեջ բերված մյուս համառոտ վկայությունները համապատասխանում են հռոմեական ավանդությանը։ Փրոնտինուսի վկայությունները քաղված են, անտարակույս, Լիվիուսից։ Փրոնտինուսը ևս, հետևելով Լիվիուսին՝ սխալ տեղեկություն ե հաղորդում, վոր իբր թե Տիգրանի հետ միասին Տիգրանակերտի ճակատամարտին մասնակցել եր նաև Միհրդատ Եվպատորը։ Նմանապես և Մեմնոնի ամփոփ նկարագրությունը համաձայնում ե ըստ եության ավելի շուտ հռոմեական ավանդության և Պլուտարքոսի վկայությունների հետ, քան Ապպիանոսի։

Տիգրանակերտի ճակատամարտի ամբողջ ընթացքը, ինչպես և Պլուտարքոսի ու Ապպիանոսի վերոհիշյալ ընդարձակ հաղորդագրությունները, վերջերս մանրամասն քննված ու հետազոտված են Լուկուլլոսի արշավանքներին նվիրված Եքհարդի աշխատության մեջ[2]։ Եքհարդը, համաձայն չլինելով Դրումանի և Ռեյնաքի հետ, վորոնք աշխատել եյին լրացնել ու ճշտել Պլուտարքոսի հաղորդագրությունը Ապպիանոսի վկայությունների ոգնությամբ, արժանահավատ ե ընդունում միմիայն Պլուտարքոսի տված նկարագրությունը։ Ճակատամարտի ընթացքը նա, հետևելով Պլուտարքոսին, հետևյալ կերպ ե լուսաբանում։

Գետն անցնելուց հետո, ինչպես ասված ե Պլուտարքոսի վերոհիշյալ հաղորդագրության մեջ՝ Լուկուլլոսը հրամայել եր թրակացի ու գալատացի հեծելազուններին, վոր նա կողքից հարձակվի թշնամու զրահավոր հեծելազորի վրա, վորը գտնվում եր աջ թևում։ Իսկ ինքը, իր հետ վերցնելով յերկու վաշտ հետևազոր՝ շտապել եր գրավել մոտակա բլուրը, վորը խիստ կարևոր մի դիրք եր Տիգրանի զորքերի թիկունքում։ Այստեղից նա ինքը ևս իսկույն հարձակվել եր զրահավոր հեծելազորի վրա յետևից։ Ցեվ ծանրաշարժ այս ձիավորները, չկարողանալով դիմանալ հռոմայեցիների հարձակմանը թիկունքից ու աջ թևից՝ անկարգ կերպով մատնվել եյին փախուստի և իրենց ձիերի հետ միասին ընկել

---

[1] Տե՛ս Mithridate Eupator, էջ 443—449։

[2] Տե՛ս Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, I, էջ 100—110։

եյին խռնված ու խուճապի մատնված հետևակ զորքի վրա։ Այսպիսով Տիգրանի ամբողջ զորքը պարտություն եր կրել առանց ճակատամարտ տալու։ Ապպիանոսի տված հակառակ տեղեկությունները Եքհարդը համարում ե խառնաշփոթ ու անարժեք և յենթարկում ե ամենախիստ քննադատության։

Ապպիանոսի տված ճակատամարտի նկարագրությունը, ինչպես տեսանք, բոլորովին տարբեր ե։ Համաձայն նրա տեղեկությունների Լուկուլլոսը ճակատամարտի սկզբում հրամայել եր իր հեծելազորին նեղել թշնամուն ճակատի կողմից և, կեղծորեն յետ փախչելով՝ նրան հեռացնել ու ցրել։ Իսկ ինքը գաղտնաբար անցել եր իր հետևազորի հետ թշնամու թիկունքը և բարձրացել մոտակա բլուրը, վորի ստորոտում գտնվում եր թշնամու գրաստագումակը։ Հարձակվելով այդտեղից գրաստագումակի վրա՝ նա փախուստի յեր մատնել սրան և ձգել հետևազորի վրա, վորը բոլորովին բարոյալքված ընկել եր իր հերթին հեծելազորի վրա։ Այսպիսով Տիգրանի ամբողջ զորքը պարտվել եր առանց մարտի բռնվելու։

Կարելի՞ յե արդյոք Ապպիանոսի այս նկարագրությունը մերժել, համարելով ճշգրիտ ու արժանահավատ հռոմեական միայն ավանդությունը։

Իմ կարծիքով, իզուր ե Եքհարդը յենթադրում, վոր Պլուտարքոսի նկարագրությունը պարզ ե ու անառարկելի, իսկ Ապպիանոսինը՝ անհարիր ե և լի յե հակասություններով։ Ընդհակառակը, Ապպիանոսի անպաճույճ ու ավելի բնական հաղորդագրությունն արժանի յե ավելի մեծ ուշադրության, քան թատերային միջադեպերով համեմված Պլուտարքոսի նկարագրությունը։

Միանգամայն ըստ իս հավատալի յե ու հնարավոր, վոր Լուկուլլոսը կարող եր, իրապես, Տիգրանին խաբելու համար նրա դեմ ճակատի կողմից ուղարկած լինել միմիայն իր արագաշարժ հեծելազորը, իսկ ինքը, վերցնելով հռոմեական ամբողջ հետևազորը, դեռ ռազմադաշտ չհասած՝ կարող եր անցած լինել թշնամու թիկունքը և հարձակված լինել այնտեղից գրաստագումակի վրա, ինչպես այդ վկայում ե Ապպիանոսը։ Այս վկայությունն ավելի հավանական ե թվում, քան Պլուտարքոսի տված տեղեկությունը, վոր իբր թե Լուկուլլոսը, մերկացրած սուրը ձեռին, գնացել եր ձեռնակռվի և աննկատելի կերպով անցել եր թշնամու թիկունքը։ Հավատալի՞ յե միթե, վոր Լուկուլլոսը, վորն ուներ իր հետ յերկու վաշտ հետևազոր և վորը գտնվում եր թշնամուն դեմ առ դեմ՝

կարող եր թաքուն կերպով գրավել բլուրը սրա թիկունքում։ Եթե հռոմեական սկզբնաղբյուրները չեն հիշատակում Տիգրանի գրաստագումակը և Լուկուլլոսի ու հռոմեական ամբողջ հետևազորի հարձակումը գումակի վրա՝ այդ բացատրվում ե, հավանորեն, նրանով, վոր այդ գրոհը չեր կարող համարվել քաջարի և առանձնապես պատվաբեր մի գործ։

Լուկուլլոսի հաղթության բացառիկ ու առանձնահատուկ բնույթը մատնանշված ե Սալլուստիուսի հատվածներից մեկում։ Միհրդատի պարթևաց թագավորին գրած նամակում, վոր մանրամասն մեջ ե բերված նրա մոտ՝ Տիգրանակերտի ճակատամարտին են վերաբերվում հետևյալ տողերը.

«Վորովհետև տեղի նեղվածությունը,—ասված ե Միհրդատին վերագրված այդ նամակում,—զորքի բազմության արգելք եր հանդիսանում ճակատամարտ տալու՝ Տիգրանի անխոհեմությունը նրանք [հռոմայեցիները] ցուցադրում են իբրև հաղթություն»[1]։

Ռազմադաշտի այս նեղվածության առթիվ պետք ե սակայն նկատի ունենալ, վոր Տիգրանը, վորն իր նոր մայրաքաղաքը կառուցել եր պաշտպանված ու դժվարամատչելի լեռնային տեղում՝ Տիգրանակերտի շրջակայքում չեր կարող, բնականաբար, ընտրել ավելի բաց ու ավելի արձակ տեղ։

Տիգրանի զորքերի կորուստների մասին հռոմեական հեղինակների տեղեկությունները հիմնապես հակասում են դարձյալ փոքրասիական չեզոք աղբյուրների վկայություններին։ Այդ կորուստների մասին, ինչպես վերև տեսանք, Պլուտարքոսը, հավանորեն, համաձայն Լուկուլլոսի պաշտոնական տեղեկագրի՝ տալիս ե միանգամայն սուտ ու չափազանցրած թվեր։ Նրա ասելով՝ Տիգրանի հետևազորից կոտորվել եր ավելի քան 100.000 մարդ և հեծելազորից շատ քչերն եյին ազատվել. իսկ հռոմայեցիներից վիրավորվել եյին 100 մարդ և սպանվել 5 մարդ։ Ինչպես հայտնի յե, նման սուտ թվերը սովորական եյին նաև Սուլլայի պաշտոնական զեկուցագրերում։ Խերոնեայի 67 թվի ճակատամարտում պոնտական զորքերի կորուստը նա ևս ցույց եր տվել 60.000 մարդ, իսկ հռոմայեցիներինը՝ ընդամենը 14 մարդ։ Թե ինչ արժեք ունեն հռոմեական զորավարների ինքնապարծ ու սուտ հաշվետվությունները՝ այդ շատ լավ գիտեն բոլոր պատմագետները։ Ուստի և նրանք ևս հավատ չեն ընծայել վերոհիշյալ թվերին։

---

[1] Տես Sallust., IV, frgm. 69։

Ռեյնաքը և նրան հետևողները՝ Գարագաշյանը, Դաղբաշյանը և ուրիշները՝ գերադասել են Օրոսիուսի տված տեղեկությունը[1], որի համաձայն սպանվածների թիվը հայ զորաբանակից ցույց է տրված ընդամենը 30.000 մարդ։ Սակայն այս տեղեկությունը ևս, որը հիմնված է դարձյալ հռոմեական աղբյուրների, հավանորեն, Տիտուս Լիվիուսի հաղորդագրության վրա՝ վերոհիշյալ իր ուսումնասիրության մեջ չի ընդունում Էքհարդը։ Սրա կարծիքով, իրականին կարող է համապատասխան լինել ավելի շուտ Փլեգոն Տրալլացու վկայությունը, որի մոտ Տիգրանի զորքի ամբողջ կորուստը ցույց է տրված մոտավորապես 5000 մարդ[2]։ Այս փոքր թիվը ինձ ևս ավելի ստույգ ու գերադասելի յե թվում, որովհետև Փլեգոնի տեղեկությունը ակներևաբար քաղված է փոքրասիական չեզոք աղբյուրից, իսկ այդ աղբյուրները, ինչպես մենք այս ուսումնասիրության ընթացքում տեսանք, ավելի արժանահավատ են, քան հռոմեական կողմնապահ ու աչառու յերկերը։

Բացի վերոհիշյալ թվերից հռոմեական աղբյուրներում հնարովի յեն, անտարակույս, և սուտ, ինչպես այդ միանգամայն ճիշտ մատնանշել է Մոմզենը[3], նաև Տիգրանի արքայական խույրի վերաբերյալ պատմությունը։

Այդ միջադեպը, ինչպես վերև տեսանք, տարբեր կերպ է պատմված Մեմնոնի, Պլուտարքոսի և Ֆրոնտինուսի վկայություններում[4]։ Մեմնոնը, որն իր պատմության այս մասում օգտվել եր, հավանորեն, հռոմեական որևէ աղբյուրից՝ պատմում է, որ Տիգրանն արքայական իր խույրն ու ապարոշը տվել եր որդուն և ինքը փախել եր իր ամրոցներից մեկը։ Պլուտարքոսն ավելացնում է դրան, որ որդին՝ չհամարձակվելով իր գլխին դնել խույրը, տվել եր պահելու իր ամենահավատարիմ ծառային, և սրան արքայական խույրի հետ միասին գերի յեր վերցրել Լուկուլլոսը։ Իսկ Ֆրոնտինուսը, ընդհակառակը, վկայում է, որ ոչ միայն Տիգրանը, այլև մյուս թագավորները ևս դեն եյին գցել իրենց պատվանշանները և փախել։

---

1 Տես Orosius, Historia adversus paganos, VI, 3, 6, նաև Reinach, Mithridate Eupator, էջ 362, Գարագաշյան, Քննական պատմություն, II, էջ 145, Դաղբաշյան, Ստույգ Հայոց պատմություն, էջ 93 և ուրիշ.։

2 Տես fr. 12, Müller, Fr. Hist. Gr., III, էջ 606։

3 Տես Римская история, III, էջ 57։

4 Խույրի վերաբերյալ միջադեպը չի հիշատակված Ապպիանոսի մոտ, որը պատմության իր այս մասում օգտվել եր, ինչպես ասացինք, փոքրասիական չեզոք աղբյուրից։

*Աղբյուրների այս տարաձայնություններն իրենք հենց հավանական մի նշան են մեջ բերված վկայությունների անհավաստիության։ Եվ միանգամայն իրավացի է ըստ իս Մոմզենը, վորն այս միջադեպը, ինչպես և վերոհիշյալ շինծու թվերը, թըխված ու հերյուրված է համարում Սուլլայի հատուկ վոճով։*

*Տիգրանի կրած պարտությունը Տիգրանակերտի մոտ, ինչպես յերևում է մեր այս քննությունից, խիստ չափազանցված է թե հռոմեական աղբյուրներում և թե պատմագիտական նորագույն յերկերում։ Այս ճակատամարտը, իրապես, վոչ թե իսկական արյունահեղ դիմամարտ եր, այլ խուճապ և փախուստ առանց կռվի։*

*Խիստ ծանր եյին սակայն այս պարտության հետևանքները Տիգրանի նորաստեղծ աշխարհակալության համար։ Պարտության գլխավոր հետևանքը յեղավ, ինչպես կըտեսնենք, Տիգրանակերտ քաղաքի կորուստը և հայկական մեծ պետության քայքայումը։*

## 13. ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ԱՌՈՒՄԸ ՅԵՎ ՏԻԳՐԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ՄԵԾ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

*Հոկտեմբերի 6-ի մեծ ճակատամարտից և Տիգրանի զորաբանակի պարտությունից հետո Լուկուլլոսը, ապահոված լինելով իր թիկունքը՝ կարող էր Տիգրանակերտի պաշարումն աներկյուղ ու համարձակ շարունակել։*

*Այս քաղաքը, վորը Մանկայոսի առաջնորդությամբ մոտ հինգ ամիս արիաբար դիմադրել էր հռոմայեցիներին՝ այլևս չէր կարող վորևէ օգնություն ակնկալել արքայական բանակից։ Չնայած դրան նա անձնատուր չեղավ և թշնամու դեմ շարունակեց համառորեն կռվել։ Յեվ յեթե հռոմայեցիներին, այնուամենայնիվ, աջողվեց շուտով Տիգրանակերտը գրավել առանց արյունահեղ ընդհարումների ու մեծ կորուստների՝ դրա պատճառը, ինչպես միաձայն վկայում են Ապպիանոսը, Պլուտարքոսը, Մեմնոնը և Կասսիուս Դիոնը, հույն վարձկան զորքերի ապստամբությունն էր ու դավաճանությունը։*

*Մեջ բերված այս չորս կարևորագույն աղբյուրները թեև տարբեր կերպ են պատմում այդ մասին, սակայն նրանցից յերեքը՝ Ապպիանոսը, Պլուտարքոսը և Դիոնը՝ հիմնականում գրեթե իրար չեն հակասում։*

*Ամենից ընդարձակ են Ապպիանոսի հաղորդած տեղեկությունները։ Նրա պատմելով՝ Տիգրանի պարտությունից հետո Մանկայոսն այլևս վստահություն չուներ հելլենական վարձկան զինվորների վրա և հրամայել էր նրանց զինաթափ անել։ Սակայն սրանք, ապստամբելով իրենց առաջնորդի դեմ՝ գրավել էին Տիգրանակերտի պարսպի յերկու աշտարակի միջև յեղող մասը և, բանակցության մեջ մտնելով հռոմայեցիների հետ՝ ներս էին թողել նրանց ու մատնել քաղաքը թշնամուն։ Պլուտարքոսը միայն հիշատակում է, վոր Լուկուլլոսը կարողացել էր քաղաքը վերցնել շնորհիվ հույների ապստամբության։ Կասսիուս Դիոնն այդ ապստամբությունը վերագրում է քաղաքի օտար բնակչության, հատ-*

կապես, Կիլիկիայից գաղթեցրած հույներին, որոնք ներս էին մտցրել գիշերով հռոմայեցիներին և մատնել քաղաքը կողոպուտի։ Իսկ Մեմնոնը, լռելով հույն վարձկանների դավաճանության մասին՝ Տիգրանակերտի անկման համար պատասխանատու չէ համարում Միհրդատի զորավարներին, որոնք գտնվում էին այնտեղ և քաղաքը դավաճանաբար մատնել էին Լուկուլլոսին, գլխավորապես, իրենց անձնական փրկության համար։

Ավելորդ չեմ համարում մեջ բերել բոլոր վերոհիշյալ վկայությունները հունարենից բառացի թարգմանությամբ։

1. Ապպիանոս, Միհրդատականք, գլ. 86՝

«Մանկայոսը, որը տեսել էր Տիգրանակերտից տեղի ունեցած պարտությունը՝ կասկածելով հելլենների վրա, որոնք ծառայում էին նրա մոտ վարձով, բոլորին զինաթափ արեց։ Սրանք, վախենալով որ իրենք կըկալանավորվեն, բրերով զինված միասին գնացին և բանակ գրին բացօթյագում։ Իսկ երբ Մանկայոսը նրանց դեմ զինված բարբարոսներ ուղարկեց՝ նրանք, վերնազգեստները վահանների փոխարեն կապկպելով ձախ ձեռքերին՝ խիզախաբար հարձակվեցին դրանց վրա։ Յեվ ում որ սպանում էին՝ իսկույն նրա զենքերը բաժանում էին իրար մեջ։ Իսկ երբ նրանք իրենց, որքան կարող էին, բավարարեցին՝ գրավեցին յերկու աշտարակների միջև յեղող պարսպի տարածությունը, կանչեցին դրսից հռոմայեցիներին և ներս թողին վեր յեկողներին։ Այսպես առնվեց Տիգրանակերտը և նրա մեծ հարստությունները մատնվեցին կողոպուտի»։

2. Պլուտարքոս, Լուկուլ., 29՝

«Իսկ Տիգրանակերտ քաղաքում հելլեններն ապստամբել էին բարբարոսների դեմ և մատնել էին քաղաքը Լուկուլլոսին. ուստի և սա հարձակվեց նրա վրա և վերցրեց»։

3. Մեմնոն, գլ. 57՝

«Բայց Լուկուլլոսը, վերադառնալով Տիգրանակերտ՝ պաշարեց քաղաքն ավելի համարձակորեն։ Իսկ քաղաքում գտնվող Միհրդատի զորավարները, որ բոլորովին հուսահատվել էին՝ իրենց փրկելու համար հանձնեցին քաղաքը Լուկուլլոսին»։

4. Կասսիուս Դիոն, գր. 36, գլ. 2, 3՝

«Բայց որովհետև հայերի դեմ ապստամբել էին ոտա-

րական բնակիչները՝ նրանցից Տիգրանակերտն առնվեց։ Ապստամբների մեծագույն մասը կիլիկեցիներ էին, որոնց բռնի կերպով գաղթեցրել էին այստեղ, և նրանք գիշերը ներս թողին հռոմայեցիներին։ Իսկ այնուհետև ամեն ինչ կողոպուտի մատնվեց բացի սրանց ունեցվածքից»։

Մեջ բերված այս վկայություններից, ինչպես տեսնում ենք, միայն յերրորդը Տիգրանակերտի անկումը հակառակ մյուս վկայություններին վերագրում է Միհրդատի զորավարների դավաճանության։ «Միհրդատի զորավարներ» ասելով Մեմնոնը, հավանորեն, հասկանում է Միհրդատի նախկին զորավարներին, որոնք Պոնտական թագավորության նվաճվելուց հետո յեկել էին, ըստ յերևույթին, Տիգրանի մոտ և ստանձնել էին Տիգրանակերտում բարձր պաշտոններ։ Ռեյնաքը յենթադրում է, որ Միհրդատի զորավարները նույն և կիլիկեցի զորքի հրամանատարներն էին[1]։ Սակայն պատմագիտական գրեթե բոլոր մյուս յերկերում Մեմնոնի վկայությունն անտես է արված և ավելի վստահելի ու արժանահավատ են համարված Ապպիանոսը, Պլուտարքոսը և Կասսիուս Դիոնը, որոնք համերաշխաբար վկայում են, որ քաղաքը հռոմայեցիներին մատնած են յեղել հույն վարձկան զինվորները և Կիլիկիայից գաղթեցրած նորաբնակները։

Հռոմայեցիները, մտնելով Տիգրանակերտ՝ անխնա կողոպտեցին քաղաքը։ Պլուտարքոսի պատմելով[2]՝

> «Լուկուլլոսը ինքը գրավել էր նրա մեջ գտնվող գանձերը, և քաղաքը, որը բացի այլ հարստություններից ուներ նաև ութը հազար տաղանդ դրամով, տվել էր կողոպտելու զինվորներին։ Բացի այդ, պատերազմական ավարից նա տվել էր նրանցից ամեն մեկին ութհարյուրական դրաքմե»։

Ութ հազար տաղանդն արծաթ դրամով հավասար կլինի, ինչպես յերևում է գերմանական գիտնական Հուլչի հաշվումներից[3], մոտ 34 միլիոն գերմանական վոսկի մարկի, այսինքն՝ մոտ 17 միլիոն վոսկի ռուբլու, իսկ ութը հարյուր դրաքմեն կամ արծաթ դենարն այժմյան դրամով հավասար է մոտ 560 վոսկի մարկի

---

[1] Տես Reinach, Mithridate Eupator, էջ 363։

[2] Տես Լուկուլ., 29։

[3] Տես Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, Berlin 1882, էջ 297—299 և 711։

կամ 280 վոսկի ուրլու։ Այս մեծ գումարները ցույց են տալիս, վոր Տիգրանակերտը, չնայած վոր նոր էր հիմնված, ուներ իր մեջ անչափ մեծ հարստություններ։

Տիգրանակերտում, ինչպես վկայում է դարձյալ Պլուտարքոսը¹, իր նորակառույց թատրոնի բացման համար Տիգրանը հավաքած է յեղել բազմաթիվ հույն դերասաններ։ Սրանք այժմ օգտագործվեցին Լուկուլլոսի հաղթության նվիրված հանդեսների և թատերախաղերի համար։

Տիգրանակերտի անկումովը մահացու հարված ստացավ Տիգրանի ծրագրած ու սկսած այն առաջադիմական մեծ գործը, վորի նպատակն էր զարգացնել հետամնաց Հայաստանում հելլենական քաղաքային կուլտուրան և հելլենիստական քաղաքակրթությունը։ Լուկուլլոսն իրենց հայրենի քաղաքներն ու յերկրներն ուղարկեց հույներին ու ոտարականներին, վորոնց, ինչպես վերև տեսանք, վերաբնակեցրել էր Տիգրանն իր նորակառույց մայրաքաղաքում։

Այդ մասին ունեն տեղեկություններ Պլուտարքոսը և Ստրաբոնը։

1. Պլուտարքոս, Լուկուլլոս, 29՝

«Հելլեններին նա [Լուկուլլոսը] ուղարկեց իրենց հայրենիքը, տալով նրանց ճանապարհածախս. նույնպես վարվեց և բարբարոսների հետ, վորոնց բռնի կերպով բնակեցրել եյին այստեղ։ Այսպիսով թեև այդ մեկ քաղաքը քանդվեց՝ բնակչություն ստացան բազմաթիվ այլ քաղաքներ, վորոնք նորից հյուրընկալեցին իրենց նախկին բնակիչներին։ Ցեվ Լուկուլլոսը նրանցից մեծարվում էր իբրև բարեգործ ու վերահաստատող»։

2. Ստրաբոն, XI, 14, 15 (532)՝

«Յերբ Տիգրանը զորեղացավ մինչ այդ աստիճան՝ նա հիմնեց Իբերիայի (*) մոտ, նրա և Յեփրատի ափին գտնվող Զեվգմայի միջև՝ մի քաղաք, վորն անվանեց Տիգրանակերտ և այդտեղ բերեց իր ավերած 12 հելլենական քաղաքների բնակչությունը։ Սակայն շուտով վրա հասավ Լուկուլլոսը, վորը պատերազմում էր Միհրդատի դեմ և նրա բնակիչներին արձակեց իրենց հայրենիքը։ Իսկ քաղաքը, վորը շինված էր

---

¹ Տես Լուկուլ., 29։

*կիսով չափ՝ նա գրոհ տալով քանդեց և նրա տեղ թողեց միայն մի փոքր գյուղ»։*

*3. Ստրաբոն,* XII, *2, 9 (539)՝*

*«Վատ վարվեց Տիգրան արմենը մաժաքցիների հետ, յերբ նա արշավել եր Կապպադովկիա։ Նա ամբողջ բնակչությունը քշեց տարավ Միջագետք և նրանց մեծ մասամբ բնակեցրեց Տիգրանակերտում։ Սակայն հետագայում, Տիգրանակերտի նվաճումից հետո, ով վոր կարող եր՝ վերադարձավ հայրենիք»։*

*Մեջ բերված վկայություններից ուշադրության արժանի յե, մանավանդ, Ստրաբոնի հաղորդած առաջին վկայությունը (վկ. 2), վորի մեջ մասնանշված ե, վոր Լուկուլլոսը քանդել եր Տիգրանակերտը և տեղը թողել եր միայն մի փոքր գյուղ։ Այս տեղեկությունը չպետք ե ըստ իս հասկանալ տառացիորեն։ Տիգրանակերտը, ինչպես հայտնի յե մատենագրական հետագա վկայություններից[1], նշանավոր բերդաքաղաք ե համարվել և բազմամարդ մեծ կենտրոն ե յեղել նաև Լուկուլլոսի արշավանքից հետո։ Նրա բարձր ու անմատչելի պարիսպները հիշատակված են, որինակ, Տակիտոսի «Տարեգրություններ»-ում[2]։ Դժվար չե, ուրեմն, այդ վկայություններից յեզրակացնել, վոր 69 թվի աշնանը՝ Տիգրանակերտի առման ժամանակ, հավանորեն, քանդված չեն յեղել վոչ նրա պարիսպները և վոչ ել ամրությունները։ Ստրաբոնի վերոհիշյալ վկայությունը կարելի յե թերևս հասկանալ այն իմաստով, վոր հելլենների և այլ ոտարականների ցրմամբ Տիգրանակերտը տարալուծվել եր և կործանվել իբրև հելլենիստական քաղաք-«պոլիս», այսինքն՝ իբրև քաղաքային ինքնավար կազմակերպություն։ Այդ հոյակապ քաղաքը, վոր Առաջավոր Ասիայի ամենամեծ հելլենիստական քաղաքների, Սելևկիայի ու Անտիոքի, մրցակիցն եր լինելու, կորցնելով այժմ իր ոտար բնակչության մեծագույն մասը, նաև քաղաքային իր հատուկ հասարակակարգը և կազմակերպությունը՝ դառնում եր, բնականաբար, մի փոքր գյուղ կամ ավան։ Ինչպես հայտնի յե, գյուղ կամ ավան եյին համարում և անվանում նաև հելլենիստական Սելևկիա քաղաք-«պոլիս»-ի մոտ գտնվող Տիզբոնը, վորը պարթևների գահանիստ կենտրոնն եր։*

*Տիգրանի աշխարհակալ մեծ պետության համար Լուկուլլոսի*

---

1 *Տես, որինակ,* Plinius VI, 10 *(հրատ.* Littré, Paris 1883):

2 *Տես* Tacitus, Annales, XV, 4:

հաղթությունը և Տիգրանակերտի առումն ունեցան քաղաքական խիստ ծանր հետևանքներ։ Տիգրանի նվաճած բոլոր յերկրները, վորոնք Տավրոսյան լեռնաշղթայից և Տիգրիս գետից դեպի հարավ եյին գտնվում՝ Հյուսիսային Միջագետքը, Կորդուքը, Կոմագենը, Ասորիքը և Արևելյան Կիլիկիան՝ անջատվեցին Մեծ Հայաստանից և ընդունեցին Հռոմի գերիշխանությունը։ Միայն Միջագետքի մի մասը և Մծբին քաղաքը մնացին առժամանակ Տիգրանի յեղբոր Գուրասի իշխանության տակ։

Տիգրանակերտի անկումից հետո Լուկուլլոսի մոտ յեկան, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[1], և նրան հնազանդվեցին արաբների ցեղապետները։ Կասսիուս Դիոնի մոտ[2] այդ ցեղապետներից ամենահզորն անվանված է Ալքաուդոնիոս, վորը նույն է, անտարակույս, Ստրաբոնի հիշատակած Համբրայցոց վաչկատուն ցեղի համանուն Ալքայդամնոս ցեղապետի հետ[3]։ Լուկուլլոսին հպատակություն հայտնեց նաև Կոմագենի Անտիոքոս իշխանը, վորը Սելևկյան Անտիոքոս Գրիպոսի թոռն եր։ Լուկուլլոսը նրան թագավոր կարգեց Կոմագենի։ Նմանապես նաև Սելևկյան Անտիոքոս Ասիացուն, վորը Բագադատես հայ կուսակալի հեռանալուց հետո վերադարձել եր Անտիոք՝ Լուկուլլոսը և հռոմեական ծերակույտը ճանաչեցին Ասորիքի թագավոր։ Այս Անտիոքոսը վորդին եր Ասորիքի նախկին թագավոր Անտիոքոս Եվսեբեսի և Սելենե-Կլեոպատրայի, վորն ըստ Ստրաբոնի[4] բանտ եր գցված Սելևկիա ամրոցում, իսկ ապա՝ հայերի նահանջի ժամանակ Ասորիքից՝ սպանվել եր Տիգրանի հրամանով։

Տիգրանակերտի անկումից հետո, 69/68 թվին, Լուկուլլոսը և նրա զորքը ձմեռեցին Կորդուքում։ Մենք վերև արդեն տեսանք, վոր Կորդուքը, ինչպես և Ծոփքը, դավաճանել եյին Տիգրանին և գաղտնի կերպով համաձայնության եյին յեկել Ապպիոս Կլավդիոսի հետ ու անցել հռոմեյեցիների կողմը։ Տիգրանը, վոր դեռ Լուկուլլոսի արշավանքից առաջ տեղեկություն եր ստացել Կորդվաց Զարբիենոս թագավորի դավաճանության մասին՝ հրամայել եր նրան սրի անցկացնել ընտանիքի հետ միասին։ Հռոմեական զորքը կարողացավ այժմ հայերին թշնամացած այս յերկրում վոչ

---

1 Տես Լուկուլ., 29։

2 Տես գք. 36, գլ. 2, 3։

3 Տես Ստրաբոն. XVI, 2, 10 (753)։

4 Տես XVI, 2, 3 (749)։

միայն հանգիստ ու աներկյուղ ձմեռել, այլև ստանալ պարենավորում և օգտվել այստեղ լեցած հացի առատ պաշարներից։

Կորդուքում Լուկուլլոսը հանդիսավոր կերպով կատարեց իր դաշնակից Զարբիենոս թագավորի թաղումը և ի պատիվ նրան կառուցել տվեց շքեղ մի մահարձան։

Հռոմեական զորքի ձմեռման մասին Կորդուքում վերոհիշյալ տեղեկություններն ունի միմիայն Պլուտարքոսը, որի կարևոր այդ վկայությունները մեջ ենք բերում բառացի թարգմանությամբ։

Պլուտարքոս, Լուկուլլոս, գլ. 29՝

«Ջեռ վոր և արաբների թագավորները լեկել էին նրա [Լուկուլլոսի] մոտ և հնազանդվել յուրայինների հետ միասին, նաև Ծոփքի ժողովուրդը հարել էր նրան. իսկ կորդվացիներին այնպես էր դեպի իրեն տրամադրել, որ նրանք ուզում էին իրենց քաղաքները թողնել և ուղեկցել նրան լերեխաների ու կանանց հետ միասին։ Նրանք այդ կամենում էին հետևյալ պատճառով։ Զարբիենոսը, Կորդվաց թագավորը, նեղվելով Տիգրանի բռնակալությունից, ծածկաբար, ինչպես ասում են Ապպիոսի միջոցով Լուկուլլոսի հետ բանակցություններ էր վարել դաշնակցության մասին։ Երբ այդ հայտնի լեղավ՝ Զարբիենոսը սպանվեց և նրա հետ միասին սպանվեցին, նախ քան հռոմայեցիների Հայաստան ներխուժելը, նաև նրա կինն ու լերեխաները։ Այդ բանը Լուկուլլոսը չեր մոռացել. ուստի և, գալով Կորդվաց լերկիրը՝ նա կատարեց Զարբիենոսի թաղման ծեսը և, զարդարելով խարույկը զգեստներով, թագավորական վոսկեղենով և Տիգրանից առնված կողոպուտով՝ մոտեցավ ինքը խարույկին, վառեց և հանգուցյալի բարեկամների ու ընտանիքի անդամների հետ զոհ մատուցեց, անվանելով Զարբիենոսին իրեն ընկերակից և հռոմայեցիների դաշնակից։ Նա հրամայեց, բացի այդ, կանգնեցնել հանգուցյալին թանգարժեք մահարձան։ Զարբիենոսի արքունիքում գտել էին մեծ քանակությամբ վոսկի և արծաթ, իսկ պահեստներում կար լերեք միլիոն մեդիմն ցորեն[1]։ Այսպիսով և զինվորները հարստացան և Լուկուլլոսը զարմացավ, որ ինքը, մեկ դրամ անգամ չստանալով հասարակային գանձարանից, պատերազմը վարում եր միայն իր միջոցներով»։

---

[1] Երեք միլիոն մեդիմն ցորենը հավասար է այժմյան կշռով մոտ 120 միլիոն կիլոգր. կամ 120 հազար տոննի։

Կորդուքում յեղած ժամանակ Լուկուլլոսը, ինչպես հաղորդում են Պլուտարքոսը, Եվտրոպիոսը և Ռուփուսը[1], պատրաստվելիս է յեղել պատերազմի ընդդեմ պարթևների։ Ինչպես վկայում է Պլուտարքոսը, նոր այս արշավանքին մասնակցելու համար նա հրամայել էր Պոնտոսում գտնվող իր Սորնատիոս տեղակալին, որ նա գա Կորդուք և միանա իրեն հռոմեական զորամասի հետ, որ ինքը թողել էր Պոնտոսում։ Սակայն, Պլուտարքոսի ասելով, այս արշավանքը գլուխ չեր յեկել հռոմեական զորքերի հակառակության ու ըմբոստության պատճառով։

Պարթևական արշավանքի մասին այս տեղեկությունները, որ չեն հիշատակված Մեմնոնի, Ապպիանոսի և Կասսիուս Դիոնի մոտ, ստույգ և պատմական են ընդունել Ռեյնաքը, Ֆեռեռոն[2] և ուրիշները, սակայն միանգամայն արդարացի կերպով կասկածելի ու անվստահելի յեն համարել Մոմզենը և Էքհարդը[3]։ Ավելի քան անհավանական է, անշուշտ, որ Լուկուլլոսը հրամայած լիներ դուրս հանել Պոնտոսից հռոմեական պահապան զորքերը և, թողնելով իր թիկունքում Տիգրանին և Միհրդատին՝ ուզենար շարժվել դեպի Տիզբոնը և սկսել մի նոր պատերազմ։ Ըստ յերևույթին, վերոհիշյալ տեղեկությունը սարքովի մի հերյուրանք է, որի հեղինակը կարող է լինել Պլուտարքոսը։ Վերագրելով իր փառաբանած զորավարին նաև յերրորդ պատերազմի նախապատրաստումը Պլուտարքոսը, հավանորեն, կամեցել է ցույց տալ, որ Լուկուլլոսը ևս Աղեքսանդր Մակեդոնացու նման մեծ գործ կատարած կլիներ, յեթե նրան խանգարած չլինեյին հռոմեական զորքերը։

Մենք կտեսնենք ներքև, որ Լուկուլլոսը վոչ մի դիտավորություն չեր ունեցել պատերազմելու պարթևների դեմ, այլ ընդհակառակը, ուզեցել էր, իր թիկունքն ապահովելու համար, կնքել նրանց հետ բարեկամական դաշինք։

---

[1] Տես Պլուտարքոս, Լուկուլ., 30, Եվտրոպիոս, VI, 9 և Սեքստուս Ռուփուս, գլ. 15։

[2] Տես Reinach, Mithridate Eupator, էջ 366 և Ферреро, Величие и падение Рима, I, էջ 190։

[3] Տես Моммсен, Римская история, III, էջ 61 և Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 2, էջ 195։

# 14. 68 ԹՎԻ ԿՌԻՎՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ՄԻՋԱԳԵՏՔՈՒՄ

*Տիգրանակերտի մոտ կրած ծանր պարտությունից հետո՝ Տիգրանը և նրա անձնապահ հեծելազունդը կարողացան դուրս գալ մարտադաշտից և փախան ու պատսպարվեցին մոտակա մի ամրոցում։*

*Մեծ եյին ու անսահման հուսահատությունը և լքումը հայկական արքունիքում։ Տիգրանի լայնածավալ ծովից ծովից տարածվող պետությունը, վոր նա մոտ քսանհինգ տարվա ընթացքում մեծ դժվարությամբ ի մի յեր համախմբել՝ այժմ արդեն կիսով չափ քանդված եր։ Թագավորների թագավորի ու Հայաստանի դեմ շուտով վոտքի կարող եյին յելնել բոլոր թշնամիները և, առաջին հերթին, պարթևական թագավորությունը, վորը Տիգրանը հիմնապես քայքայել և նվաստացրել եր։*

*Վհատության այս ծանր ժամին, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը*[1]*, Միհրդատ Եվպատորը, վորն իր հեծելազորով դեռ նոր եր գալիս դեպի ճակատատեղին, պատահելով ճանապարհին փախստականների և վիրավորների խմբերին՝ լսեց Տիգրանի պարտության մասին և շտապեց գնալ նրա մոտ։ Միհրդատը Տիգրանին քաջալերեց և նրան հուսադրեց ապագայի նկատմամբ*[2] *և այնուհետև նրանք սկսեցին յեռանդուն կերպով պատրաստվել նոր պատերազմի։ Համաձայն Մեմնոնի և Ապպիանոսի վկայություններին*[3]*՝ Տիգրանն ուշադրության առավ Միհրդատի մեծ*

---

[1] *Տես, Լուկուլ., 29, համեմատե նաև Մ ե մ ն ո ն, գլ. 58։*

[2] *Եվրոպական գիտնականները՝ Մոմզենը, Ռեյնաքը և ուրիշները* (М о м м с е н, Римская история, III. *եջ 58 և* Reinach, Mithridate Eupator, *եջ 363), նկարագրելով Միհրդատի ու Տիգրանի այս հանդիպումը՝ նշում են Տիգրանի անարիությունն ու փոքրոգությունը։ Այդ նախատինքներն անհիմն են ու կամայական և չեն համապատասխանում սկզբնագրյուրների տված տեղեկություններին։*

[3] *Մ ե մ ն ո ն, գլ. 58 և Ա պ պ., Միհրդ., գլ. 87։*

փորձառությունը, վոր նա ձեռք եր բերել հռոմեական պատերազմներում, և նրան հանձնարարեց թե առաջիկա պատերազմի նախապատրաստումը և թե, ընդհանրապես, ռազմական գործերի ղեկավարությունը։

Արդ՝ Միհրդատը, վորն այժմ Տիգրանի ամենամոտ խորհրդատուն եր՝ աշխատեց, ամենից առաջ, հաշտեցնել իր փեսային նրա վոխերիմ թշնամիների՝ պարթևների հետ։ 70/69 թվին վախճանվել եր պարթևների Սանատրուկ թագավորը և նրան հաջորդել եր Հրահատ Գ-ը (70/69—57 թ. մեր թվ. առ.)։ Տիգրանը սրա մոտ ուղարկեց, Միհրդատի խորհուրդով, դեսպաններ, համաձայնեց զիջել նրան բոլոր յերկրները, վոր ինքն առել եր պարթևներից՝ Միջագետքը, Ադիաբենը և «մեծ հովիտները», — հավանորեն Ստրաբոնի հիշատակած «յոթանասուն հովիտները»[1], — և խնդրեց միանալ իր հետ ընդդեմ հռոմայեցիների[2]։ Դեսպանները զգուշացրին Հրահատին, վոր յեթե հռոմայեցիները Տիգրանին հաղթեն, նրանք այնուհետև պատերազմ կսկսեն նաև պարթևների դեմ[3]։

Այս բանակցությունների առնչությամբ Սալլուստիուսի մոտ բերված ե Միհրդատի նամակը[4] Հրահատ Գ-ին, վորը թեև, իհարկե, վավերական չե, սակայն այնուամենայնիվ հետաքրքրական ե, վորովհետև արտացոլում ե իր մեջ քաղաքական տիրող տրամադրությունները և հարաբերությունները։ Այդ նամակի մեջ Միհրդատը նկարագրում ե հռոմայեցիների անզուսպ ու անկասելի առաջխաղացումը դեպի Արևելք, նրանց մեծ կռիվներն իր հետ, նվաճումների ու ավազակային կողոպուտների նրանց անհագ ծարավը, վորին անխուսափելիորեն զոհ եյին դառնալու նաև պարթևները, և աշխատում ե Հրահատին համոզել, վոր նա իրեն ու Տիգրանի հետ միանա ընդդեմ ընդհանուր թշնամու։

Պատերազմող կողմերի համար պարթևների բռնելիք դիրքն ուներ, անշուշտ, մեծ կարևորություն։ Ուստի նաև Լուկուլլոսը, լուր ստանալով հայերի բանակցությունների մասին պարթևների հետ՝ ուղարկեց Հրահատ Գ-ի մոտ իր նոր դաշնակիցներին և աշխատեց նրան գրավել հռոմայեցիների կողմը։ Լուկուլլոսը, ինչպես հաղորդում ե Դիոնը[5], նպաստավոր խոստումներ տվեց Հրահատին

---

[1] Տես Ստրաբոն, XI, 14, 15։

[2] Տես Մեմնոն, գլ. 58, Ապպիանոս, Միհրդատ., գլ. 87։

[3] Տես Կասսիուս Դիոն, գր. 36, գլ. 1, 1—2։

[4] Սալլուստիուս, IV, frg. 20, Leipzig 1856.

[5] Տես գր. 36, գլ. 3, 1։

և, հիշեցնելով նրան Միհրդատ Բ-ի 92 թվի բարեկամական համաձայնությունը Սուլլայի հետ, պահանջեց կամ իր հետ դաշնակից լինել և կամ չեզոք մնալ ու ամենևին չմասնակցել հռոմեական-հայկական պատերազմին[1]։

Թորամանկ պարթևը չմերժեց Տիգրանի ու Միհրդատի առաջարկը, սակայն միևնույն ժամանակ Լուկուլլոսին պատասխան տվեց, որ նրա հետ պատրաստ է կնքելու բարեկամական դաշինք։ Շուտով Լուկուլլոսը դաշնագրության կնքման համար Տիգրոն ուղարկեց իր Սեքստիլիուս տեղակալին։ Բայց այս վերջինը, որն ավելի զինվորական էր, քան դիվանագետ՝ կասկածներ առաջացրեց, որ եկել է, ըստ երևույթին, իբրև լրտես և աշխատում է ծանոթանալ պարթևական երկրի ու, գլխավորապես, նրա ռազմական ուժերի հետ։ Հրահատ Գ-ը, կորցնելով վստահությունը դեպի հռոմայեցիները՝ այլևս չուզեց միանալ ու օգնել հռոմայեցիներին և վճռեց չեզոքություն պահպանել[2]։ Նրա կարծիքով, եթե պատերազմը երկու կողմերի միջև տեղի ունենար հավասար ուժերով ու առանց իր մասնակցության՝ այդ նպաստավոր ու շահավետ կլիներ հենց իր անվտանգության համար։

Պարթևների թագավորի այս անակնկալ որոշումը ընդունվեց Հայաստանում մեծ գոհունակությամբ։ Տիգրանն այժմ կարող էր որոշ չափով հույս ունենալ, որ առաջիկա պատերազմի ընթացքում նրա թիկունքը չէր ենթարկվի հարձակման պարթևների կողմից։

69/68 թվի ամբողջ ձմեռը Տիգրանը և Միհրդատը շտապ կերպով պատերազմի պատրաստություններ էին տեսնում։ Նրանք շրջում էին, ինչպես վկայում է Ապպիանոսը[3], ամբողջ երկրում և հավաքում էին նոր զորք, որի ղեկավարությունը Տիգրանը հանձնել էր հմուտ ու փորձված իր աներոջը։ Նրանք պատրաստել էին տալիս զենքեր և ռազմապիտույքներ և մթերում էին հարմար ու ամուր տեղերում ցորենի ու պարենի պաշարներ։

Ապպիանոսի ասելով՝ սկզբում Միհրդատը հրամայել էր զինվորագրել բոլոր երիտասարդ հայերին, բայց հետո զինվորության համար նրանցից ընտրել էր ամենաուժեղներին։ Հռոմեական զորքի ձևով նա բաժանել էր նոր բանակը ջոկատների ու վաշտերի և հանձնարարել էր իր հետ եկած պոնտական զինվո-

1 Տես Ապպիանոս, Միհրդատ., 87։

2 Տես Դիոն, գք. 36, գլ. 3, 2—3։

3 Միհրդատականք, գլ. 87։

րականներին, որ այդ բանակը վարժեցնեն ու մարզեն հռոմեական լեգեոնների նմանությամբ[1]։ Նախկին պատերազմների փորձը համոզել էր նրան, որ արևելյան զորքերի մեծ բազմությունը ոչ միայն անօգուտ է, այլև արգելք է հանդիսանում ռազմունակ զորամասերի մարտական գործողություններին։

Տիգրանի նոր զորաբանակի մեջ բացի հայերից հիշատակված են[2] նմանապես դաշնակից իբերները, մարգերը և, հատկապես, նաև մեդացիները, որոնք կռվում էին Ատրպատականի Միհրդատ թագավորի առաջնորդությամբ, որը հայոց թագավորի փեսան էր ու հավատարիմ վասալը։

Տիգրանի ու Միհրդատի հավաքած զորքի թիվն Ապպիանոսի մոտ[3] ցույց է տրված ավելի քան հարյուր հազար՝ յոթանասուն հազար հետևազոր և այս թվի կեսի չափ հեծելազոր։ Եքհարդի կարծիքով՝ թեև Ապպիանոսի մոտ այս զորաթվերը նախորդ տարվանից պակաս են ցույց տրված, սակայն պետք է համարվեն դարձյալ չափազանցված[4]։

68 թվի հռոմեական-հայկական պատերազմը Մոմզենը, ինչպես նաև Ռեյնաքը, բնորոշել են իբրև ազգային և կրոնական պատերազմ միացյալ Արևելքի ընդդեմ Արևմուտքի[5]։

«Կարինետային պատերազմը,—ասում է Մոմզենը,— դառնալու էր այժմ ազգային ասիական պատերազմ։ Ասիայի թագավորները և ժողովրդները միանալու էին ընդդեմ ամենազոր ու հանդուգն արևմտյան նվաճողների։ ...Այս պատերազմը դժվար չէր ներկայացնել իբրև ազգային կռիվ Արևելքի ընդդեմ Արևմուտքի, որովհետև պատերազմն ուներ հենց, իրապես, այդ բնույթը։ Կարելի էր հեշտությամբ նրան դարձնել նաև կրոնական և տարածել լուր, որ Լուկուլլոսի արշավանքի նպատակն է պարսկական Նանեայի կամ Անահիտի տաճարի գրավումը Ելիմայիսում կամ այժ-

[1] Տես Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդ., 87 և Փ լ ե գ ո ն (Fragm. Hist. Gr. III, էջ 606)։ Փլեգոնի մոտ հայկական բանակի ուսուցումն ըստ նմանության հռոմեական զորքի սխալմամբ մասնանշված է Տիգրանակերտի ճակատամարտից առաջ։

[2] Համեմատե Պլուտ., Լուկուլ., 31։

[3] Միհրդատ., գլ. 87։

[4] Տես Klio, Bd. X, 2, էջ 197։

[5] Տես Моммсен, Римская история, III, էջ 58—60 և Reinach, Mithridate Eupator, էջ 365։

մյան Լուրիստանում։ Այդ տաճարն ամենից շատ մեծարված և հարուստ սրբավայրն էր Եփրատ գետի ամբողջ առափնյա շրջանում։ Ասիացիները խմբերով հավաքվում էին մոտից և հեռվից թագավորների դրոշների տակ, վորոնք նրանց կանչել էին պաշտպանելու Արևելքը և նրա աստվածներին անաստված ոտարերկրացիներից»։

Մոմզենի այս կարծիքը, վոր ընդունելի չի համարվել և մեջ է բերվում նաև բազմաթիվ այլ յերկերում[1], միայն վերջերս քննության է առնված ու մերժված Եքհարդի աշխատության մեջ[2]։ Եքհարդն իրավացի կերպով մատնանշում է, վոր 68 թվին հայերը պատերազմում էին հռոմայեցիների դեմ, գլխավորապես, իրենց սեփական ուժերով և ունեյին իրենց հետ համեմատաբար ավելի քիչ դաշնակիցներ, քան 69 թվին։ Արևելքի մեծագույն մասը, որինակ՝ Կորդուքը, Ծոփքը, արաբները, պարթևները՝ կամ անցել էին հռոմայեցիների կողմը, կամ մնացել էին չեզոք։ Բացի այդ, ասիացիների կրոնական միությունը ևս, ինչպես իրավամբ նշում է Եքհարդը, թեև կարող է հարմար ու տեղին լինել Իսլամի սրբազան պատերազմների նկատմամբ, սակայն բնավ վոչ հին ժամանակների համար, յերբ ամեն մի գավառ ուներ իր սեփական կրոնական կենտրոնավայրը։

Մոմզենի և Ռեյնաքի սխալ այդ դիտողությունները հիմնըված են, իրավի, բացառապես միայն մի վիճելի հատվածի վրա Կիկերոնի ճառից, վորը թարգմանաբար մեջ եմ բերում առանց կրճատումների։

«Յերբ Լուկուլլոսը,—վկայում է Կիկերոնը[3],—մտավ իր զորքով նրա [Տիգրանի] թագավորությունը՝ շատ ցեղեր արդեն գրգռված էին մեր հրամանատարի դեմ։ Մեկ կողմից՝ ահով լցվել էին այն ցեղերը, վորոնց յերբեք հռոմեական ժողովուրդը մտադիր չէր յեղել անհանգստացնել կամ պատերազմի միջոցով նվաճել։ Իսկ մյուս կողմից՝ բարբարոս ցեղերի մեջ մի դաժան ու գրգռիչ կարծիք էր ստեղծվել և տարածվել, վոր իբր թե մեր զորքը յեկել էր այդ յերկրները, վորպեսզի կողոպտե ամենահարուստ ու ամենանվի-

---

1 Տես, որինակ, Халатьянц, Очерк истории Армении, եջ 198, J. Morgan, Histoire du peuple arménien, եջ 75, Լեո, Հայոց պատմություն, եջ 411։

2 Տես Klio, Bd. X, 2, եջ 195—197։

3 Տես De imperio Cn. Pompeii, գլ. 9, § 23։

բական որբատեղին։ Այսպիսով բազմաթիվ և մեծ ցեղեր վերացվել էին և նորից մտնվել ահ ու սարսափից։

Կիկերոնի ճառի այս հատվածը, ինչպես տեսնում ենք, նշում է միմիայն այն ահ ու սարսափը, որը տիրել էր բազմաթիվ ցեղերին Լուկուլլոսի վոչ թե 68, այլ՝ ինչպես ճիշտ դիտել է Եքհարդը[1] 69 թվի արշավանքի ժամանակ։ Նաև անկախ այս տարրկությունից, ինձ թվում է, վոր մեջ բերված հատվածի բովանդակությունից ևս դժվար է յեզրակացնել, վոր իբր թե 68 թվի պատերազմը յեղել էր կրոնական և ընդհանուր արևելյան։ Քաղաքների, տաճարների և հարստությունների կողոպտումը հռոմեական զորավարների ու զորքի կողմից, ինչպես հայտնի յեր, միշտ էլ յեղել է հռոմեական արշավանքների հիմնական նպատակներից մեկը։ Ուստի ժողովրդների գրգռումը և կրոնական հուզմունքը սովորական յերևույթ էին բոլոր արշավանքների ժամանակ, և դրանից չէ կարելի, իհարկե, անել այն լուրջ հետևությունները, վոր արված են 68 թվի պատերազմի նկատմամբ։

68 թվի գարնանը Լուկուլլոսը, տեսնելով վոր հայոց թագավորը վոչ նոր ճակատամարտ է տալիս, վոչ էլ խնդրում է նրանից հաշտություն՝ պատերազմը վերսկսեց ինքը, հույս ունենալով, վոր՝ նրա խուժելով ու ավերելով Հայաստանի հյուսիսային շրջանները և կամ սպառնալով Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքին՝ կըհարկադրե հայերին տալ վճռական ճակատամարտ և կրկնքե նրանց հետ վերջնական հաշտություն։

68 թվի գարնան վերջերին հռոմեական զորքը թողեց բանակամ ու դաշնակից Կորդվաց յերկիրը, ուր նա լիառատ ապրել ու հանգիստ ձմերել էր, և ճանապարհ ընկավ Տիգրանակերտի մոտով և Տավրոսյան լեռներով դեպի Մշո դաշտը և Յեփրատ-Արածանիի հովիտները։

Արշավանքի ճանապարհը Կորդուքից դեպի հյուսիս Մոմզենը, Խալաթյանցը և Լեոն[2] յենթադրել են այժմյան Բիթլիսի կիրճով և Վանա լճի արևմտյան ափերի մոտով։ Սակայն Եքհարդը[3], վորը հանգամանորեն քննության է առել այս խնդիրը՝ հանգել է այն յեզրակացության, վոր զորքերի շարժման համար ամենից հարմար ճանապարհն է այդտեղ վոչ թե Բաղեշի, այլ Ներջիկ-Շե-

[1] Klio, Bd. X, 2, էջ 196։

[2] Տես Моммсен, Римская история, III, էջ 61, Халатьянц, Очерк истории Армении, էջ 200 և Լ ե ո, Հայոց պատմություն, էջ 413։

[3] Տես Klio, Bd. X, 2, էջ 202—206։

նիկի գիծը։ Հենց այս վերջին ճանապարհագծով գնացել եյին, ինչպես համոզիչ կերպով լուսաբանել է գերմանական գիտնական Կարբեն[1], նաև Քսենոփոնը ու նրա հետ նահանջող հույները։ Նըհարդի ու Կարբեյի այս յեզրակացությունները հաստատվում են այժմ նաև Պեվտինգերյան քարտեզի ուսումնասիրությամբ։ Այդ քարտեզի վրա, ինչպես մանրամասն պարզաբանված է իմ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխատության մեջ[2]՝ ռազմական հին ճանապարհն Աղձնիքում ցույց է տրված դարձյալ Ներջիկ-Կիլդիգի վրայով։

Երբ 68 թվի ամառը Լուկուլլոսի զորքն իջավ Տավրոսյան լեռներից այժմյան Մշո դաշտը՝ այստեղ, ինչպես վկայում է Պլուտարքոսը, հացաբույսերի ցանքերը դեռևս կանաչ եյին[3], մինչդեռ Կորդվաց յերկրում, վորտեղից հռոմեական զորքը մեկնել եր մի քանի շաբաթ առաջ արդեն հնձի ժամանակ եր։ Հայկական բարձրավանդակի այս հատուկ կլիմայական յերևույթը, վոր Լուկուլլոսի համար անակնկալ մի նորություն եր, նրան մեծ անհանգստություն պատճառեց, վորովհետև մեծապես դժվարանում եր նրա բանակի պարենավորման գործը։ Անսպասելի յեր Լուկուլլոսի համար և խիստ հուսահատեցուցիչ նաև Միհրդատի ու Տիգրանի մարտավարության նոր յեղանակը, վորը գործադրվում եր այստեղ փորձված ու հնարամիտ Միհրդատի խորհրդով։

Մենք արդեն տեսանք վերև, վոր Միհրդատը, վորին հանձնարարված եր նոր հայկական զորքի նախապատրաստումը, ուշադրություն եր առել զորքի վոչ թե քանակը, այլ վորակը։ Դաշնակից թագավորները վոչ միայն այժմ ուժեղացրել եյին իրենց հետևազորը, այլև աշխատել եյին միաժամանակ, վոր իրենց ձիավոր զորքը թվով ու մարտունակությամբ գերազանց լինի հռոմեական հեծելազորից, վորը, ինչպես հայտնի յե, հռոմեական զորքի համեմատաբար թույլ և տկար մասն եր։ Միհրդատի խորհրդով՝ այժմ հիմնովին փոխվել եր նաև հայկական զորքի պատերազմելու յեղանակը։ Վորոշված եր խույս տալ վճռական մեծ ճակատամարտից և վարել լեռնային պաշտպանողական և փոքր պատերազմ։ Յերկու դաշնակիցները պարզապես ուզում եյին հռոմեական զորքը քաշել յերկրի ներսը, դժվարացնել նրա պարենա-

---

1 Տես H. Karbe, Der Marsch der Zehntausend vom Zapates zum Phasis-Araxes, 1898։

2 Տես էջ 90—94։

3 Լուկուլ., գլ. 31, համեմատե նաև Դ ի ո ն, գք. 36, գլ. 4, 2։

վորումը և հետզհետե նրան ուժասպառ անել իրենց հզոր ու արագաշարժ հեծելազորի հանկարծակի հարձակումներով։

Ռազմական այս ծրագիրն իրագործելու համար դաշնակից թագավորները, ինչպես հաղորդում է Ապպիանոսը[1], բաժանել էին իրենց զորաբանակը յերկու մասի։ Միհրդատը, վորին հանձնըված էր ամբողջ հետևազորը և հեծելազորի մի փոքր մասը՝ կրնկակոխ հետևում էր հռոմեական զորքին, սակայն՝ բանակ դնելով ու ամրանալով բլուրների վրա՝ նա համառորեն խուսափում էր վճռական ընդհարումից։ Իսկ Տիգրանը հեծելազորի մյուս մասովը սրընթաց հարձակվում էր թշնամու վրա, խանգարում էր ու խափանում նրա պարենավորումը և հասցնում նրան զգալի կորուստներ։ Այսպիսով Լուկուլլոսը և նրա զորքը շարունակ գտընվում էին Միհրդատի և Տիգրանի բանակների արանքում, վորոնցից վորևե մեկը նրանց սպառնում էր թիկունքից։

Ուշագրավ է, վոր 68 թվի այս կռիվների մասին հռոմեական աղբյուրները, մեծ մասամբ, լուռ են և մունջ։ Միայն Պլուտարքոսը, վորը Լուկուլլոսի փառաբանողն է ու գովերգուն, հիշատակել է իր հերոսի մի քանի աննշան աջողությունները։

«Տավրոսն անցնելուց հետո,—պատմում է Պլուտարքոսը[2],—Լուկուլլոսը վհատվեց, վորովհետև տեսավ վոր արտերը դեռևս կանաչ են (այստեղ ուշանում են այդքան ոդի սառնության պատճառով հնձելու ժամանակները)։ Սակայն, այնուամենայնիվ, նա ցած իջավ, յերկու կամ յերեք անգամ յետ մղեց հայերին, վորոնք նորից համարձակվել էին նրա դեմ դուրս գալ, անարգել կերպով ավերեց գյուղերը և, գրավելով Տիգրանի համար պատրաստված ցորենը՝ հակադարձեց թշնամիներին այն ծանր դրությունը, վորից ինքը վախենում էր»։

Այս մասնակի աջողությունները չունեյին, ինչպես տեսնում ենք, ռազմական խոշոր նշանակություն, վորովհետև նրանք բնավ չեյին թուլացնում դաշնակիցների կենդանի ուժը։ Սակայն ինքը հռոմեական զորքը, վորը հաճախ յենթակա յեր Տիգրանի հեծելազորի հարձակումներին, կրում էր, ինչպես դժվար չէ հետևցնել աղբյուրների վկայություններից, զգալի կորուստներ։

Պլուտարքոսի և Դիոնի պատմելով[3] Լուկուլլոսն աշխատում

1 Տե՛ս Միհրդատականք, գլ. 87։

2 Լուկուլ. գլ. 31։

3 Տե՛ս Պ լ ո ւ տ., Լուկուլ., 31, Կ ա ս ս ի ո ւ ս Դ ի ո ն, գք. 36, գլ. 4, 2։

ձեր ստիպել թշնամուն ճակատելու իրեն դեմ, վորպեսզի նրա դիմադրական ուժը կարողանա խորտակել վճռական ճակատամարտում։ Թշնամու աչքի առջև նա ավերում եր այդ նպատակով նրա յերկիրը։ Սակայն իզուր՝ թշնամին մնում եր անշարժ իր տեղում։ Նա պաշարեց այնուհետև Միհրդատի ճամբարը և սկսեց նրա շուրջը փորել խրամատներ։ Բայց իզուր եր նաև այս փորձը։ Միհրդատին անմիջապես ոգնության հասավ Տիգրանը, սպառնալով հռոմայեցիներին թիկունքից, իսկ Միհրդատը, հավատարիմ մնալով իր ծրագրին՝ այս անգամ ևս տեղից չշարժվեց։

Լուկուլլոսի դժվարին ու ապարդյուն այս արշավանքը, վորի ընթացքում նա ավելի ինքն եր կորուստներ կրել, քան թշնամին՝ տևել եր Վանա լճի հյուսիսային կողմերում առնվազն մոտ յերկու ամիս։ Արդեն սկսվել եր աշունը և հռոմեական զորքի դրությունը, վորն անսովոր եր Հայաստանի ցուրտ կլիմային՝ հետզհետե դառնում եր ավելի ու ավելի հուսահատական։ Յեթե Լուկուլլոսն այժմ յետ նահանջեր, այդ համազոր կլիներ ամոթալի պարտության։ Յեվ նա միայն այժմ, մոտ յերկու ամիս ապարդյուն կորցնելուց հետո, ուղղվեց շտապ դեպի Արտաշատ, ուր գտնվում եյին Տիգրանի որինավոր կանայք և անչափահաս զավակները[1]։ Նա հույս ուներ, վոր հին այդ մայրաքաղաքի նվաճմամբ կըկարողանա վերականգնել իր զինվորական մեծ անունը և հեղինակությունը, վոր սկսել եյին արդեն նսեմանալ հռոմեական-հայկական այս նոր պատերազմում։ Նա միևնույն ժամանակ կարծում եր, վոր Արտաշատին սպառնացող վտանգը Տիգրանին կըստիպե իր հետ վճռական կռվի բռնվելու։

Յեվ, իրավի, ինչպես վոր Լուկուլլոսը մտածում եր՝ այնպես ել յեղավ։ Յերբ Տիգրանը տեղեկություն ստացավ, վոր Լուկուլլոսն արագացրած յերթով գնում ե դեպի Արտաշատ՝ նա հասավ չորրորդ որը, ինչպես վկայում ե Պլուտարքոսը[2], հռոմեական զորքի յետևից և նրա առաջը կտրեց Արածանիի գետանցքի մոտ՝ գետի աջ ափին։ Լուկուլլոսը, վորը դեռևս գետը չեր անցել՝ գտընվում եր հայկական զորքի դիմաց Արածանիի ձախ կողմում։

Եքհարդն իր ընդարձակ ուսումնասիրության մեջ[3] աշխատել ե ճշտել թե Արածանիի ճակատամարտի այս տեղը և թե,

---

1 Տես Պլուտ., Լուկուլ., գլ. 31։

2 Լուկուլլոս, գլ. 31։

3 Տես Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X, Heft 2, եջ 221—226։

ընդհանրապես, այն ճանապարհը, վորոնցով յեկած պիտի լինեին այդտեղ Լուկուլլոսը և Տիգրանը։ Նա իրավացի կերպով չի ընդունում Ռեյնաքի[1] յենթադրությունը, ըստ վորի վերոհիշյալ գետանցքի տեղը մատնանշված է այժմյան Մանազկերտի մոտ։ Արածանին անցնելով այդ տեղում, ինչպես միանգամայն ճիշտ գիտել է Բեքհարդը, կարելի յեր գնալ Բասեն և Հասանղալա, բայց վոչ Արտաշատ։ Ինքն Բեքհարդը կարծում է, վոր հռոմեական զորքը գնացել եր, հավանորեն, Մանազկերտի մոտով դեպի հյուսիս և հասել եր Արածանիի ձախակողմն այժմյան Ղարաքիլիսեյի մոտ։ Նույն այս ճանապարհով գերմանական գիտնականները յենթադրել են, ինչպես հայտնի յե, նաև Քսենոփոնի ու նրա հետ նահանջող հույների ուղեգիծը[2]։

Սակայն ինձ ավելի հավանական է թվում, վոր ինչպես հույների նահանջի, նույնպես և Լուկուլլոսի 68 թվի արշավանքի ճանապարհը՝ պետք է յենթադրել Պեվտինգերյան քարտեզում նշանակված Isumbo-Didyma, այսինքն Ծումբ-Դիդեմ հին հաղորդակցության գծով, վորը մանրամասն լուսաբանված է «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» իմ նոր ուսումնասիրության մեջ[3]։ Այս նոր յենթադրությամբ Յեփրատ-Արածանիի ճակատամարտի տեղը վորոշվում է վոչ թե ճշտիվ այժմյան Ղարաքիլիսեյի մոտ, այլ այս գյուղից մոտ 20—30 կիլոմետր դեպի արևելք՝ այժմյան Դիդեմի հյուսիսակողմում։

Արածանիի ճակատամարտի մասին միակ մեր աղբյուրներն են Պլուտարքոսի և Կասսիուս Դիոնի վկայությունները[4], վորոնք, ինչպես կտեսնենք, հիմնապես իրար հակասում են։ Այդ յերկու վկայությունները, վոր կարոտ են լուրջ ու ուշադիր քննության՝ մեջ ենք բերում բառացի թարգմանությամբ։

1. Պլուտարքոս, Լուկուլլոս, գլ. 31՝

«Լուկուլլոսի արշավանքն Արտաշատի դեմ Տիգրանին այլևս չհանդուրժեց, այլ՝ վերցնելով հետը իր զորքերը՝ նա բանակեց չորրորդ որը հռոմայեցիների մոտ, ունենալով

---

[1] Mithridate Eupator, եջ 368, ծանոթ. 1։

[2] Համեմատե W. B e l c k, Der Weg Xenophons auf seinem Rückzuge bis in die Ebene von Alaschgert, Verhandl. d. Berl. anthrop. Gesell., 1899, եջ 661 և այլն։

[3] Տես եջ 103—114։

[4] Նույն այս ճակատամարտը համառոտակի հիշատակված է նաև Սալլուստիուսի պատմության մի հատվածում, տես գլ. IV, fragm. 74:

նրանց ու իր միջև Արածանի գետը։ Այդ գետը պետք է անհրաժեշտաբար հռոմայեցիներն անցնեյին Արտաշատ գնալիս։ Զոհ մատուցանելով աստվածներին և վստահ լինելով, որ արդեն հաղթությունն իր ձեռքումն է, Լուկուլլոսը մյուս ափն անցկացրեց զորքը, առջևում դասավորելով իր տասներկու կոհորտները, իսկ մյուսները՝ վորպեսզի թշնամուց չըրջապատվի՝ տեղավորեց հետևում[1]։ Դեմ առ դեմ սրանց կանգնած եյին բազմաթիվ ձիավորներ ու ընտիր զորքեր, իսկ նրանց առջևը գտնվում եյին ձիավոր նետաձիգ մարդերը և նիզակակիր իբերները, վորոնց բոլոր օտարականներից ավելի յեր Տիգրանը վստահում և համարում էր առանձնապես մարտունակ։ Բայց իսկապես սրանք վորևե փայլուն գործ չարին, այլ կռվի բռնվելով մի քիչ հռոմեական հեծելազորի հետ՝ չդիմացան հետո հետևազորի հարձակմանը և, փախչելով ու ցրիվ գալով այս ու այն կողմը՝ հարկադրեցին հռոմեական հեծելազորին իրենց հալածելու։ Յերբ սրանք ցրվեցին, Լուկուլլոսը, տեսնելով Տիգրանի հետ առաջացող ձիավորների շքեղությունն ու բազմությունը՝ վախեցավ։ Նա յետ կանչեց իր հեծելազորը, վորը թշնամուն հալածում էր, և առաջինն ինքը դեմ կանգնեց Ատրպատականցիներին, վորոնք իր դիմացն եյին լավագույն զորքի հետ, և, առաջ քան ձեռնակռվի գնալը, նրանց ահաբեկեց և մատնեց փախուստի։ Յերեք թագավորներից, վորոնք միասին մասնակցում եյին կռվին՝ ամենախայտառակ կերպով փախել էր, ինչպես ասում են, Միհրդատ Պոնտացին, վորը չէր դիմացել մինչևիսկ հռոմայեցիների մարտական աղաղակներին։ Հետապնդումը շարունակվեց յերկար տարածության վրա և հռոմայեցիներն ուժասպառ յեղան, վորովհետև ամբողջ գիշերը վոչ միայն սպանում եյին թշնամուն, այլև տանում և բերում եյին գերիներին ու նաև ավարը և ինչքը։ Լիվիուսն ասում է, վոր թշնամու կորուստն ավելի մեծ էր յեղել առաջին կռվում, սակայն այս կռվում սպանվել ու գերի եյին բռնվել ավելի անվանիները»։

2. Կասսիուս Դիոն[2], գք. 36, գլ. 4—5՝

«Լուկուլլոսն արշավանքը սկսեց նույն տարվա ամառվա

---

[1] Զորքի այս հատուկ դասավորության մասին (agmen quadratum) տես V. Chapot, La frontière de l'Euphrate, Paris 1907, էջ 173։

[2] Թեև Դիոնի հատվածում չե հիշատակված ճակատամարտի տեղը, սա-

կեսին (վորովհետև գարնանն անկարելի յեր թշնամու յերկ-րի վրա հարձակվել ցրտերի պատճառով) և յերկրի վորոշ մասերն ավիրեց, վորպեսզի ստիպե բարբարոսներին դիմադրել ու իր հետ պատերազմել։ Իսկ յերբ նրանք չշարժվեցին իսկի տեղից՝ նա ինքը գնաց նրանց վրա։

Հարձակման ժամանակ թշնամու այրուձին խիստ նեղը գցեց հռոմեական հեծելազորին, բայց հետևակների հետ վոչ վոք նրանցից դուրս չեկավ ճակատամարտի, այլ նրանք իսկույն յետ եյին քաշվում, յերբ Լուկուլլոսը հեծելազորին ոգնության եր տանում վահանակիրներին։ Չնայած դրան՝ թշնամիները վորևե վնաս չկրեցին, այլ նրանք, յետ դառնալով՝ նետեր եյին արձակում հետապնդողների վրա, և շատերին իսկույն սպանեցին և շատերին էլ վիրավորեցին։ Իսկ վերքերը ծանր եյին և դժվար եյին բուժվում, վորովհետև նետերն ունեյին յերկու ծայր, վորոնք այնպես եյին իրար կցված, վոր թե վերքի մեջ մնալով և թե դուրս հանվելով՝ արագ կերպով մահ եյին պատճառում։ Դրա պատճառն այն եր, վոր նետի ծայրերից մեկը, վորը վոչ մի կերպ չեր կարելի դուրս հանել՝ մնում եր մարմնի մեջ»։

Յեվրոպական գիտնականներից շատերը, որինակ, Ռեյնաքը, Նիզեն և Ֆեռեռոն[1], հավատ ընծայելով Պլուտարքոսի վերոհիշյալ վկայություններին, կարծում են, վոր Արածանիի ճակատամարտում Լուկուլլոսը հաղթություն եր տարել և Տիգրանը Միհրդատի հետ կրել եյին ծանր պարտություն։ Ռեյնաքը, հիմնվելով, բացի այդ, Փլեգոնի վկայության վրա[2], վորը, ինչպես վերև տեսանք, վերաբերվում և վոչ թե Արածանիի, այլ Տիգրանակերտի ճակատամարտին, թյուրիմացաբար մատնացույց և անել, վոր այս կռվում Տիգրանի զորքից սպանվել եյին 5000 հոգի, իսկ մի մասը գերի եյին վերցվել։

Լուկուլլոսի տարած այս հաղթության նկատմամբ համեմա-

---

կայն Եքհարդը, հիմնվելով նրա բովանդակության վրա՝ հավանական և համարում, վոր նրա մեջ հաղորդված տեղեկությունները վերաբերում են Արածանիի ճակատամարտին, տես Klio, 1910, Bd. X, 2, եջ 208։ Եքհարդի յեզրակացությունը, իմ կարծիքով, միանգամայն հիմնավոր և ու համոզիչ։

[1] Տես Reinach, Mithridate Eupator, եջ 367, Б. Низе, Очерк римской истории, С.-Петербург 1910, եջ 289 և Ферреро, Величие и падение Рима, I, եջ 196։

[2] Տես Müller, Fragm. Hist. Gr., եջ 606։

տարար ավելի զուսպ են և ձեռնպահ Մոմզենը և Եքհարդը[1]. սակայն սրանք ևս, գտնվելով որոշ չափով Պլուտարքոսի վկայությունների ազդեցության տակ՝ բավարարաչափ չեն ընդգծել հռոմեական զորքի խիստ դժվարին վիճակը, որը պարզ կերպով մատնացույց է արված Դիոնի վերոհիշյալ հատվածում։

Արածանիի մոտ, ինչպես դժվար չէ հետևցնել Կասսիուս Դիոնի վկայությունից, Տիգրանը ոչ միայն պարտություն չէր կրել, այլ, ընդհակառակը, ինքն էր ծանր հարված հասցրել հակառակորդին։ Տիգրանի հեծելազորը, ինչպես պարզ վկայում է Դիոնը, ինքը որևէ վնաս չէր կրել թշնամուց, սակայն՝ ցետ դառնալով և հետապնդող հռոմայեցիների վրա նետեր արձակելով՝ նրանցից շատերին սպանել և շատերին էլ վիրավորել էր։ Տեղի ունեցած ընդհարմանը մասնակցած և չեղել, ինչպես միանգամայն ճիշտ մատնացույց է արել Եքհարդը[2], միմիայն Տիգրանի թեթև հեծելազորն առանց հետևազորի, որը չէ հիշատակված, իրոք, ոչ Պլուտարքոսի և ոչ էլ Դիոնի վկայություններում։ Հայկական հետևազորի, ինչպես և Միհրդատի բացակայությունը՝ պետք է համարել միանգամայն հավանական, որովհետև վերոհիշյալ Պլուտարքոսի վկայությունից ևս չերևում է, որ հռոմեական զորքին հետապնդել ու նրա հետևից հասել էր իր թեթև հեծելազորով Տիգրանը։ Անհնարին էր, իհարկե, որ դանդաղաշարժ հայ հետևակազորը ևս միաժամանակ հասած լիներ Արածանիի գետափը։

Աղբյուրների մեջ բերված վկայություններից չերևում է նույնպես, որ այս կռվում ևս Տիգրանը գործադրել էր մարտավարության հին չեղանակը, այսինքն՝ ուզեցել էր ոչ թե վճռական մարտի բռնվել, այլ հարված հասցնել թշնամուն գետից անցնելու ժամանակ։ Տիգրանի հեծելազորի փախուստը պարզապես կեղծ փախուստ էր, որի միջոցին նրա նետաձիգ արագաշարժ ձիավորները նոր ջարդ էին տալիս թշնամուն։ Կռվելու արևելյան այդ ձևը գործադրել էին, ինչպես հայտնի չէ, նաև պարթևները Կրասսոսի դեմ, որը կատարյալ պարտություն էր կրել 53 թվին։

[1] Տես Моммсен, Римская история, т. III, էջ 61 և Eckhardt, Klio, Bd. X, Heft 2, էջ 208—213։

[2] Տես Klio, Bd. X, 2, էջ 210։ Միանգամայն ուղիղ են ու հիմնավոր Եքհարդի առարկությունները Մոմզենի և Ռեյնաքի դեմ, որոնց մոտ Արածանիի ճակատամարտը չի համապատասխանում աղբյուրների հաղորդած տեղեկություններին, տես Моммсен, Римская история, т. III, էջ 61 և Reinach, Mithridate Eupator, էջ 367։

Արդ՝ ընդունելով վոր հայերի կողմից Արածանիի կռվին մասնակցել եր Տիգրանի միայն թեթևաշարժ հեծելազորը՝ դժվար չե ըստ իս համոզվել, վոր Պլուտարքոսի հաղորդած տեղեկությունները, վոր իբր թե հռոմայեցիներն ամբողջ գիշերը ջարդել ու գերել եյին թշնամուն և վոր իբր թե Միհրդատ Պոնտացին առաջինն եր փախել ռազմադաշտից՝ դիտավորյալ հերյուրանքներ են, վորոնք վոչ միայն չեն հաստատվում, այլև միանգամայն հակասում են Դիոնի արժանահավատ ու անաչառ վկայություններին։

Արածանիի ճակատամարտը տեղի յեր ունեցել 68 թվի սեպտեմբերի կեսերին։ Մոտենում եր արդեն Հայաստանի դաժան ձմեռն իր բուք ու բորանով, սակայն հռոմեական զորքը դեռևս վոչ վճռական կռիվ եր ունեցել հայկական զորքի հետ, վոչ էլ վորևե զգալի աջողություն։ Ընդհանուր տարածությունը Մշո դաշտից մինչև Արածանիի վերին հոսանքը, այսինքն՝ հին Պատրանս ավանից մինչև Արածանիի գետանցքը Դիդեմի մոտ, ուր գտնվում եր այժմ հռոմեական զորքը, Պևտինգերյան քարտեզում նշանակված մեծ ճանապարհով, վորը մանրամասն լուսաբանված ե աշխարհագրական իմ նոր ուսումնասիրության մեջ՝ ընդամենը մոտ 250 կիլոմետր եր[1], և այդ համեմատաբար փոքր տարածությունը հռոմեական զորքն անցել եր մոտ 2—3 ամսվա ընթացքում։ Յեթե հռոմեական աղբյուրները մանրամասն մեզ չեն հաղորդում այս յերկարատև արշավանքի բոլոր յեղելությունները՝ այդ ինքնին արդեն հավանական մի նշան ե, վոր այդ դեպքերը նպաստավոր և պատվաբեր չեյին հռոմեական զորքի համար։ Սակայն չնայած աղբյուրների լռության՝ կարելի յե վորոհիշյալ աղքատիկ իսկ վկայություններից հետևցնել, վոր Լուկուլլոսի զորքն այդ յերկու կամ յերեք ամսվա ընթացքում արդեն բավական հյուծվել ու թուլացել եր և, ըստ յերևույթին, վերոհիշյալ փոքր գուպարածներում, ինչպես շատ ճիշտ դիտել ե Էքհարդը[2], ունեցել եր ավելի մեծ կորուստներ, քան նա կունենար վճռական մեծ ճակատամարտում։

Գետն անցնելուց հետո Լուկուլլոսն առաջնորդեց իր զորքը դեպի Արտաշատ։ Սակայն մի քանի որից հետո, ինչպես վկայում

[1] Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», Յերևան 1936, եջ 92—114։ Տարածությունը *Patransauna-ից մինչև *Tsumbo ցույց ե տրված հռոմեական քարտեզում 114 հռոմեական մղոն կամ մոտ 170 կիլոմետր, իսկ *Tsumbo-Ծումբից մինչև գետափը Didyma-Դիդեմի մոտ կլինի մոտ 80 կիլոմետր։

[2] Տես Klio, Bd. X, 2, եջ 207։

և Պլուտարքոսը, զորքը կտրականապես հրաժարվեց առաջ գնալ և պահանջեց յետ դառնալ։ Զորքի մեջ ծագած այս ապստամբությանը, որ հարկադրել էր Լուկուլլոսին յետ նահանջել Հայաստանից՝ Պլուտարքոսի և Կիկերոնի մոտ տրված են տարբեր բացատրություններ։ Պլուտարքոսն ապստամբության պատճառ համարում է այն, որ սեպտեմբեր ամսին, աշնանային գիշերահավասարի ժամանակ, հանկարծակի ձյուն էր յեկել և Հայաստանում սկսվել էին անժամանակ ցրտերը։ Իսկ Կիկերոնը, որի մոտ զորքի այս ապստամբությունը պարզ կերպով ակնարկված է, բացատրում է, որ հռոմեական զորքը մերժել էր առաջ գնալ, որովհետև նա շատ էր հեռացել իր յերկրից և կարոտել էր հայրենիքին։

Համապատասխան այդ վկայությունները մեջ եմ բերում բառացի թարգմանությամբ հունարենից և լատիներից․

1. Պլուտարքոս, Լուկուլլոս, գլ. 31՝

«Այնուհետև Լուկուլլոսը վորոշեց վստահ ու համարձակ առաջ շարժվել դեպի յերկրի ներսը և ընկճել բարբարոսներին։ Սակայն աշնանային գիշերահավասարի ժամանակ վրա հասան հանկարծակի ձմեռվա վատ յեղանակները․ շատ ձյուն էր գալիս և կամ պարզ յեղանակներին նստում էր յեղյամ և սառույց։ Յեվ այս պատճառով ձիերը դժվարությամբ էին խմում գետերի ջուրը, վորը չափից դուրս սառն էր, և նրանք դժվարությամբ էին անցնում գետերի վրայով, վորոնց կարծր սառույցները ճղում և կտրում էին նրանց յերակները։ Այդ կողմերի մեծագույն մասը խիտ ծածկված էր ծառերով, անտառապատ էր և ճանապարհները նեղ էին։ Զինվորները, վորոնք ձյունով ծածկվում էին ճանապարհին՝ շարունակ թրջվում էին և, վորովհետև թաց տեղերում էին գիշերում՝ իրենց վատ էին զգում։ Արդ՝ ճակատամարտից հետո նրանք մի քանի օր հետևեցին Լուկուլլոսին, բայց հետո ընդդիմացան։ Սկզբում նրանք խնդրում էին և ուղարկում նրա մոտ տրիբուններին, ապա՝ մեծ աղմուկով հավաքվում էին միասին և, վերջապես՝ սկսեցին գիշերը վրաններում աղաղակ բարձրացնել, վոր նշան էր ապստամբական տրամադրության։ Յեվ Լուկուլլոսը պնդում էր, իհարկե, համառորեն ու խնդրում, վոր նրանք մի փոքր էլ համբերեն, մինչև վոր կըվերցնեն Հայաստանում Կարթագենը և կըխորտակեն ամենամեծ թշնամու (այդպես էր նա անվանում Աննիբալին) գործը։ Սակայն

չկարողանալով համոզել՝ յետ տարավ նրանց ու անցավ Տավրոսն այլ ճանապարհներով և իջավ Միգդոնիա»։

2. Կիկերոն, Պոմպեյոսի հրամանատարության մասին, IX, 23—24՝

«Ինչ վերաբերում է մեր զինվորներին՝ նրանց աջողվել էր, իրոք, վերցնել մեկ քաղաք, վորը գտնվում էր Տիգրանի թագավորության մեջ, և աջողվել էր նույնպես հաղթություն տանել մի քանի ճակատամարտերում, սակայն այն կողմերի անչափ հեռավորությունը վատ էր ազդել նրանց վրա և հայրենիքի կարոտը սկսել էր նրանց հաղթահարել... Թե ինչ պատահեց հետո՝ այդ մասին յես այլևս չեմ խոսի։ Բանը վերջացավ նրանով, վոր մեր զինվորները, առաջ շարժվելու փոխարեն, պահանջեցին յետ դառնալ արագորեն»։

Ապպիանոսը և Կասսիուս Դիոնը տեղեկություններ են տալիս միայն Լուկուլլոսի նահանջի մասին, առանց հիշելու ապստամբության անպատվաբեր փաստը։ Ապպիանոսը նահանջի պատճառ է համարում վրա հասնող ձմեռը[1], իսկ Դիոնը վիրավորների մեծ թիվը և սննդամթերքների պակասությունը[2]։

Մոմզենը, Ռեյնաքը, Ֆեռեռոն և ուրիշ պատմաբաններ ընդունելի և արժանահավատ են համարել վերոհիշյալ հաղորդագրություններից, գլխավորապես, Պլուտարքոսի վկայությունը, վորին աղբյուր էր ծառայել Լիվիուսը։ Նախապատվություն տալով Պլուտարքոսին՝ նրանք դժբախտաբար աչքաթող են արել Կասսիուս Դիոնին, վորը թեև չի հիշատակել հռոմեական զորքի ապստամբությունը, սակայն նահանջի մասին տվել է ուշագրավ ու միանգամայն վստահելի տեղեկություն։ Դիոնին նրա պատմության այս մասում աղբյուր էր ծառայել, անկասկած, Սալլուստիուսը, վորը հռոմեական հնագույն պատմիչների մեջ համարվում է բոլորից լրջմիտը և անաչառը։

Բոլորովին ճիշտ են այս տեսակետից Եքհարդի դիտողությունները[3], վորը հիմնական պատճառ զինվորական ապստամբության համարել է վոչ այնքան անժամանակ ցուրտը, ինչպես այդ մատնանշված է Պլուտարքոսի մոտ, վորքան հռոմեական զորքի մեծ կորուստները, վիրավորների շատությունը և սննդամթերք-

1 Տես Միհրդատ., գլ. 87։

2 Տես գր. 36, գլ. 6, 1։

3 Տես Klio, Bd. X, 2. էջ 213—216։

ների պակասությունը, ինչպես այդ պարզ կերպով մատնացույց ե արված Դիոնի մոտ։ Իրավացի յե նույնպես և Ասատուրյանը[1], վորը կարծում ե, վոր Նահանջի բուն պատճառը յեղել ե հռոմեական զորքի բարոյալքումը և վհատությունն իր լուրջ անաջողությունների պատճառով։ Ցեթե միայն ցուրտը լիներ ապստամբության պատճառը՝ հռոմեական զորքը պետք ե, ընդհակառակը, վոչ թե յետ նահանջեր, այլ առաջ գնար դեպի Արտաշատ, վորն արդեն շատ մոտ եր և վորը վոչ միայն կազատեր նրանց ցրտից, այլև կըտար պատերազմական մեծ ավար։

Արտաշատի հեռավորությունը հռոմեական բանակի վերջին ճամբարակայանից կարելի յե ըստ իս ճշգրիտ կերպով վորոշել։ Համաձայն Պեվտինգերյան քարտեզի տարածությունն Արածանիի գետանցքից մինչև Արտաշատ ընդամենը մոտ 170 կիլոմետր ե։ Ըստ Պլուտարքոսի՝ Արածանիի ճակատամարտից հետո հռոմեական զորքը Արտաշատի ուղղությամբ առաջ եր շարժվել դեպի յերկրի ներսը և ապստամբության ժամանակ, ինչպես յերևում ե նրա նկարագրությունից, դեռևս չեր հասել Արարատյան դաշտը։ Արածանիի ափից նա կարող եր մի քանի որում գնացած լինել, Պլուտարքոսի մոտ նկարագրված ծանր պայմաններում, առառավելն 50—70 կիլոմետր։ Ուրեմն, դժվար չե կռահել, վոր Լուկուլլոսի զորքը, վորը գնում եր Արտաշատ Պեվտինգերյան քարտեզում նշված մեծ ռազմական ճանապարհով ու հին Բագավանի և Արուճի մոտով՝ իր առաջշարժման վերջին որում գտնվել եր, հավանորեն, ճանապարհի ամենադժվար մասում, այժմյան Կուջաղի կամ Կարվանսարայի լեռնանցքում՝ Արտաշատից ընդամենը մոտ 100 կիլոմետր հեռավորության վրա[2]։

Լուկուլլոսի նահանջի ճանապարհը Հայաստանից դեպի Միջագետք մանրամասն քննության ե առնված Եքհարդի աշխատության մեջ[3]։ Այդ ճանապարհը, մատնանշված ե, ինչպես վերև տեսանք, Պլուտարքոսի մոտ։ Համաձայն սրա վկայության Լուկուլլոսն իր զորքերը յետ եր տարել վոչ թե վերոհիշյալ հին ճանապարհով, այլ նոր ուղղությամբ։ Նա Տավրոսն անցել եր մի այլ լեռնանցքով և իջել եր Միգդոնիա նոր ճանապարհով։ Եքհարդն այս ճանապարհը յենթադրում ե այժմյան Խոյի վրայով

---

1 «Քաղաքական վերաբերությունները», եջ 63 և այլն։

2 Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», եջ 17—46։

3 Տես Klio, Bd. X, 2, եջ 226—231։

դեպի Բաշկալե և այնտեղից Ջուլամերկի, Զախոյի և Ջեզիրեյի վրայով դեպի Մծբին։ Ինձ թվում է, որ նահանջի ճանապարհը, որը պետք է յենթադրել, անտարակույս, կամ Բերկրիի ձորով և կամ հին Արտազ գավառի միջով՝ դժվար է ճշտիվ որոշել, որովհետև բացի Պլուտարքոսից չկան այդ մասին որևէ այլ տեղեկություններ։

Հյուսիսային Միջագետքում, ուր Տավրոսյան լեռներից իջել էր Լուկուլլոսը 68 թվի հոկտեմբեր ամսին՝ դեռևս ամառնային տաք յեղանակներ էյին։ Հայերի ձեռքին էր գտնվում այստեղ Մծբինը, որը նշանավոր բերդաքաղաք էր և շրջապատված էր կրկնակի՝ արտաքին և ներքին պարիսպներով։ Գերագույն իշխանությունը Մծբինում, որն ուներ ռազմական ու ստրատեգիական մեծ նշանակություն, Տիգրանը հանձնարարել էր, ինչպես վերև տեսանք, իր յեղբորը Գուրասին։

Արդ՝ ուշագրավ է ու հետաքրքիր, որ հռոմեական զորքը, որն ապստամբել էր և չէր ուզեցել գնալ Արտաշատ՝ այժմ պաշարեց Մծբինն առանց որևէ հակառակության։ Սակայն այս պաշարումի[1] առաջին ամիսները չտվեց ոչ մի հետևանք։ Քաղաքը, որի փաստական հրամանատարն էր ու պաշտպանը հռչակավոր հույն ճարտարապետ Կալլիմաքոսը, ցույց տվեց նույնպիսի ուժեղ դիմադրություն, ինչպես և Տիգրանակերտը։

Քաղաքի պաշտպանները, ինչպես վկայում է Դիոնը, միանգամայն վստահ էյին, որ հռոմայեցիները ստիպված են լինելու հեռանալ։ Բայց անսպասելի կերպով, անձրևային ու փոթորկալից մի մութ գիշեր, յերբ ոչինչ չէր կարելի նկատել կամ լսել՝ հռոմայեցիներին աջողվեց մոտենալ քաղաքին և տիրել արտաքին պարսպին։ Այնուհետև ներքին պարիսպը ևս հնարավոր չեղավ, մթության ու հորդ անձրևի պատճառով, պաշտպանել նետաձգությամբ ու այրվող նավթով։ Հռոմայեցիները լցրին միջպարիսպային փոսը ցախով և հեշտությամբ վերցրին նաև յերկրորդ պարիսպը։ Պարիսպների գրավումից հետո՝ Գուրասը և բերդապահ զորքը, որոնք ամրացել էյին միջնաբերդում, անձնատուր յեղան որոշ պայմանով և ազատ արձակվեցին։ Միայն Կալլի-

---

1 Պաշարման մասին մանրամասն տեղեկություններ են հաղորդում Պլուտարքոսը և Կասսիուս Դիոնը, տես Պ լ ու տ., Լուկ., գլ. 32 և Դ ի ո ն, գք. 36, գլ. 6—7։

*մաքոսը, որը Մծբինից առաջ աջողությամբ ղեկավարել էր նաև պաշարված Ամիսոսի պաշտպանությունը, համարվեց հանցավոր և շղթայվեց։*

*Մծբինի առումը Լուկուլլոսի վերջին աջողությունն էր։ Այնուհետև նրա աստղը հետզհետե բոլորովին խավարեց և հռոմեական զորքը, ինչպես կտեսնենք, անփառունակ կերպով հեռացավ Հայաստանից։*

## 15. ՏԻԳՐԱՆԻ ՅԵՎ ՄԻՀՐԴԱՏԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԱՌԱՋՇԱՐԺՈՒՄԸ ՅԵՎ ԼՈՒԿՈՒԼԼՈՍԻ ՆԱՀԱՆՋԸ

*Մինչ հռոմեական զորքը յերկար ու դժվար ճանապարհներով իջնում եր Միջագետք և պաշարել եր այստեղ Մծբինը՝ Միհրդատը և Տիգրանը, փոխանակ հուսաբեկ ու բարոյալքված թշնամուն հալածելու, հարձակվեցին հռոմեական զորամասերի վրա Պոնտոսում և Տիգրիսի հյուսիսակողմում։ Նրանք դարձյալ շարունակեցին վարել տեղային մանր կռիվներ, վորոնք ունեցել եյին աջող հետևանքներ և, ինչպես տեսանք, հյուծել ու անբարոյացրել եյին Լուկուլլոսի գլխավոր բանակը։*

*Միհրդատը, իր հետ վերցնելով ութ հազար զորք, վորոնցից չորս հազարը հայեր եյին, վոր նա ստացել եր Տիգրանից՝ գնաց Պոնտոս, վորպեսզի վերագրավե իր թագավորությունը, իսկ Տիգրանն աշխատեց վերանվաճել իր բուն թագավորության հարավային շրջանները*[1]*։ Այստեղ՝ Տիգրիս գետի հյուսիսակողմում, վորը Մեծ Հայաստանի հարավամասն եր՝ Տիգրանը վերագրավեց մի շարք շրջաններ և շրջապատեց ու պաշարեց տեղական ամրություններից մեկը, վորի մեջ պատսպարվել եյին հռոմեական Լուկիուս Փաննիուս զորավարն ու նրա զորքերը։ Փաննիուսին, ինչպես վկայում և Դիոնը*[2]*, Միջագետքից ոգնության եր յեկել և ազատել ինքը Լուկուլլոսը։*

*Նույնպես և Միհրդատը, վորը մտել եր նախ Փոքր Հայքի արևելյան շրջանները, ահաբեկելով այստեղ հռոմայեցիների ցրված ու թույլ ուժերը և կոտորելով մաս առ մաս թշնամիներին՝ մեծ արագությամբ գրավել եր իր թագավորության արևելյան մասերը։ Այստեղից նա կոչ եր արել իր ժողովրդին զենք առնել ու ապստամբել և խոստացել եր ազատել բոլոր պոնտացիներին, վորոնք հռոմայեցիների մոտ աշխատում եյին վորպես ստրուկներ։*

---

[1] Տես Ապպիան., Միհրդատ., գլ. 88 և Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 8—9։

[2] Տես գք. 36, գլ. 10։

Ժողովուրդը, ինչպես վկայում է Դիոնը[1], դրկարաց ընդունում էր և օգնում Միհրդատին, վորովհետև ատելությամբ լցված էր դեպի հռոմայեցիները ու նրանց դաժան ու հարստահարող իշխանավորները։

Ցերբ Միհրդատը Փոքր Հայքից անցավ Պոնտոսի ներքին գավառները՝ նրա դեմ դուրս յեկավ հռոմեական Փաբիուս Հադրիանուս զորավարը։ Սակայն Միհրդատի նախկին վարձկան թրակական զորքը և նմանապես նաև պոնտացիները, վորոնք հռոմայեցիներին սպասարկում եյին իբրև ստրուկներ՝ կապ հաստատեցին Միհրդատի հետ, օգնեցին նրան[2] և տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ խմբերով անցան նրա կողմը։ Հռոմայեցիները թեև այս ճակատամարտում մեծ կորուստներ եյին կրել, սակայն Հադրիանուսը կարողացել էր աղետալի մարտը դադարեցնել շնորհիվ միայն այն հանգամանքի, վոր թշնամին ստիպված էր մարտադաշտից դուրս տանել Միհրդատին, վորը ծանր վիրավորվել էր[3]։ Հռոմեական պարտված զորքի մնացորդները փախան ու ամրացան Կաբիրա բերդաքաղաքում։

Հադրիանուսին օգնության հասավ Տրիարիուսը, վորը նրան պաշտոնանկ արեց և փոխարինեց[4]։ Սակայն սա ևս չկարողացավ դուրս վտարել Պոնտոսից թշնամուն և հարկադրված յեղավ ձմերել Գադիուրայում՝ դեմ առ դեմ Միհրդատի զորաբանակին, վորը գտնվում էր պոնտական Կոմանայի կողմերում։ Միհրդատն ամրացավ այստեղ Իրիս գետի հարավակողմում և աշխատեց նոր ուժեր հավաքել Փոքր Հայքից, վորն ամբողջովին ազատված էր հռոմեական տիրապետությունից։ Նմանապես և Տրիարիուսը դիմեց Լուկուլլոսին և, հայտնելով նրան Հադրիանուսի պարտության ու հռոմայեցիների վտանգված դրության մասին՝ խնդրեց նրանից օգնություն։

Լուկուլլոսը, տեղեկություն ստանալով հռոմեական զորքի անաջողությունների մասին՝ վճռեց Պոնտոսը փրկելու համար դուրս տանել իր զորքը Միջագետքից և հրաժարվել Անդրյեփրատյան իր նվաճումներից։ Սակայն նրա լեգեոնները, վորոնք ուրախ ու հանգիստ ապրում եյին ձմեռվա տաք կայաններում՝ հրաժարվեցին արշավանքի դուրս գալ գարնանից առաջ[5]։ Այս

---

1 Գք. 36, գլ. 9, 2։

2 Տես Դ ի ո ն, գք. 36, գլ. 9, 3—4։

3 Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատ., գլ. 88։

4 Տես նույնը, գլ. 88։

5 Համեմատե Պ լ ու տ., Լուկուլ., գլ. 34։

արդեն յերկրորդ անգամն էր, վոր հռոմեական զորքերը չեյին հընազանդում իրենց հրամանատարին և ըմբոստաբար ու ինքնագլուխ խախտում եյին զինվորական կարգապահությունը։

Պետք է ասել, վոր 68 թվի հայկական անաջող արշավանքից հետո Լուկուլլոսի դրությունը սկսել էր խիստ տատանվել։ Հենց հռոմեական-հայկական այս կռիվների ժամանակ Հռոմում ուժեղացել էր նորից դեմոկրատական կուսակցությունը, վորը համառորեն աշխատում էր վարկաբեկել ու տապալել այս հզոր հակառակորդ զորավարին, վորը Սուլլայի համախոհն էր ու կուսակիցը։ Դեմոկրատական կուսակցությանը և, գլխավորապես, դրամատերերի ու կապալառուների ագիտացիային պետք է վերագրել, վոր դեռևս 69/68 թվերին Լուկուլլոսին զրկել եյին Ասիայի ու Կիլիկիայի կուսակալության պաշտոններից։ Զայրույթն ավելի ևս սաստկացել էր նրա դեմ 68 թվի անաջող կռիվներից հետո։ Նրա հեղինակության անկումը Հռոմում անդրադառնում էր, բնականաբար, զորքի վրա։ Լեգեոնարների մեջ արդեն լուրեր եյին պտտում, վոր Հռոմում վորոշված է Լուկուլլոսին պաշտոնից հեռացնել։ Այսպիսով, 68 թվի կռիվներից ու նահանջից հետո, զինվորների սանձարձակությունը շարունակ ուժեղանում էր և նրանց մեջ սաստկանում եյին ըմբոստության ու ապստամբության տրամադրությունները։ Զորքն այժմ պահանջում էր, վոր իրեն թույլ տրվի վերադառնալ Իտալիա։ Զինվորներից շատերը, վորոնց ծառայության ժամկետը լրանում էր 67 թվին և վորոնք իրենց զինվորության ընթացքում կողոպտել եյին բազմաթիվ հարուստ քաղաքներ ու շրջաններ՝ այժմ այլևս ընչազուրկ պրոլետարներ չեյին, այլ կարողության տեր եյին և ունևոր։ Միանգամայն բնական է, վոր նրանք չեյին ուզում վտանգի յենթարկվել նոր կռիվներում, այլ շտապում եյին վերադառնալ Իտալիա և ապրել այնտեղ կուշտ և անդորր։

Շնորհիվ իր զորքի ընդդիմությանը Լուկուլլոսը, ինչպես տեսանք, ստիպված յեղավ մնալ Միջագետքում 68/67 թվի ամբողջ ձմեռը։ Միայն 67 թվի գարնան սկզբին նա թողեց Տիգրանակերտն ու Մծբինը և, անցնելով Յեփրատի աջ կողմը՝ ոգնության շտապեց Պոնտոսին։ Դատարկելով Միջագետքը և հարավային Հայաստանը՝ Լուկուլլոսը, ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Մոմզենը, հրաժարվում էր, անշուշտ, բոլոր իր փայլուն հույսերից, վոր կապված եյին հայկական արշավանքի հետ[1]։

[1] Տես Моммсен, Римская история, III, եջ 63։

Մինչ Լուկուլլոսը Տրիարիուսին օգնության էր գնում՝ արդեն Պոնտոսում սկսվել էին պատերազմական գործողությունները։ Տրիարիուսը, վորն ուներ մոտ տասը հազար զորք՝ սկզբում աշխատեց խուսափել ընդհարումից և ամրացավ իր ճամբարում Գազիուրայի մոտ։ Սակայն յերբ Միհրդատն ուզեց պաշարել Դադասա ամրությունը, ուր գտնվում էին հռոմեական զորքի հափշտակած ավարն ու գույքը՝ Տրիարիուսի զինվորները սրան հարկադրեցին օգնության գնալ Դադասայի կայազորին։ Դուրս գալով ամրացրած ճամբարից՝ Տրիարիուսը ստիպված յեղավ մարտի բռնվել Միհրդատի հետ Գազիուրայի և Զելայի միջև խիստ վտանգավոր վայրում։ Չնայած վոր հռոմայեցիները ցույց տվին թշնամուն ուժեղ դիմադրություն՝ հայ-պոնտական զորքերը կարողացան յետ մղել հռոմեական հետևազորը մի տղմուտ ձորի մեջ, ուր նա գրեթե ամբողջությամբ կոտորվեց։ Փախուստի էին դիմել ու ազատվել միմիայն ինքը Տրիարիուսը և հռոմեական հեծելազորը։

Ըստ Ապպիանոսի և Պլուտարքոսի վկայությունների[1] հռոմեական զորքից սպանվել էին ճակատամարտում 24 ռազմական տրիբուններ, 150 հարյուրապետներ և մոտ 7000 զինվորներ։ Տրիարիուսի այս ծանր պարտության մասին առանձնապես ուշագրավ է Կիկերոնի վկայությունը, վորը մատնանշում է, վոր ինքը, հետևելով հռոմեական պատմագիրների օրինակին՝ լռություն է պահպանելու պարտության մասին։ Վերջինս, ասում է Կիկերոնը, այնքան մեծ էր, վոր գլխավոր հրամանատարը իմացել էր նրա մասին վոչ թե ճակատամարտին մասնակցող լրաբերից, այլ ժողովրդի մեջ պտտող լուրերից[2]։ Սպանվածների դիակները, յերեք տարի անթաղ մնալուց հետո, հողին էր հանձնել Պոմպեյոսը 64 թվին։

Լուկուլլոսը դեռևս կես ճանապարհին էր գտնվում, յերբ նա տեղեկացավ, վոր Տրիարիուսը, վորին նա օգնության էր գնում՝ ծանր պարտություն էր կրել թշնամուց։ Նա ուզեց վերսկսել ճակատամարտը և վրեժ առնել Միհրդատից Տրիարիուսի պարտության համար, սակայն Միհրդատը մարտը չընդունեց և, նախապատվություն տալով մարտավարության նախկին գործելակերպին՝ գերադասեց սպասել Տիգրանին և վերսկսել նրա հետ միա-

---

[1] Տես Ապպ., Միհրդ., գլ. 89 և Պլուտարքոս, Լուկուլ., գլ. 35։

[2] Տես De imp. Pompeii, IX, 25:

արին լեռնային փոքր պատերազմը, վորը, ինչպես տեսանք, փայլուն հետևանքներ եր տվել 68 թվի կռիվներում։

Գաղիուրայի ու Զելայի կողմերից, ուր պարտություն եր կրել Տրիարիուսը՝ Միհրդատը շտապեց յետ քաշվել Փոքր Հայք, վերցնելով իր հետ այնքան պաշարեղեն, վորքան հնարավոր եր տանել[1]։ Իսկ այն, ինչ վոր դժվար եր տանել, նա վոչնչացրեց, վորպեսզի դժվարացնե թշնամու պարենավորումը։ Ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[2], նա իր զորքի հետ նահանջել եր Տալավրայի բարձունքները և, ամրանալով այստեղ՝ սպասում եր Տիգրանի գալստյան։ Յեվ նույն այդ ժամանակ Ատրպատականի թագավոր Միհրդատը, վորը Տիգրանի փեսան եր՝ հանկարծակի հարձակումներով հալածում ու սրի յեր քաշում այս ու այն կողմ ցրված հռոմեական փոքր զորամասերը[3]։

67 թվի գարնանը Լուկուլլոսը և նրա զորքը գտնվում եյին Փոքր Հայքում՝ դեմ հանդիման Միհրդատի զորաբանակի։ Իսկ թիկունքից, ինչպես և 68 թվի կռիվներում, նրան սպառնում եր Տիգրանը, վորը վերագրավել եր արդեն իր բուն թագավորության հայկական հարավային յերկրները և պատրաստվում եր ոգնության գալու աներոջը։ Լուկուլլոսի ու նրա զորքի դրությունը խիստ ծանր եր, վորովհետև հայ-պոնտական զորքերն անընդհատ ուժեղանում եյին ու ստանում թարմ զորական ուժեր, մինչդեռ հռոմեական բանակը, վորը շարունակ կորուստներ եր կրել՝ գրեթե չեր ստանում ոժանդակ նոր զորամասեր։

Արդ՝ կարիք ունենալով կորուստների լրացման՝ Լուկուլլոսը Փոքր Հայքից սուրհանդակներ ուղարկեց Կիլիկիայի նորընտիր Կվինտուս Մարկիուս Ռեքս կուսակալի մոտ և խնդրեց նրանից ոգնություն։ Այս վերջինը, վորն այդ ժամանակ գնում եր իր շրջանը՝ արդեն հասել եր Լիկաոնիա և ուներ իր տրամադրության տակ յերեք լեգեոն։ Լուկուլլոսը լիահույս եր, վոր Մարկիուս Ռեքսն իր խնդիրը չի մերժի, վորովհետև նա հետևորդ եր քաղաքական միևնույն կուսակցության և միաժամանակ իր քենակալն եր։ Սակայն այդ միանգամայն զուր հույսեր եյին։ Մարկիուս Ռեքսը մերժեց նրա խնդիրը և պատասխանեց, վոր իր զորքերը չեն համաձայնվում գնալ Հայաստան[4]։

---

1 Տես Ա պ պ ի ա ն., Միհրդ., գլ. 90։

2 Գք. 36, գլ. 14, 2։

3 Տես Դ ի ո ն, գք. 36, գլ. 14, 2։

4 Տես Ս ա լ լ ու ս տ ի ու ս, V, fr. 12 և 13, համեմատե նաև Կ ա ս ս ի ու ս Դ ի ո ն, 36, 15, 1 և 17, 2։

Վատ եյին նաև Հռոմից հասած լուրերը։ Տրիարիուսի պարտության լուրը հռոմայեցիների ականջը հասնելուց հետո՝ Լուկուլլոսի հակառակորդները նոր առիթ ունեցան սաստկացնելու իրենց պայքարը նրա դեմ։ 67 թվի գարնանը նրանք կարողացան հասնել իրենց վերջնական նպատակին։ Ժողովրդական տրիբուն Գաբինիուսի առաջարկությամբ Հռոմում ընդունվեց մի նոր որենք, վորը Լուկուլլոսից յետ եր վերցնում նրա հրամանատարության իրավունքն ընդդեմ Միհրդատի, ինչպես և Բիթանիայի ու Պոնտոսի կուսակալությունները, և տալիս եր այդ իրավունքները նույն տարվա կոնսուլ Մանիուս Ակիլիուս Գլաբրիոնին։ Նույն որենքով արձակուրդ եր տրվում Լուկուլլոսի հրամանատարության տակ գտնվող այն լեգեոնարներին, վորոնց ծառայության ժամկետն արդեն լրացել եր։ Որենքը հակառակողներին սպառնում եր նրանց գույքի բռնագրավմամբ։ Հռոմի այս կարգադրությունները, ինչպես հաղորդում ե Ապպիանոսը[1], իսկույն հրապարակվել եյին ամբողջ Ասիայում։

Այսպիսով Լուկուլլոսը, վորն արդեն վարկաբեկ եր յեղել իր բանակում 68 և 67 թվերի ռազմական անաջողությունների ու պարտությունների պատճառով՝ վերոհիշյալ որենքի հրապարակումից հետո կորցրեց բոլորովին իր վարկն ու հեղինակությունը։ Գտնվելով այսպիսի ծանր դրության մեջ՝ նա տեսավ, վոր իրեն ուրիշ վոչինչ բան չեր մնում անել, քան հանձնել հրամանատարությունը կոնսուլ Գլաբրիոնին, վորն արդեն ժամանել եր Փոքըր Ասիա։ Նա խնդրեց այս վերջինին, վոր համաձայն հռոմեական ժողովրդի վորոշման ընդունե իրենից զորքի գերագույն հրամանատարությունը։ Սակայն Գլաբրիոնը ևս, ինչպես և Մարկիուս Ռեքսը, մերժեց նրա խնդիրը և չհամաձայնեց վերցնել իր վրա նրա պատասխանատու պաշտոնը, վորը դառել եր չափազանց դժվար ու վտանգավոր։

Այսպիսով Լուկուլլոսը, թողնված լինելով ինքն իրեն և վախենալով, վոր Միհրդատն ու Տիգրանն իրեն կարող են շրջապատել Տալավրայի մոտ՝ հրաման տվեց իր զորքին արշավել Տիգրանի դեմ, հույս ունենալով, վոր կաջողվի հանկարծակիի բերել նրա հոգնած զորքը, վորը շտապում եր ոգնության գալ Միհրդատին և արդեն գտնվում եր Յեփրատ գետի մոտ։ Հռոմեական լեգեոնները սկզբում, թվում եր, թե կատարում եյին նրա հրամանը։

---

[1] Միհրդատ., գլ. 90, համեմատե Ս ա լ լ ու ս տ ի ու ս V, fr. 14 (Kritz):

*Սակայն երբ նրանք, դուրս գալով Փոքր Հայքից՝ հասան մեծ ճանապարհի մոտ, որը մի կողմից գնում էր դեպի Եփրատ գետը, իսկ մյուս կողմից՝ դեպի Գալատիա՝ նրանք հրաժարվեցին գնալ հայերի դեմ և գերադասեցին յետ դառնալ արևմուտք։ Զինվորների մեծագույն մասը, որոնց ծառայության ժամանակն արդեն լրացել էր՝ հայտնեցին, որ համաձայն օրենքի արդեն իրենք արձակված են ծառայությունից և որ Լուկուլլոսն այլևս իրավունք չունի իրենց առաջնորդելու։*

*Այնուհետև, ինչպես վկայում է Պլուտարքոսը*[1]*, Լուկուլլոսը, տխուր ու հուսահատված, մտնում էր նրանց վրանները, նաև դիմում էր նրանց անհատապես։ Նա լաց էր լինում, աղաչում և մինչևիսկ համբուրում էր նրանց ձեռքերը՝ բայց իզուր։ Հռոմեական զորքը մնաց անդրդվելի ու կտրականապես մերժեց գնալ Տիգրանի ու հայերի դեմ, և Լուկուլլոսը ստիպված յեղավ յետ քաշվել դեպի Գալատիա*[2]*։ Արձակուրդ ստացած զինվորները համաձայնեցին սակայն մնալ նրա բանակում մինչև ամառվա վերջը և հայտնեցին, որ յեթե այդ ժամանակամիջոցում թշնամին չերևա ու չկռվի հռոմեական զորքի հետ՝ նրանք այնուհետև իրենց ազատ կհամարեն ու կցրվեն։ Լուկուլլոսը, որը գոհ ուրախ լիներ, որ արձակուրդավորներն առժամանակ մնում են բանակում՝ հարկադրված յեղավ ընդունելու այդ պայմանները, և 67 թվի ամբողջ ամառը նրա զորքը համաձայն այդ պայմանի կանգնած մնաց անշարժ Գալատիայի արևելյան շրջաններում և, գլխավորապես, Տրոկմերի յերկրում։*

*Նույն այս 67 թվին, յերբ Լուկուլլոսը խաղալիք ու ծաղրի առարկա յեր դառել հռոմեական բանակում՝ Միհրդատը վոչ միայն կարողացել էր տիրել իր ամբողջ թագավորությանը, այլև նրա հեծելազորն արդեն ասպատակում էր Բիթանիայի արևելյան շրջանները, իսկ Տիգրանը, Եփրատ գետն անցնելուց հետո՝ ներս էր խուժել Կապպադովկիա*[3] *և իր փեսայի, Ատրպատականի Միհրդատ թա-*

[1] *Տես Լուկուլ., գլ. 35։*

[2] *Հռոմեական զորքի անվթար վերադարձը Փոքր Ասիա Մոմզենը համարում է զինվորական գործում այնպիսի մի հրաշք, որն իրենից շատ յետ է թողնում մինչևիսկ Քսենոփոնի նահանջը (տես* Римская история, III, *եջ 64)։ Մոմզենի այս գնահատականը ակներև մի չափազանցություն է, որովհետև Լուկուլլոսը Միջագետքից նահանջել էր Փոքր Ասիա, գլխավորապես, Ծոփքի և Կապպադովկիայի վրայով, որոնք բարեկամ ու դաշնակից յերկրներ էյին։*

[3] *Տես Պլուտ., Լուկ., գլ. 35։ Ապպիանոսի մոտ (գլ. 91) Կապպադովկիայի վրա հարձակումը վերագրված է Միհրդատ Պոնտացուն։*

գավորի հետ, նվաճում ու ավերում եր այդ յերկիրը։ Նա նորից կարողացել եր հալածել ու դուրս վտարել յերկրից Կապպադովկիայի Արիոբարզան թագավորին, վորը վոչ մի ոգնություն չեր ստացել վոչ Լուկուլլոսից, վոչ նրա փոխանորդ Գլաբրիոնից և վոչ էլ Կիլիկիայի նոր կուսակալից[1]։

67 թվի ամառը Լուկուլլոսի մոտ յեկել եյին հռոմեական ծերակույտի լիազորները, վորոնց նա խնդրել եր ուղարկել Պոնտոս, վորպեսզի նրանք համաձայն ընդունված կարգերի կազմակերպեն նվաճված յերկրի գործերը։ Սակայն այս լիազորների գալն այժմ, իհարկե, միանգամայն անիմաստ եր։ 67 թվի ամառը հռոմայեցիները Պոնտոսում այլևս չունեյին և վոչ մի թիզ հող և այդ յերկիրը հարկավոր եր վերստին նվաճել զենքի ուժով։

67 թվի ամառվա վերջին Լուկուլլոսի բանակից խմբերով հեռացան արձակուրդ ստացած զինվորները, վորոնց ծառայության ժամանակն արդեն լրացել եր։ Նմանապես և յերիտասարդ զինվորներից շատերը չուզեցին մնալ նրա մոտ և գերադասեցին շարունակել իրենց զինվորական ծառայությունը կոնսուլ Գլաբրիոնի մոտ, վորն, ինչպես տեսանք, ուղարկված եր իբրև Լուկուլլոսի փոխանորդ։ Ապպիանոսի ասելով[2] հռոմեական այս մեծ զորավարի մոտ այժմ մնացել եյին միմիայն աննշան թվով զինվորներ, վորոնք բոլորովին աղքատ եյին և չունեյին փող ճանապարհածախսի համար։

Ինչպես տեսնում ենք, Լուկուլլոսի վարած պոնտական ու հայկական պատերազմները, վոր նա փայլուն կերպով սկսել եր յոթը տարի առաջ, վերջանում եյին այսպիսով բոլորովին անփառունակ կերպով։

> «Հենց այսպես,—ասում և Ռեյնաքը,—յոթը տարվա կատաղի պատերազմից հետո՝ դեպքերը պարզապես հանգել եյին դարձյալ նույն մեկնակետին։ Լուկուլլոսի մեծամեծ հաղթությունները չքանում եյին ինչպես մի յերազ։ Հռոմեական արծիվները նույնպիսի արագությամբ, ինչպես նրանք գնացել եյին առաջ՝ յետ դարձան Յեփրատից դեպի Տավրոս և Տավրոսից դեպի Հալիս։ Կապպադովկիան արդեն կորցըված եր, Բիթանիան անդամատված, պրովինցիա Ասիան վտանգված»[3]։

1 Տես Դ ի ո ն, գք. 36, գլ. 17, 1 և Կ ի կ ե ր ո ն, Պոմպեյոսի հրամանատարության մասին, V, 12։

2 Միհրդատ., գլ. 90։

3 Reinach, Mithridate Eupator, եջ 377։

Թե վորքան ծանր դրություն եր ստեղծվել Փոքր Ասիայում 67 թվի վերջերին՝ այդ մանրամասն մատնացույց ե արված Կիկերոնի «Պոմպեյոսի հրամանատարության մասին» ճառում։ Իր այդ ճառի մեջ[1] Կիկերոնը նշում ե, վոր Բիթանիայում հրդեհված ու վոչնչացված եյին բազմաթիվ գյուղեր և վոր հռոմեական ամբողջ Ասիան սպասում եր, վոր յերկու հզոր թագավորները, վորոնք Հռոմի ամենավոխերիմ թշնամիներն եյին, կընդերխուժեն շուտով և կավերեն հռոմեական շրջանները։ Վտանգ եր սպառնում, նրա ասելով, հռոմեական դրամատերերի հարստություններին, վոր նրանք զետեղել եյին պետական հարկերի հավաքման գործում։ Հուսալքվել եյին, ասում ե նա, բաժնետերերը և վարձկալական յընկերությունների գործակալները, վորովհետև նրանք գիտեյին, վոր թշնամու ձիավոր ջոկատների ասպատակները կարող եյին իրենց զրկել ամբողջ տարվա յեկամուտից։ Վախենում եյին վարձակալներն անգամ իրենց ստրուկներից, վորոնց նրանք պահում եյին արոտավայրերում ու արտերում, նավահանգստներում ու պահակակետերում։

67 թվին հռոմեական հանրապետության դրությունը ծանր ու աղետալի յեր դառել վոչ միայն հռոմեական Ասիայում, այլև ծովի վրա ու նաև բուն Իտալիայում։ Չափազանց ուժեղացել եյին այդ ժամանակ ծովահենները, վորոնք պարզապես տեր ու տնորեն եյին դառել Եգեյան ու Միջերկրական ծովերի։ Նրանք հարձակվում եյին վոչ միայն առանձին նավերի, այլ նաև ռազմական նավախմբերի վրա։ Նրանք շարունակ կողոպտում եյին ծովափնյա շրջանները և գերի եյին տանում մինչևիսկ ամենաականավոր հռոմեական պաշտոնյաներին ու զինվորականներին։ Հաղորդակցությունը ծովով չափազանց վտանգավոր եր դառել և Իտալիայում ու առանձնապես Հռոմում, վորը հացահատիկ եր ստանում ոտար յերկրներից՝ հացի գները խիստ բարձրացել եյին և սկսվել եր արդեն ահավոր սովը։

Հռոմում զգացին, վոր հանրապետության սովորական պաշտոնեյությունը չի կարողանալու դուրս հանել յերկիրը ճգնաժամային այդ դրությունից, այլ հարկավոր են արտակարգ իշխանություն ունեցող պաշտոնյաներ, վորոնց պետք ե տրվեն դիկտատորական լիազորություններ։

Լուկուլլոսի նահանջի հենց ժամանակ, նույն այս 67 թվին, ժողովրդական տրիբուն Գաբինիուսն անցկացրեց Հռոմում իր ա-

[1] Տես De imperio Cn. Pompeii, II, 4—5. V, 12, VI, 16:

առաջարկը, վորով Պոմպեյոսը ստացավ դիկտատորական արտակարգ իրավունքներ, վորպեսզի նա վոչնչացնե ծովահեններին և վերականգնե ծովային հաղորդակցության ճանապարհների անվտանգությունը։

Պոմպեյոսը կարողացավ, իրապես, գրավել ծովահենների ամրությունները և, ջախջախելով նրանց ուժերը՝ հարկադրեց նրանց անձնատուր լինել։ Այնուհետև, 66 թվի սկզբներին, ժողովրդական տրիբուն Մանիլիուսի առաջարկությամբ՝ Պոմպեյոսին տրվեց արտակարգ իշխանություն (imperium majus) արևելյան պատերազմը շարունակելու համար։ Համաձայն այդ օրենքի Արևելքից յետ կանչվեցին Մարկիուս Ռեքսը և Մանիուս Ակիլիուս Գլաբրիոնը և նրանց պաշտոնները հանձնվեցին Պոմպեյոսին։ Այս վերջինը, վորը Լուկուլլոսի վաղեմի հակառակորդն եր, ստացավ այժմ, բացի Գաբինիուսի օրենքով իրեն տրված նախկին լիազորություններից, զորքի բարձրագույն հրամանատարությունն առաջիկա կռիվներում ընդդեմ Միհրդատի և Տիգրանի ու նաև բացարձակ իրավունք պատերազմ հայտարարելու և հաշտություն կնքելու հռոմեական ժողովրդի անունից։

66 թվին ռազմական գործողությունները վերսկսվեցին Արևելքում Պոմպեյոսի առաջնորդությամբ։

## 16. ՊՈՄՊԵՅՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՊՈՆՏՈՍ ՅԵՎ ՄԻՀՐԴԱՏԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

*Յերբ Հռոմում ընդունվում էր Մանիլիուսի վերոհիշյալ օրենքը՝ Պոմպեյոսն ինքը գտնվում էր Կիլիկիայում։ Ստանալով տեղեկություն, որ իր վաղեմի հույսերը լիովին իրականացել են և որ իրեն է հանձնված պոնտական ու հայկական պատերազմների վարումը՝ իսկույնևեթ նա սկսեց նախապատրաստվել պատերազմի[1]։ Նա կարգադրեց դաշնակից և ստորադրյալ ասիական իշխանավորներին ու քաղաքներին, որ ուղարկեն իրեն օգնական զորքեր։ Նրան աջողվեց իր դրոշների տակ հավաքել մինչևիսկ այն արձակուրդավոր զինվորներին, որոնք հրաժարվել էին մնալ Լուկուլլոսի բանակում։ Ամենակարճ ժամանակվա ընթացքում նա համակենտրոնացրել էր Կիլիկիայում, բացի Մարկիուս Ռեքսի վերոհիշյալ յերեք լեգեոններից և ասիական օգնական զորքերից, ավելի քան հիսուն հազար նոր զորք։*

*66 թվի սկզբներին, իր մեծ արշավանքը սկսելուց առաջ, Պոմպեյոսը նախապես աշխատեց, իրեն հատուկ առանձին զգուշավորությամբ, դիվանագիտական պատրաստություններ ևս տեսնել։ Նա ուղարկել էր Միհրդատի մոտ, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[2], իբր թե բարեկամական բանակցությունների համար փախստակ Միտրոփանեսին։ Սակայն, իրապես, նրա ուղարկած այս դեսպանը գնացել էր Պոնտոս պարզապես հետախուզական ու լրտեսական նպատակներով։ Միևնույն ժամանակ Պոմպեյոսի մի այլ դեսպանություն գնացել էր նաև Տիզբոն բանակցելու Հրահատ Գ-ի հետ և առաջարկելու, որ նա հռոմայեցիների հետ դաշն կնքե Պոնտոսի ու Հայաստանի թագավորների դեմ։ Այս դաշինքը գլուխ էր յեկել, ինչպես վկայում է Դիոնը[3], նույն այն պայմաններով, որ 68 թվին պարթևաց թագավորին առա-*

---

[1] Տես Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 45, 1—2։

[2] Գք. 36, գլ. 45, 2։

[3] Տես գք. 36, գլ. 45, 3։

ջարկել էին Տիգրանը և Միհրդատը։ Հրահատ Գ-ին խոստում էր տրված, որ նա կստանա ամբողջ Միջագետքը մինչև Եփրատ, այսինքն՝ այն երկրները, որ նրանից գրավել էր հարավում Տիգրանը։ Միևնույն ժամանակ առաջարկ էր արված Հրահատին, որ նա, գործակցելով իբրև դաշնակից՝ հարձակվի հայկական թագավորության վրա հարավ-արևելքից։

Դաշինքի կնքման առաջարկը, ինչպես մատնանշվում է պատմագիտական նորագույն ուսումնասիրություններում[1], Հրահատ Գ-ին համոզել էր ընդունել Տիգրան Բ-ի որդին, Տիգրան Կրտսերը, որը 66 թվի սկզբներին ապստամբել էր իր հոր դեմ և փախել էր Տիզբոն։ Ինձ թվում է սակայն, որ տիրող ու ընդհանրացած այս կարծիքը ոչ միայն վիճելի է, այլև անհավանական։ Կասսիուս Դիոնի համապատասխան վկայության մեջ պարզ կերպով ակնարկված է, որ վերոհիշյալ դաշինքը Պոմպեյոսի հետ կապված է եղել Կրտսեր Տիգրանի Տիզբոն գալուց առաջ, և այս վերջինը Հրահատ Գ-ին հորդորած է եղել միայն իրեն օգնելու արշավել Հայաստան։

> «Իսկ Տիգրանը, Տիգրանի որդին,—վկայում է Կասսիուս Դիոնը,—վերցնելով իր հետ մեծամեծներից ոմանց, որոնց հաճելի չէր ծերունու իշխանությունը՝ փախավ Հրահատի մոտ. և երբ սա մտածում էր, թե ինչ պետք է անել ըստ դաշինքի, որ կապված էր Պոմպեյոսի հետ՝ համոզեց նրան արշավել Հայաստան»[2]։

Ինչպես տեսնում ենք, 66 թվի սկզբներին քաղաքական դեպքերը դասավորվում էին ոչ ի նպաստ դաշնակից թագավորների։ Մասնավորապես Միհրդատը, որի դեմ շուտով արշավանք էր սկսելու Պոմպեյոսը, այլևս չէր կարող հույս դնել ոչ պարթևների վրա, ոչ էլ, առանձնապես, Տիգրանի վրա, որի երկրում ծագել էին ներքին խռովություններ և ապստամբություն։

Ինչպես հաղորդում են Ապպիանոսը և Վալերիուս Մաքսիմուսը, դավադրությունները Տիգրան Բ-ի դեմ Հայաստանում տեղի էին ունեցել մի քանի անգամ։ Այդ դեպքերը սրանց մոտ պատմված են այնպիսի վիպական մանրամասնություններով[3], ո-

---

[1] Տես Reinach, Mithridate Eupator, էջ 382, Моммсен, Римская история, т. III, էջ 104, Халатьянц, Очерк истории Армении, էջ 208 և ուրիշ.։

[2] Տես Դիոն, գր. 36, գլ. 51, 2։

[3] Տես Ապպիան., Միհր., գլ. 104 և Վալերիուս Մաքսիմուս, գր. 9, գլ. 11։

*րոնք ըստ իս վիճելի չեն դարձնում նրանց արժանահավատությունը և վորոնք կարող են ընդունվել միայն վորոշ վերապահումներով։ Այս հեղինակների վկայություններից չերևում է, վոր Տիգրանի արքունիքում, վորն ամուսնացել եր Միհրդատի Կլեոպատրա դստեր հետ, սովորական եյին դառել պալատական խարդավանքներն ու արյունահեղ վոճրագործությունները, վորոնք մեծ չափերով առանձնահատուկ եյին, ինչպես հայտնի յե, նաև պոնտական, Սելևկյան և այլ արևելյան արքունիքներին։*

*Տիգրանն ուներ Կլեոպատրայից, ինչպես վկայում է Ապպիանոսը*[1]*, յերեք վորդիներ, վորոնք բոլորն էլ թագավորական իշխանության եյին ձգտում հոր մահից առաջ։ Նրանցից մեծը, Զարեհը*[2]*, հայ իշխանների հետ, վորոնք դժգոհ եյին Տիգրանից, իր հոր դեմ դավադրություն եր կազմել նրան գահընկեց անելու նպատակով։ Դավակիցները, ինչպես պատմում է Վալերիուս Մաքսիմուսը*[3]*, հավատարմության յերդում տալով միմյանց, իրենց աջ ձեռքերից, ըստ տեղական սովորության, արյուն եյին թողնում և ծծում փոխադարձաբար մեկը մյուսից։ Դավաճանությունը սակայն աջողություն չեր ունեցել և Զարեհն ու նրա դավակից ընկերները հաղթվել եյին և սպանվել։ Կլեոպատրայից ծնված Տիգրանի միջակ վորդին, վորի անունը չի պահպանվել, ուզեցել եր նույնպես գրավել հոր գահը, ոգտվելով ուրիշ առիթից։ Ծերունի Տիգրանը վորսի յեր գնացել իր այդ վորդու ու կրտսեր Տիգրանի հետ։ Վորսի ժամանակ նա վայր եր ընկել ձիուց և ուշաթափվել։ Միջակ վորդին, թողնելով իր հորն այդ ծանր վիճակում՝ վերցրել եր նրա թագը և դրել իր գլխին, իսկ կրտսերը, վազելով նրա մոտ՝ խնամել եր նրան և ոգնել։ Ծերունի թագավորը, ուշքի գալով՝ հրամայել եր միջակ վորդուն մահապատժել, իսկ կրտսերին խոստացել եր տալ իր թագն ու գահը։ Սակայն, Տիգրանի Կապպադովկիայում գտնված ժամանակ, ապստամբել եր, ինչպես տեսանք, նաև այս կրտսեր վորդին։*

*66 թվի սկզբներին Տիգրանը, լուր ստանալով իր վորդու ապստամբության մասին, ստիպված յեղավ ընդհատել իր հաղթական արշավանքը Կապպադովկիայում և վերադարձավ Հայաստան։*

---

1 *Միհրդ., գլ. 104։*

2 *Վալերիուս Մաքսիմուսի մոտ (գք. 9, գլ. 11) Տիգրանի այս մեծ վորդին անվանված է* Sariaster, *վոր համապատասխանում է հայկական Զարեհ* (=Zariadris) *անվան։*

3 *Տես գք. 9, գլ. 11, 3։*

Ապստամբ վորդին, վոր պատերազմ եր սկսել իր հոր դեմ՝ պարտություն կրեց, փախավ դավադիր հայ մեծամեծների հետ Տիգրոն և այնտեղ ամուսնացավ պարթևների թագավոր Հրահատ Գ-ի դըստեր հետ[1]։

Կրտսեր Տիգրանի այս ապստամբությունը Պոմպեյոսի արշավանքի ճիշտ նախօրյակին վոչ միայն մեծապես թուլացրեց դաշնակից թագավորների դիմադրական ուժը, այլև պատճառ դառավ նրանց բարեկամական հարաբերությունների վատացման։ Ծերունի Տիգրանը, ինչպես վկայում ե Կասսիուս Դիոնը[2], կասկածում եր, վոր իր վորդուն գրգռողը և ապստամբության դրդողը հենց ինքը Միհրդատն ե։ Նրա կասկածները, իսկապես, վորոշ հիմք ունեյին։ Տիգրանը, լինելով դաշնակից Միհրդատի, վարում եր, ինչպես վերև տեսանք, իր սեփական ու ինքնուրույն քաղաքականությունը։ Յեվ Միհրդատին ձեռնտու յեր, իհարկե, հայկական գահի վրա տեսնել իր յերիտասարդ թոռին, վորին նա կըկարողանար իր ձեռին խաղալիք դարձնել։

66 թվի գարնանը Պոմպեյոսը Կիլիկիայի ու Կապպադովկիայի պաշտպանության համար թողեց Մարկիուս Ռեքսի յերեք լեգեոնները և ինքն իր հավաքած զորքերով առաջ շարժվեց դեպի Գալատիա, վորպեսզի փոխարինե Լուկուլլոսին և ընդունե նրանից զորքի գերագույն հրամանատարությունը։ Յերկու զորավարների հանդիպումը տեղի ունեցավ, ինչպես հաղորդում ե Ստրաբոնը[3], Դանալա ամրոցում, վորը գտնվում եր Տրոքմերի յերկրում։ Թեև Լուկուլլոսի և Պոմպեյոսի ընդհանուր բարեկամներն աշխատեցին հաշտեցնել նրանց իրար հետ, սակայն, իրապես, նրանց տեսակցությունը վերջացավ փոխադարձ անարգանքով ու վիրավորանքներով։ Պոմպեյոսն անվավեր հայտարարեց Լուկուլլոսի կարգադրությունները, վոր արված եյին իր ժամանումից հետո, վերցրեց նրանից գրեթե ամբողջ զորքը և թողեց նրան միայն 1600 զինվոր, վորոնք Լուկուլլոսի հետ գնացին Իտալիա։ Վերադառնալով Հռոմ՝ Լուկուլլոսը, ինչպես հայտնի յե, այլևս քաղաքական վորևե դեր չկատարեց, այլ վարեց այնտեղ անգործ ու շռայլ կյանք և հայտնի յեղավ իր քեֆերով ու կերուխումով՝ «Լուկուլլոսյան» կոչված՝ «փարթամ խնջույքներով», վորոնց հա-

---

[1] Տես Ապպիանոս, Միհրդատ., գլ. 104, Դիոն, գք. 36, գլ. 51, 1. համեմատե նաև Gutschmid, Geschichte Irans, եջ 88։

[2] Գք. 36, գլ. 50, 1։

[3] Տես XII, 5, 2 (567):

մալ: Նա ուներ անչափ հարստություններ, որ իր հետ տարել էր կողոպտված Պոնտոսից ու Հայաստանից։

Տրոքմերի երկրից, որը սահմանակից էր Միհրդատի թագավորության, Պոմպեյոսն իր ամբողջ բանակով, որը բաղկացած էր ավելի քան հիսուն հազար միայն բուն հռոմեական զորքից[1], մտավ Պոնտոս, իսկ նավատորմիղը, որը բաղկացած էր մոտ 270 նավից, կարգադրություն ստացավ վերահսկել ծովափնյա շրջանների վրա և նեցուկ լինել ցամաքային զորքի արշավանքին։ Պոմպեյոսի զինական այս մեծ ուժերի դեմ Միհրդատը, որի երկիրն ավերվել ու ուժասպառ էր յեղել Լուկուլլոսի արշավանքների ժամանակ՝ կարողացել էր հավաքել ու դուրս բերել ընդամենը մոտ 30.000 հետևազոր և 2—3000 հեծելազոր[2]։ Հայաստանից նա այլևս չէր կարող օգնություն ստանալ, որովհետև ծերունի Տիգրանի դեմ պատերազմ էին սկսել Հրահատ Գ-ը և Կրտսեր Տիգրանը։

Թողնված լինելով ինքն իրեն և տեսնելով, որ պատերազմի վախճանը թշնամու զորքի թվական մեծ առավելությամբ գրեթե կանխորոշված է՝ Միհրդատն ուզեց Պոմպեյոսի հետ հաշտություն խոսել առանց պատերազմի և ուղարկեց նրա մոտ իր դեսպաններին։ Սակայն Պոմպեյոսի առաջարկած պայմաններն այնքան ծանր էին, որ համաձայնությունը գլուխ չեկավ։ Պոմպեյոսը պահանջ էր դրել, որ Միհրդատը հանձնե իրեն պոնտական զորքի մեջ գտնվող փախստականներին ու նաև ինքը անձնատուր լինի առանց որևէ պայմանի[3]։

66 թվի գարնանը վերսկսվեց Պոնտոսում պատերազմը Միհրդատի դեմ։ Ինչպես 68—67 թվերին, Միհրդատը դարձյալ վարեց պարտիզանական լեռնային պատերազմ, որը, ինչպես տեսանք, մեծ աջողությամբ կիրառվել էր Լուկուլլոսի դեմ։ Նա շա-

---

1 Պոմպեյոսի զորքի թիվը Մոմզենը յենթադրում է քառասուն կամ հիսուն հազար, չհաշված դաշնակիցների օգնական զորամասերը (տես Римская история, III, էջ 104)։ Ռեյնաքը բուն հռոմեական զորքի թիվը հաշվում է 60,000 (տես Mithridate Eupator, էջ 382)։ Սխալ է, անտարակույս, Ֆերերոյի մատնանշած 30,000 թիվը, որովհետև այդ թիվը չե հիշատակված Դիոնի մոտ, որի վկայության վրա նա հիմնվում է (տես Величие и падение Рима, т. I, էջ 212)։

2 Տես Ապպիան,. Միհրդ., գլ. 97 և Պլուտ., Պոմպեյոս, գլ. 32։ Ինձ թվում է, որ Միհրդատի հեծելազորի փոքր թիվը, որ մատնացույց է արված աղբյուրների մեջ՝ կարող է վիճելի համարվել, որովհետև 67 թվի կռիվների ժամանակ նա ուներ, ինչպես տեսանք, ութը հազար հեծելազոր։

3 Տես Ապպիանոս, Միհդ., գլ. 98 և Դիոն, գք. 36, գլ. 45, 3—4։

րունակ յետ էր քաշվում, հարկադրում էր Պոմպեյոսին իրեն հետապնդել, հարձակվում էր հանկարծակի, վնաս էր հասցնում թշնամուն և, ավերելով իր սեփական յերկիրը՝ աշխատում էր դժվարացնել հռոմեական զորքի պարենավորումը[1]։

Հոգնելով այս անվերջ ու ապարդյուն յերթերից՝ Պոմպեյոսը հարկադրվեց դադարեցնել թշնամու հետապնդումը և ներս խուժեց Փոքր Հայք, վորտեղ գրեթե չկային պոնտական զորքեր, բայց կային իր մեծ զորքի համար պարենի առատ պաշարներ։ Սակայն Միհրդատը ևս, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[2], շտապեց նույնպես գնալ Փոքր Հայք, ամրացավ դժվարամատչելի բարձր լեռան վրա և այստեղ ևս աշխատեց խափանել հռոմեական զորքի պարենավորումը։ Պոնտական թռուցիկ ձիավոր ջոկատները, վորոնք շարունակ իջնում եյին բաց դաշտ, անընդհատ հարձակվում ու հարվածում եյին հռոմայեցիներին և խմբերով բանակ եյին բերում իրենց կողմն անցած դասալիքներին։ Շուտով Պոմպեյոսի դրությունը պարենի պակասության պատճառով այստեղ ևս ծանրացավ։ Բայց նրա բախտից Միհրդատը ստիպված յեղավ ինքը հեռանալ իր հարմար դիրքերից, վորովհետև անջրդի այդ վայրերում սպառվեցին նրա ջրի պաշարները։ Պլուտարքոսի ասելով[3] Միհրդատի գրաված հենց նույն այս լեռան գառիվայրերի վրա հայտնաբերվեցին նրա հեռանալուց հետո ջրի առատ աղբյուրներ, վորոնցից օգտվեցին Պոմպեյոսի զորքերը։

Պոմպեյոսը կրնկակոխ հետապնդեց Միհրդատին, վորը նահանջում էր Փոքր Հայքի անտառախիտ ձորերի ու կիրճերի միջով, ուր նա անկարող էր օգտագործել իր հեծելազորը։ Հետապնդման ժամանակ Պոմպեյոսի հետևազորի և հեծելազորի առանձին ջոկատները, դարանամուտ լինելով՝ մեծ կորուստ պատճառեցին Միհրդատի հեծելազորին[4]։ Այս մասնակի պարտությունից հետո՝ Միհրդատը, զգուշանալով Պոմպեյոսի նոր հարձակումներից՝ գրավեց, ինչպես վկայում է Ստրաբոնը[5], «Դաստեյրայի[6] մոտ Անգոլիսենեյի ջրառատ լեռը» և, ամրանալով նոր այս տեղում՝ նորից ուզեց խանգարել հռոմեական զորքի պարենավորումը։

---

1 Տես Դիոն, գք. 36, գլ. 47, 1, համեմատե նաև Ապպ. Միհրդ., գլ. 97։

2 Գք. 36, գլ. 47, 2 և այլն։

3 Պլուտ., Պոմպեյոս, գլ. 32, 2։

4 Տես Փրոնտինուս, II, գլ. 5, 33 և Դիոն, գք. 36, գլ. 47, 4։

5 Տես XII, 3, 28 (555):

6 Օրոսիուսի մոտ Դաստրակուս է անվանված ինքը լեռը (Dastracus mons), տես գք. VI, գլ. 4, 3։

*Սակայն այս անգամ Պոմպեյոսը կանչեց Կիլիկիայից այնտեղ թողնված յերեք հռոմեական լեգեոնները և, ավելացնելով իր զորքի թիվը՝ չորս կողմից, մոտ 22 կիլոմետր տարածության վրա, պահապան պոստերի շղթայով շրջափակ պաշարեց Միհրդատի զորաբանակը և այժմ ինքը դժվարացրեց պարենի մատակարարումը Միհրդատի զորքին[1]։ Իսկ հռոմեական զորքը պարենի անհրաժեշտ պաշարներն անարգել կերպով ստանում էր Եկեղյաց գավառից, վորը գրավել էր Եփրատի ձախ ափում Պոմպեյոսի զորամասերից մեկը։*

*Պոնտական զորքը, վորին կարողացել էր Պոմպեյոսը շրջապատել՝ ընկավ այժմ խիստ ծանր դրության մեջ և, մատնվելով սովի՝ հարկադրվեց մորթել մինչևիսկ իր ձիերը։ Մնալ նրան Դաստեյրայի մոտ այլևս անկարելի յեր։ Ուստի պաշարումից 45 որ հետո՝ Միհրդատը, ինչպես վկայում է Պլուտարքոսը[2], հրամայեց սպանել պոնտական բանակի թույլ ու հիվանդ զինվորներին և խորը գիշերով անցավ իր զորքով, հանդարտ ու լուռ, հռոմեական քնած պահակապոստերի շղթայի միջով և փրկեց իր բանակը սովամահությունից։ Հետևյալ առավոտը Պոմպեյոսը շտապ հետապնդեց նրան և յերրորդ որը հասավ նրա յետևից ու նորից նրան շրջապատեց մի նեղ կիրճում։ Միհրդատը չկարողացավ այլևս խուսափել ճակատամարտից։ Վճռական ու վերջին կռիվը տեղի ունեցավ Միհրդատի հետ Գայլ գետից դեպի հարավ, Ենդերեսից մոտ 10 կիլոմետր հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկի մոտ, ուր հիմնված էր հետո Նիկոպոլիս քաղաքը։*

*Հռոմեական զորքը, անցնելով հակառակորդի թիկունքը և գրավելով շրջակա բարձունքները՝ գիշերվա լռության մեջ հանկարծակի սոսկալի մարտական աղմուկ բարձրացրեց և չորս կողմից կարկտի նման թշնամու վրա թափեց քարեր, նետեր և տեգեր։ Ապա հռոմայեցիները ցած իջան բարձունքներից և կոտորեցին պոնտական գրեթե ամբողջ անհարեկված ու խուճապահար զորաբանակը[3]։*

*Ինքը Միհրդատն այս անգամ ևս կարողացավ թողնել ճակատամարտի դաշտը և իր զորքի փոքրաթիվ մնացորդներով ու*

---

[1] *Տես Ապպիանոս, Միհրդ., գլ. 99 և Պլուտ. Պոմպեյոս, գլ. 32, 3։*

[2] *Տես Պլուտ., Պոմպ., գլ. 32, 3 և Փրոնտինուս, I, 1, 7։*

[3] *Ճակատամարտի նկարագրությունը տարբեր կերպ է տրված զանազան աղբյուրներում, տես Ապպիանոս, Միհրդատ., գլ. 99 և 100, Դիոն, գք. 36, գլ. 48, 3—5 և 49, 1—8 և Պլուտարքոս, Պոմպեյոս, գլ. 32, 3—5։*

*իր սիրուհու Հիպսիկրատիայի ուղեկցությամբ, վորը տղամարդու շորեր հագած նրան միշտ հետևում եր ու նրա կողքին մարտնչում՝ փախավ Հայաստանի սահմանում գտնվող Սինորիա ամրոցը։ Այս անգամ ևս նա հույս ուներ, վոր ապաստան կգտնե Հայաստանում և օգնություն կստանա ծերունի Տիգրանից*[1]*։*

*Վերև հիշված Դաստեյրայի տեղադրությունը, ինչպես և Միհրդատի նահանջի ճանապարհը Դաստեյրայից մինչև Սինորիա, սխալ ու խառնաշփոթ կերպով են լուսաբանված պատմագիտական յերկերում։ Խառնաշփոթումներն առաջ են յեկել նրանից, վոր սկզբնական աղբյուրները ևս իրար հետ համերաշխ չեն և տալիս են հաճախ տեղագրական անհավաստի ու անճշգրիտ տեղեկություններ։ Այս մութ խնդիրը, ինձ թվում ե, աջողվել եր ինձ լուծել և պարզել աշխարհագրական իմ ուսումնասիրության մեջ, վորը նվիրված եր Պեվտինգերյան քարտեզի մանրախույզ քննությանը*[2]*։*

*Արդ՝ ի նկատի ունենալով, վոր առաջադրած իմ նոր պարզաբանումները վոչ միայն կարևոր են Փոքր Հայքի և Հայաստանի պատմական աշխարհագրության համար, այլև ճշտում են Պոմպեյոսի արշավանքների պատմությունը և վորոշում նրա զորքերի տեղաշարժումների հին ճանապարհները՝ ավելորդ չեմ համարում այստեղ ևս կանգ առնել այդ խնդրի վրա և քննության առնել սկզբնաղբյուրների վկայություններն ավելի հանգամանորեն, քան այդ արված եր աշխարհագրական իմ աշխատության մեջ։*

*Կարևոր այդ վկայությունները, վոր վերաբերվում են այս խնդրին, թարգմանաբար մեջ եմ բերում ամբողջությամբ, ընդգծելով այն հատվածները, վորոնց մեջ տեղեկություններ են հաղորդված Դաստեյրայի, Սինորիայի և Նիկոպոլսի մասին։*

*1. Ստրաբոն* XII, *3, 28 (Լայպցիգ 1915)՝*

> *«Յերբ զորեղացավ Միհրդատ Եվպատորը՝ նա տիրեց Կոլխիդային և այն բոլոր յերկրներին, վոր նրան հանձնել եր Անտիպատրը՝ Սիսիդի վորդին։ Նա այնքան հոգս եր քաշում այդ տեղերի մասին, վոր կառուցել եր նրանց մեջ յոթանասուն և հինգ ամրություններ, վորոնց մեջ գրել եր իր գանձերի մեծագույն մասը։ Դրանցից ամենանշանավորներն եյին Հիդարան, Բասգոյդարիզան,* Եաւ Սինօրիան,

---

[1] *Տես Պլուտ., Պոմպ., 32, 6—7, Վալերիուս Մաքսիմուս,* IV, *6, 2 և Ապպիանոս, Միհրդատ., գլ. 101։*

[2] *Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 68—73։*

վորը սահմանակից էր Մեծ Հայքին. և հենց այդ պատճառով Թեոփանեսն անվանել էր այդ տեղը Սինորիա: *Իսկ Պարխադրեսի ամբողջ լեռնային շրջանը, լինելով ջրառատ և անտառաշատ և անջատված լինելով զանազան կողմերից թեք ձորերով և սեպ լեռնագագաթներով՝ այնպիսի մեծ հարմարություններ ունի, վոր այնտեղ էր հենց շինել Միհրդատը գանձերի պահեստատեղերի մեծագույն մասը. և, իրապես, վերջ ի վերջո, ինքը ևս, յերբ նրան հետապնդում էր Պոմպեյոսը, ապավինեց պոնտական թագավորության այս հեռավոր կողմերը.* և գրավելով Դաստեյրայի մոտ Անգոլիսենեյի[1] ջրառատ լեռը (մոտ էր նաև Յեփրատը, վորը բաժանում էր Ակիլիսենեն Փոքր Հայքից)՝ *մնաց այստեղ մինչև վոր, պաշարված լինելով՝ հարկադրված յեղավ փախչել լեռներով Կողքիս և այնտեղից Բոսփոր:* Իսկ Պոմպեյոսը այս տեղի մոտ հիմնեց Փոքր Հայքում Նիկոպոլիս քաղաքը, *վորը մնում է մինչև այժմ և շատ լավ բնակված է»:*

*2. Պլուտարքոս, Պոմպեյոս, գլ. 32, 3՝*

*«Այնուհետև [Պոմպեյոսը], բանակ դնելով նրա շուրջը՝ շրջափակ պաշարեց նրան: Յեվ նա [Միհրդատը], 45 օր պաշարմանը դիմանալուց հետո՝ իր զորքի ամենաուժեղ մասի հետ աննկատելի կերպով փախավ, իսկ անպետքներին և հիվանդներին սպանել տվեց: Սակայն հետո* նրա յետևից հասավ Յեփրատի մոտերքում *Պոմպեյոսը և բանակեց նրա մոտ. բայց յերկյուղ կրելով, վոր նա* կարող է իսկույնեք անցնել Յեփրատը՝ *առաջնորդեց նրա դեմ կես գիշերին իր սպառազինված զորքը»:*

*3. Նույնը, Պոմպեյոս, գլ. 32, 6—7՝*

«Վերջապես նրանք [փախչելիս] հասան Սինորա ամրությունը, *վորը լեփ լեցուն էր թագավորական փողերով և թանգարժեք իրերով: .....Այստեղից նա [Միհրդատը] շարժվեց Տիգրանի մոտ Հայաստան, սակայն յերբ սա մերժեց և նրա գլխի համար հայտարարեց հարյուր տաղանդ վարձատրություն՝* նա անցավ Յեփրատի ակունքների մոտով *և փախավ Կողքիսի միջով»:*

---

[1] *Մեյնեքեյի բնագիրը փոխանակ ձեռագրական* Ἀγγολισηνῆς *ընթերցվածի ունի* Ἀκιλισηνῆς *համաձայն Քսիլանդերի ուղղման, տես* Markwart, Die Genealogie der Bagratiden, *էջ 60, ծանոթ.*

*4. Կասսիոս Դիոն, գք. 36, գլ. 48, 1՝*

*«Արդ՝ Միհրդատը, երբ այդ ամենը աջող անցավ՝* գրավեց առժամանակ Արմենիայի Անահիտյան երկիրը, վո-րը նվիրված էր մի ինչ վոր համանուն աստվածության, *և այնուհետև այստեղ նրան հարեցին ուրիշ շատերը։ Իսկ երբ Պոմպեյոսին ևս միացան Մարկիոսի զինվորները՝ նա վախեցավ և այլևս չմնաց այդ երկրում, այլ իսկույն աննկատելի կերպով դուրս եկավ գիշերով և ապա, առաջ գնալով գիշերները՝* ճանապարհվեց դեպի Տիգրանի Հայաստանը»։

*5. Նույնը, գք. 36, գլ. 50, 3՝*

«[*Պոմպեյոսը*] քաղաք հիմնեց այն տեղում, վորտեղ հաղթություն էր տարել[1], *և տվեց իր վիրավոր ու հասակավոր զինվորներին։ Այնտեղ նրանց հետ միասին բնակություն հաստատեցին նաև ցանկացողները հարևան տեղերից։ Եվ նրանք գոյություն ունեն և այժմ* և անվանվում են Նիկոպոլսեցիք»։

*6. Ապպիանոս, Միհրդատ., գլ. 101՝*

*«Միհրդատը, գցելով իրեն իր միայն թիկնապահների հետ դեպի Թեք լեռները՝ փախավ ու ազատվեց, և ճանապարհին նրան պատահեցին վոմանք նրա վարձկան հեծելազորից և մոտ երեք հազար հետևակներ, վորոնք* ուղեկցեցին նրան մինչև Սինորեգա ամրոցը»։

*7. Որոսիոս, գք.* VI, *գլ. 4, 3՝*

*«Պոմպեյոսը...* Փոքր Հայքում Դաստրակուս լեռան մոտ շրջափակ պաշարեց *թագավորի* [*Միհրդատի*] *բանակը»։*

*Մեջ բերված այս վկայություններում հիշատակված են, ինչպես տեսնում ենք, հռոմեական-պոնտական կռիվների և Միհրդատի նահանջի երեք գլխավոր վայրերը Փոքր Հայքում՝ Դաստեյրան, Նիկոպոլիսը և Սինորիան։ Այս երեք վայրերից եվրոպական պատմագիտության մեջ անվիճելի կերպով վորոշված է միմիայն Նիկոպոլսի տեղադրությունը։ Նա գտնվել է, ինչպես վերև ասացինք, այժմյան Պյուրկի մոտ, ուր հայտաբերված են արձանագրություններ, վորոնց մեջ պարզ կերպով հիշատակված է Նիկոպոլիս քաղաքի անունը*[2]։

---

1 *Համեմատե նաև Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատ., գլ. 105։*

2 *Տես* T a y l o r J. G., Journal of a tour in Armenia, Kurdistan and Upper Mesopotamia, Journ. of Roy. Geogr. Soc., London 1868, t. 38, *էջ 302։*

Յեվրոպական գիտնականներից շատերը՝ Ռեյնաքը, Մարկվարտը և ուրիշները՝ կարծում են սակայն, որ Նիկոպոլիսը հիմնըված է յեղել ոչ թե գիշերային ճակատամարտի և Պոմպեյոսի վճռական հաղթության վայրում, ինչպես վկայում են քաղաքի անունը (Nikó—πολις = «Հաղթության քաղաք») և Կասսիուս Դիոնի ու Ապպիանոսի վերոհիշյալ ցուցումները (վկ. 5), այլ Դաստեյրայի տեղում, ինչպես այդ մատնանշված է վերև մեջ բերված Ստրաբոնի վկայության մեջ[1] (տես վկ. 1)։ Այս յենթադրությունը հիմնավորելու համար Մարկվարտը մատնացույց է անում, որ նաև Պլուտարքոսի վերոհիշյալ վկայության մեջ (վկ. 2) գիշերային կռվի տեղը ցույց է տրված «Յեփրատ գետի մոտերքում»։ Ուստի և նա կարծում է, որ Միհրդատի վերջնական պարտության տեղը պետք է լիներ Յեփրատ գետի մոտ Յեկեղյաց հին գավառում։

Ռեյնաքի ու Մարկվարտի յեզրակացության դեմ, որը առաջին հայացքից համոզիչ է թվում, գլխավոր առարկությունը կարող է, անշուշտ, այն լինել, որ Ստրաբոնի վերոհիշյալ մութ ու յերկդիմի վկայությունից դժվար է անել որևէ հաստատուն հետևություն։ Ընդհակառակը, Ստրաբոնն իր այդ վկայության մեջ հենց ինքը, ինչպես տեսանք, հաղորդում է, որ Դաստեյրայի մոտ է գտնվել «Յեփրատ գետը, որը բաժանում էր Ակիլիսենեն Փոքր Հայքից»։ Յեվ ուշագրավ է, որ Ստրաբոնի այս ցուցմանը կատարելապես համապատասխանում է ոչ թե Ռեյնաքի և Մարկվարտի, այլ Ադոնցի նոր յենթադրությունը, որին ուշադրության չէ առնվել, դժբախտաբար, նորագույն ուսումնասիրություններում։

Ադոնցի կարծիքով[2]՝ Ստրաբոնի հիշած Դաստեյրան համապատասխանում է այժմյան Դոստալին, որը գտնվում է Կամախի և Ակնի միջև Յեփրատի աջ ափի մոտ. ուրեմն՝ հենց համաձայն Ստրաբոնի վկայության՝ թե Յեփրատ գետի մոտ և թե Փոքր Հայքի ու Ակիլիսենեյի սահմանում։ Պետք է ի նկատի ունենալ, որ Միհրդատի ու Տիգրանի ժամանակ Ակիլիսենեն յեղել է, ինչպես միանգամայն ճիշտ յենթադրում է Ադոնցը, խիստ ընդարձակ մի շրջան և բովանդակել է իր մեջ ոչ միայն Հին Հա-

[1] Տես Reinach, Mithridate Eupator, էջ 385, ծան. 1 և Markwart, Die Genealogie der Bagratiden, էջ 59—63։

[2] Տես Армения в эпоху Юстиниана, էջ 54։

*յաստանի Ցեկեղյաց գավառը, այլ, հավանորեն, նաև Դարանաղին, Մանանաղին, Աղյունը և Մզուրը*[1]։

*Որ Դաստեյրայի ու այժմյան Դոստալի նույնացումը կարելի չէ աչող և ընդունելի համարել՝ այդ ցույց են տալիս նաև ներքև մեջ բերված մեր դիտողությունները Դաստեյրայի հեռավորության մասին Նիկոպոլիսից։*

*Կարևոր է նախ մատնանշել, որ այժմյան Դոստալը հիշատակված է նաև Տայլորի մոտ Ջիմարայից մոտ 10—12 կիլոմետր հեռավորության վրա և այժմյան Պյուրկից (=Նիկոպոլիս) Ջիմարա տանող ճանապարհի վրա, որը մանրամասն նկարագրված է նրա «Որագիր մի պտույտի մասին Հայաստանում են» աշխատության մեջ*[2]*։ Տայլորի նկարագրած այս ճանապարհը պարզապես Պևտինգերյան քարտեզի Նիկոպոլիս—Ջիմարա ճանապարհագիծն է, որի ուղղությունը ճիշտ է որոշված թե Ադոնցի մոտ և թե Կոնրադ Միլլերի բացատրական քարտեզում*[3]*։ Պևտինգերյան քարտեզում Նիկոպոլսի հեռավորությունը Ջիմարայից ցույց է տրված 75 հռոմեական մղոն կամ մոտ 111 կիլոմետր։ Պարզ է, ուրեմն, որ տարածությունը Պյուրկ—Նիկոպոլսից մինչև այժմյան Դոստալ պետք է լիներ մոտավորապես 100 կիլոմետր և Դոստալից մինչև Ջիմարա մոտ 11 կիլոմետր։*

*Այս տարածությունները մի նոր ապացույց են, անշուշտ, Դաստեյրայի ու Դոստալի նույնության։ Պոմպեյոսը, հետամտելով Միհրդատին, որը նահանջելու յեր, բնականաբար, արագացրած յերթով, կարող եր հասնել Դաստեյրա-Դոստալից Նիկոպոլիս-Պյուրկ ճիշտ և ճիշտ միայն յերրորդ օրը, ինչպես այդ վկայում են հին հեղինակները։*

*Ճիշտ պետք է համարել ըստ այսմ և Կասսիուս Դիոնի ու Ապպիանոսի հաղորդած տեղեկությունը, որ Նիկոպոլիսը հիմնված է յեղել ոչ թե Դաստեյրայում, ինչպես յենթադրում են Ռեյնաքը և Մարկվարտը, այլ Պոմպեյոսի հաղթության և Միհրդատի վերջնական պարտության տեղում, այսինքն՝ Դաստեյրայից մոտ 100 կիլոմետր հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկում։*

---

[1] *Տես նույնը, եջ 54—55։*

[2] *Տես* Journal of the Royal Geographical Society, vol. 38, London 1868, *նաև նույն աշխատության* Астафьев-*ի ռուսերեն թարգմանությունը՝* „Материалы для географии Азиятской Турции", Тифлис 1874, прил. II к тому II „Изв. Кавк. Отдел. Рус. Геогр. Общества":

[3] *Տես* K. Miller, Itineraria Romana, Stuttgart 1916, *եջ 679—680։*

Վերոհիշյալ վկայությունների մեջ հիշատակված վայրերից յերրորդի, Սինորիայի, տեղագրությունը ևս քննված է ու վորոշված իմ պատմական-աշխարհագրական նույն աշխատության մեջ[1]։

Սինորիա ամրությունը, ինչպես մատնացույց է արել Կոնրադ Միլլերը, համապատասխանում է, անշուշտ, Պեվտինգերյան քարտեզի Սինարա կայարանին։ Սակայն նրա և Ռ. Կիպերտի մոտ[2] սխալ է վորոշված սրա տեղադրությունը։ Միլլերը Սինարայի տեղը յենթադրում է այժմյան Շընկարիճում, իսկ Կիպերտն այժմյան Ալաջայում։ Սակայն, իրապես, նա գտնվել է, ինչպես մանրամասն ցույց է տրված վերոհիշյալ իմ աշխատության մեջ, այժմյան Դաղտարիճից, վորը համապատասխանում է Պեվտինգերյան քարտեզի *Chalchdiaris կայարանին, 15 հռոմեական մղոն կամ մոտ 22 կիլոմետր հեռավորության վրա և ըստ այս տարածության ընկնում է Գաղտարիճից Սատաղ տանող ճանապարհի վրա, Աշկալայից մոտ 15 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք՝ Յեփրատ գետի մոտ։ Սինորիայի մասին կարևոր է ու եական Ստրաբոնի վերոհիշյալ վկայությունը (տես վերև վկ. 1), վորից յերևում է, վոր նա նշանավոր մի ամրություն է յեղել Միհրդատի թագավորության մեջ և գտնվել է Պոնտոսի ու Մեծ Հայքի սահմանում։ Այս վկայությունից, ինչպես տեսնում ենք, կարելի յե յեզրակացնել, վոր Տիգրան Բ-ի ժամանակ Հայաստանի հարավ-արևմտյան սահմանը հասնում եր մինչև այժմյան Կոպ-Դաղի լեռները, վորոնց հարավ-արևելյան ստորոտներում, Յեփրատ գետի մոտ, գտնվել է Սինորիա նշանավոր ամրությունը՝ Պեվտինգերյան քարտեզի Սինարա կայարանը։

Վոր մեր յեզրակացությունը Սինորիայի տեղադրության մասին ստույգ է և անվիճելի՝ այդ հաստատում են Մարկվարտի նոր դիտողությունները, վոր մեջ են բերված նրա վերոհիշյալ աշխատության մեջ[3]։ Մարկվարտը ևս հանգել է այժմ նոր յեզրակացության, վոր Միհրդատի և Տիգրանի ժամանակ Դերջան գավառը պատկանել է, հավանորեն, Միհրդատին, իսկ սրա վերջնական պարտությունից հետո, «Ակիլիսենեն և Դերջանը և թերևս նաև Կարենիտիսը» կցվել են Հայաստանին։ Նրա յենթադրությունը հավանական չե, ինչպես տեսնում ենք, Կարենիտիս գավառի

[1] Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», եջ 66—68։

[2] Տես K. Miller, Itineraria Romana, եջ 676—677 և R. Kiepert, Atlas von Kleinasien in 24 Blättern, 1902—1906:

[3] Տես Die Genealogie der Bagratiden, եջ 63։

նկատմամբ, վորն ըստ մեր յեզրակացության պատկանել ե մինչև Սինորիան ու Կոպ-Դաղը Հայաստանին։

Տեղագրական վերոհիշյալ խնդիրների վրա մենք անհրաժեշտ համարեցինք ընդարձակ կերպով կանգ առնել, վորովհետև այդ մասում պատմագիտական յերկերը կարոտ են հիմնական սրբագրության։ Մեր նոր ուսումնասիրությամբ Միհրդատի նահանջի ճանապարհը Դաստեյրայից մինչև Սինորիա պարզ կերպով վորոշվում ե Պեվտինգերյան քարտեզի և Անտոնինոսի ճանապարհացույցի Zimara-Nikopolis և Nikopolis-Satala հին ուղեգծերով, վորոնք քննված են ու լուսաբանված Ադոնցի և իմ պատմական-աշխարհագրական աշխատություններում[1]։

Սինորիա ամրոցը, ուր փախել եր Միհրդատն իր զորքի աննշան մնացորդներով՝ նրա խոշորագույն գանձապահեստներից մեկն եր։ Այստեղ պահվում եյին, ինչպես վկայում են Ապպիանոսը և Պլուտարքոսը[2], վեց հազար տաղանդ դրամ (=մոտ 25 միլիոն վոսկի մարկ կամ $12^{1}/_{2}$ միլիոն վոսկի ռուբլի) և թանգարժեք իրեր ու շորեր։ Սինորիայում Միհրդատը բաժանեց իր զորքին փող և նվերներ ու Տիգրանի մոտ ուղարկեց այստեղից սուրհանդակներ խնդրելու նրանից հյուրընկալություն։ Սակայն, ինչպես վերև հիշեցինք, ծերունի Տիգրանը կասկածում եր, և վոչ առանց հիմքի, վոր իր վորդուն գրգռողն ու իր դեմ բարձրացած ապստամբության գլխավոր դրդիչն ինքը Միհրդատն ե։ Ուստի և նա վոչ միայն մերժեց նրան ընդունել և ոգնել, այլև ձերբակալեց սրա ուղարկած սուրհանդակներին և ուղարկեց նրանց Պոմպեյոսին։ Նա ազդարարների միջոցով հայտարարեց, բացի այդ, վոր Միհրդատի գլխի համար նա սահմանել ե 100 տաղանդ դրամավարձ (=մոտ 420.000 գերմանական վոսկի մարկ կամ 210.000 վոսկի ռուբլի)։

Ֆրանսական գիտնականներ Տուրնեբիզը և Մորգանը, ինչպես և Մոմզենը, միանգամայն իրավացի կերպով յենթադրում են[3], վոր Միհրդատի փախուստի հենց ժամանակ Տիգրանը սկսել եր արդեն վարել Պոմպեյոսի հետ հաշտության բանակցություններ։

---

1 Տես Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 75—80 և իմ աշխատությունը՝ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», եջ 66—81։

2 Ապպիանոս, Միհրդատ., գլ. 101 և Պլուտ., Պոմպեյոս, գլ. 32, 6։

3 Տես Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie եջ 774, J. de Morgan, Histoire du peuple arménien, Paris 1919, եջ 78 և Моммсен, Римская история, т. III, եջ 107։

Ըստ երևույթին, Միհրդատը նաև ինքն այլևս հույս չուներ ընդունելություն գտնելու իր փեսայի մոտ Հայաստանում։ Առանց Տիգրանից պատասխանի սպասելու՝ նա իր փոքրաթիվ զորաբանակով առաջ շարժվեց Սինորիայից դեպի հյուսիս։ Նա հույս ուներ, որ, հասնելով Սև ծովի հյուսիսային ափերը՝ իր Բոսփորյան նախկին թագավորությունից կկարողանա դուրս վտարել իր ապստամբ որդուն, որը հռոմայեցիների հետ արդեն դաշն էր կնքել։

Միհրդատի ճանապարհը Սինորիայից մինչև Կողքիս մանրամասն նկարագրված է Ապպիանոսի մոտ[1]։ Սինորիայից նա գնացել էր Եփրատի ափերով և հասել մինչև նրա ակունքները։ Այստեղ նա մնացել էր երեք օր և կարգի էր բերել իր զորքերը։ Այնուհետև նա ուղղվել էր դեպի հյուսիս Հայաստանի Խոտենե[2] գավառի միջով, ուր խոտենցիները և իբերները, զինված նետաղեղներով ու պարսատիկներով՝ ուզեցել էին փակել նրա ճանապարհը։ Սակայն Միհրդատը նրանց ետ էր մղել և Ճորոխ գետի երկայնությամբ ու Սև ծովի ափերով հասել էր Փասիս (այժմյան Փոթի) և այնտեղից Դիոսկուրիաս։ Միհրդատի ճանապարհը պետք է ըստ այսմ ենթադրել այժմյան Աշկալայի և Երզրումի մոտով դեպի Թորթում և այստեղից Արդվինի ու Բաթումի վրայով դեպի Սուխում։

Միհրդատի փախուստից հետո Պոմպեյոսը պատերազմը նրա դեմ համարեց վերջացած և նույն 66 թվին առաջնորդեց իր զորքը դեպի Հայաստան։

---

1 Տե՛ս Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդ., գլ. 101, համեմատե նաև Պ լ ո ւ տ., Պոմպեյոս 32, 7 և Դ ի ո ն, գք. 36, գլ. 50, 2—3։

2 Հյուբշմանը կարծում է, որ Խոտենեն (Χωτηνή), որը Հին Հայաստանի գավառներից մեկն է, գտնվել է Եփրատ գետի ակունքների ու Ճորոխ գետի միջև (տե՛ս «Հին Հայոց տեղվոյ անունները», թարգմ. Պ ի լ ե զ ի կ ճ յ ա ն ի, Վիեննա 1907, էջ 19, ծան. 1)։ Իսկ Ռեյնաքը ենթադրում է, որ Խոտենեն համապատասխանում է Ստրաբոնի հիշատակած Χορζηνή-յին, տես Mithridate Eupator, էջ 389, ծան. 2։

## 17. ՏԻԳՐԱՆԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՊՈՄՊԵՅՈՍԻ ՀԵՏ

*Մինչդեռ Պոնտոսում տեղի եյին ունեցել վերև նկարագրված անցքերը՝ Հայաստանն իր հերթին յենթարկվել եր հարձակման։ Պարթևների թագավոր Հրահատ Գ-ը, իր նորափեսա Կրտսեր Տիգրանի խնդիրքով և, հավանորեն, նաև Պոմպեյոսի դրդմամբ՝ պատերազմ եր սկսել Տիգրան թագավորի դեմ, վորը նրա անհաշտ ախոյանն եր ու թշնամին։ Տիգրանի ապստամբ վորդու և խռովարար հայ մեծամեծների ուղեկցությամբ՝ նա ներս եր խուժել Հայաստան և, նվաճելով նրա հարավ-արևելյան շրջանները՝ հասել եր մինչև Արտաշատ մայրաքաղաքը։*

*Ծերունի Տիգրանը, վորը հանկարծակիի յեր բերվել, հարկադրվեց, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[1], փախչել իր յերկրի լեռնային շրջանները։ Սակայն Արտաշատ քաղաքը, հավատարիմ մնալով Տիգրան թագավորին՝ ցույց տվեց համառ դիմադրություն։ Ինչպես հայտնի յե Ստրաբոնի վկայություններից, հին Արտաշատը շնորհիվ իր ամրությունների գրեթե անմատչելի յեր։*

> *«Այս քաղաքը,—ասում է Ստրաբոնը[2],—գտնվում է թերակղզու նմանող մի խորշում, վորը, բացառությամբ պարանոցի, շրջապատված է պարիսպով ու նրա առջև հոսող գետով, իսկ պարանոցը փակված ու պաշտպանված է խրամով ու ցցապատնեշով»։*

*Շնորհիվ նրա ամուր այս դիրքի՝ պարթևները, վորոնք չունեյին ամրացրած քաղաքների պաշարման փորձ՝ չկարողացան նրան առնել և պաշարումը խիստ յերկարեց։*

*Կասսիուս Դիոնի պատմելով[3]՝ յերբ պարթևների թագավորը տեսավ, վոր պաշարումը խիստ յերկար է տևելու՝ իր ուժերի մի*

---

1 *Տես գք. 36, գլ. 51, 2։*

2 XI, *14, 6 (529)։*

3 *Գք. 36, գլ. 51, 2։*

մասը թողեց Տիգրանի վորդուն և վերադարձավ իր յերկիրը։ Սակայն հենց վոր նա հեռացավ՝ ծերունի Տիգրանը, վորն իր շուրջն էր հավաքել իրեն հավատարիմ մնացած զորական ուժերը, հարձակվեց դավաճան վորդու և ապստամբած հայ իշխանների վրա, հաղթեց նրանց և հալածեց ու իր իշխանությունը վերահաստատեց ամբողջ իր յերկրում։ Կրտսեր Տիգրանը հարկադրված յեղավ Հայաստանից փախչել և ուզեց գնալ Միհրդատի մոտ ու ուղևորվեց դեպի Պոնտոս, սակայն, իմանալով ճանապարհին, վոր իր պապը ծանր պարտություն է կրել և կարոտ է ինքը ոգնության՝ փոխեց իր ծրագիրը և գնաց Պոմպեյոսի մոտ։ Նա հույս ուներ, վոր, համաձայնության գալով հռոմայեցիների հետ՝ կըկարողանա այս նոր դավաճանության. գնով ստանալ իր հոր գահը և թագավորությունը։

Պլուտարքոսի կարևոր մի վկայությունից[1] յերևում է, վոր Կրտսեր Տիգրանը յեկել էր հռոմեական բանակը և հանդիպել էր Պոմպեյոսին Արաքսի ափին։ Նրանց հանդիպման տեղը կարելի յե յենթադրել այժմյան Քեփրիքեյի մոտ։ Այստեղ հենց, Բարձր Հայքից Արտաշատ տանող ճանապարհի վրա, գտնվում էր, իրապես, Արաքս գետի ափին, ինչպես ցույց ենք տվել աշխարհագրական մեր աշխատության մեջ[2], Պեվտինգերյան քարտեզի Ad Confluentes կամ «Գետախառնուրդի մոտ» կայարանը։

Հռոմեական զորավարն ուրախ պիտի լիներ, անշուշտ, վոր Տիգրանի ապստամբ վորդին, դավաճանելով իր հորը՝ ապավինում էր հռոմայեցիների հովանավորությանն ու ոգնությանը։ Բայց Կրտսեր Տիգրանն արդեն ուշացել էր։ Նրա Պոմպեյոսի մոտ գալուց դեռ առաջ՝ ծերունի Տիգրանը, տեսնելով վոր անկարելի յե միաժամանակ պատերազմել թե պարթևների ու իր վորդու և թե հռոմայեցիների դեմ՝ սկսել էր, ինչպես վերև տեսանք, հաշտության բանակցություններ վարել Պոմպեյոսի հետ։ Բանակցությունները դեռ չավարտած՝ նա ձերբակալել ու հանձնել էր Պոմպեյոսին Միհրդատի պատվիրակներին և իր անձրոջ գլխի համար վարձատրություն էր սահմանել 100 տաղանդ, այսինքն՝ ավելի քան 200.000 վոսկի ռուբլի։

Հավանորեն, Պոմպեյոսն ինքն էլ դեմ չէր հաշտության, սակայն նա, ոգտվելով Հայաստանում ծագած ներքին խռովություններից՝ ուզում էր, իհարկե, Տիգրանին առաջադրել խաղա-

[1] Պլուտ., Պոմպեյոս, գլ. 33, 1։

[2] Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 60—62։

դուԹյան պայմաններ ըստ իր հայեցողուԹյան։ Կասսիուս Դիոնի ուշագրավ մի վկայուԹյունից[1] պարզ ու վորոշ յերևում է, վոր այդ բանում Պոմպեյոսին մեծապես ոգնել եր Կրտսեր Տիգրանը, վորն ամեն կերպ խոչընդոտել ու խանգարել եր սկսված բանակցուԹյունները։ Ըստ Դիոնի՝ վորդու այս հակառակուԹյունն եր պատճառը, վոր ծերունի Տիգրանը չեր կարողացել գաշն կնքել չափավոր պայմաններով։

Կրտսեր Տիգրանը, հույս ունենալով վոր կստանա իր հոր գահը՝ ուղեցույց դառավ հռոմեական զորքին և առաջնորդեց Պոմպեյոսին ուղիղ Արտաշատի վրա։ Այս արշավանքի ճանապարհը ես պարզ կերպով վորոշվում է Պեվտինգերյան քարտեզի Սատաղ-Բագավան-Արտաշատ հին ուղեգծով, վոր մանրամասն լուսաբանված է «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխարհագրական իմ ուսումնասիրուԹյան մեջ։ Հռոմեական բանակը յեկել եր Սատաղից Գաղտառիճի վրայով Քեփրիքեյ և այնուհետև գնացել եր Ալաշկերտի դաշտը և այստեղից Հայկական Պար կամ Աղբի-դաղ լեռնաշղԹայի հարավային կողմով ու Կուլջաղի լեռնանցքով մտել եր Արարատյան դաշտը։ Կասսիուս Դիոնի կարևոր մի վկայուԹյունից[2] կարելի յե հետևցնել, վոր Պոմպեյոսը ես, ինչպես հետագայում նաև Կորբուլոնը՝ Արաքս գետն անցել եր Արարատյան դաշտում հին Վարդանակերտի մոտ գտնվող ծանծաղուտով[3] և Արտաշատին մոտեցել եր Արաքսի վոչ Թե աջ, այլ ձախ կողմից։

Ցերբ Պոմպեյոսի զորաբանակը մոտեցել եր Արտաշատին՝ Տիգրան Բ-ը, տեսնելով վոր դիմադրուԹյունն աննպատակ է ու անոգուտ՝ վճռեց, ինչ գնով ել լինի, համաձայնուԹյան գալ Պոմպեյոսի հետ և գնաց ինքը անձամբ նրա մոտ ու կամավոր կերպով անձնատուր յեղավ հռոմայեցիներին։ Տիգրանի տեսակցուԹյան մասին Պոմպեյոսի հետ հին աղբյուրները տալիս են խառնաշփոԹ տեղեկուԹյուններ, վորոնք կարևոր մի քանի կետերում իրարից զգալի չափով տարբերվում են։ Ապպիանոսը, որինակ, Թեև ինքը՝ համապատասխան Կասսիուս Դիոնի և Պլուտարքոսի հաղորդած տեղեկուԹյուններին՝ վկայում է, վոր Տիգրանի գնալը Պոմպեյոսի մոտ ինքնաբերաբար եր ու հոժարակամ, սակայն մի-

[1] Դբ. 36, գլ. 52, 1։
[2] Տես նույնը։
[3] Տես «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», եջ 45—46։

Պոմպեոսի ճանապարհը Փոքր Հայքից դեպի Արտաշատ

Նույն ժամանակ մատնանշում է, վոր վոմանք վկայում են նաև, վոր Տիգրանին նախապես հրավիրել եր Պոմպեյոսը։

Ինձ թվում է, վոր այս վերջին տեղեկությունը, վորը հիշատակված է Ապպիանոսի մոտ թռուցիկ կերպով և վորը պատմագիտական յերկերում աչքաթող է արված, կարող է ճիշտ լինել, վորովհետև Պլուտարքոսի մոտ ևս մատնացույց է արված, վոր Տիգրանը, նախ քան Պոմպեյոսի մոտ գնալը, ներս եր թողել Արտաշատ նրա ուղարկած հռոմեական կայազորը։ Անհավանական չե, ուրեմն, վոր Տիգրանը Պոմպեյոսի մոտ գնացել եր, իրոք, վոչ թե ինքնաբերաբար, այլ, հավանորեն, հատուկ հրավերով և նախնական բանակցություններից ու թերևս վորոշ հավաստիացումներից հետո։ Հռոմեական աղբյուրներն աշխատել են, ըստ յերևույթին, քողարկել նախնական համաձայնության հավանական այս փաստը և, Պոմպեյոսին մեծարելու համար, կարևոր են համարել առանձնապես շեշտել, վոր Տիգրանն ապավինել եր Պոմպեյոսի գթասրտությանը հլու ու անվերապահ կերպով։

Համաձայն աղբյուրների տված տեղեկություններին՝ ծերունի Տիգրանը—վորն այդ ժամանակ մոտ 75 տարեկան եր,—Պոմպեյոսի մոտ յեկել եր ձի հեծած, առանց արքայական ծիրանու, բայց գլխին ուներ իր խույրն ու ապարոշը։ Յերբ նա հասել եր հռոմեական զորաբանակի մուտքի առջև, նա ուզեցել եր, ինչպես այդ ընդունված եր հայերի մոտ, մտնել ճամբար ձիով։ Սակայն Պոմպեյոսի թիկնապահների պահանջով նա, համաձայն հռոմեական կարգերի, իջավ ձիուց ցած, տվեց նրանց իր սուրը ու ներս մտավ վոտքով։ Մտնելով Պոմպեյոսի մոտ, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[1], նա դեն գցեց իր խույրը և ուզեց խոնարհվել ու նրան վողջունել, սակայն Պոմպեյոսն իսկույն տեղից վեր կացավ, նրան բարձրացրեց և նստեցրեց իր կողքին։ Կասսիուս Դիոնի ասելով՝ Պոմպեյոսն այնուհետև Տիգրանին մխիթարեց և հայտնեց, վոր նա վոչ միայն կըմնա Հայաստանի թագավոր, այլև կըհամարվի հռոմայեցիների բարեկամ ու դաշնակից։ Ապա, ծերունուն հանգստացնելուց ու քաջալերելուց հետո՝ Պոմպեյոսը նրան հրավիրեց ճաշի։ Տիգրանի վորդին, վորը ներկա յեր ու նստած եր Պոմպեյոսի մյուս կողքին և վորը հույս ուներ Պոմպեյոսից ստանալու Հայաստանի գահը, տեսնելով վոր ինքը խաբված է՝ խիստ դժգոհ մնաց և Պոմպեյոսի մոտ չգնաց ճաշի, վորին հրավիրված եր հոր հետ միասին։

---

1 Գր. 36, գլ. 52, 3։

Տիգրանի ու Պոմպեյոսի տեսակցության վերաբերող այս նկարագրությունը, վորը կարող ե, ինչպես ասացինք, աչառու կերպով գունավորված լինել՝ մենք միջ բերինք, գլխավորապես, համաձայն Կասսիուս Դիոնի վկայություններին։ Պետք ե սակայն մատնանշել, վոր Պլուտարքոսի ու Ապպիանոսի համապատասխան հատվածներում կան աննկատելի շեղումներ, վորոնք պարզ ցույց են տալիս, վոր նրանց վկայություններին հիմք են ծառայել տարբեր սկզբնաղբյուրներ։ Ռեյնաքի կարծիքով, Կասսիուս Դիոնը կարող եր իր պատմության այս մասում օգտված լինել Լիվիուսից, Պլուտարքոսը՝ Պոմպեյոսի կենսագիր Թեոփանես Միտիլենացուց, իսկ Ապպիանոսը՝ Նիկոլաոս Դամասկացուց կամ Պոսիդոնիոսից[1]։

Ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել այս յերեք աղբյուրների տեղեկությունները Տիգրանի ու Պոմպեյոսի տեսակցության մասին։

1. Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 52, 1—4՝

«Յեվ յերբ Պոմպեյոսն անցավ Արաքսը և մոտեցավ Արտաշատին՝ Տիգրանը և քաղաքը նրան հանձնեց և ինքը ևս հոժարակամ յեկավ նրա բանակը։ Նա ցույց տվեց բացահայտ կերպով, վորքան այդ հնարավոր եր՝ իր նախկին մեծությունը և այժմյան խոնարհությունը, վորպեսզի արժանի յերևա թե հարգանքի և թե կարեկցության։ Նա հանել եր մեջընդմեջ սպիտակ իր պատմուճանը և համակ ծիրանի վերարկուն, բայց ուներ գլխին իր խույրն ու ապարոշը։ Արդ՝ Պոմպեյոսը, ընդառաջ ուղարկելով նրան իր թիկնապահներից մեկին՝ նրան իջեցնել տվեց ձիուց (վորովհետև Տիգրանը, ինչպես նրանց մոտ սովորություն ե՝ ներս եր մտնում ճամբարը ձիով)։ Բայց յերբ Պոմպեյոսը տեսավ, վոր նա ներս մտնելով վոտքով՝ գեն գցեց խույրը և ուզում եր խոնարհվել իրեն վողջունելու համար՝ խղճահարվեց, վեր կեցավ տեղից, բարձրացրեց նրան, դրեց խույրը գլխին և նստեցրեց իր կողքի բազմոցի վրա։ Նա մխիթարեց նրան և ի միջի այլոց ասաց, վոր նա վոչ միայն չե կորցրել հայոց թագավորությունը, այլև ձեռք ե բերել նաև հռոմայեցիների բարեկամությունը։ Այսպիսով Պոմպեյոսը մտերմացավ նրա հետ և հրավիրեց ճաշի։ Իսկ վորդին, վորը նստած եր Պոմպեյոսի մյուս կողքին՝ հոր առջև վեր չկեցավ տեղից, և վոչ

---

1 Տես Reinach, Mithridate Eupator, եջ 452։

էլ նրան որևէ այլ կերպ պատվեց։ Նա նմանապես չգնաց ճաշի, որին հրավիրված էր։ Ցեվ հենց սրանով նա մեծապես իր դեմ գրգռեց Պոմպեյոսի ատելությունը»։

2. Պլուտարքոս, Պոմպեյոս, գլ. 33, 1—4՝

«Իսկ Տիգրան թագավորը, որին Լուկուլլոսը քիչ առաջ ջարդ էր տվել, իմանալով որ Պոմպեյոսը բնավորությամբ մեղմ է և հեզ՝ ներս թողեց հռոմեական կայազորն իր մայրաքաղաքը և, վերցնելով իր բարեկամներին ու ազգականներին՝ գնաց, որպեսզի անձնատուր լինի Պոմպեյոսին։ Երբ նա հասավ ձի հեծած ճամբարի ցցապատնեշին՝ նրան մոտեցան Պոմպեյոսի լերկու թիկնապահները և հրամայեցին ձիուց ցած իջնել ու գնալ ոտքով,—որովհետև յերբեք չէ տեսնված, որ որևէ մի մարդ հռոմեական բանակ մտնի ձի նստած։ Տիգրանը հնազանդվեց ու հանեց և նրանց տվեց նաև իր սուրը։ Ցեվ հետո, յերբ նա յեկավ իրեն Պոմպեյոսի մոտ՝ հանեց իր խույրը և ուզեց գնել նրա ոտքերի մոտ[1] և, բացի այդ, խոնարհվելով—որ ամենից ամոթալին էր—ուզում էր նաև ծունր իջնել։ Սակայն Պոմպեյոսը, բռնելով նրա աջ ձեռքից՝ կանխեց այդ, քաշեց իր մոտ և նրան նստեցրեց իր կողքին, իսկ որդուն մյուս կողքին։ .....Բայց որդին դժգոհ մնաց և, հրավիրված լինելով ճաշի, ասաց, որ նա կարիք չունի նման պատիվների Պոմպեյոսի կողմից և որ նա կըգտնի հռոմայեցիների մեջ մեկ ուրիշին։

3. Ապպիանոս, Միհրդատ., գլ. 104՝

«Սակայն բարբարոսների մոտ մեծապես համբավված էյին Պոմպեյոսի արդարամտությունը և հավատարմությունը։ Հույս դնելով նրա այդ համբավի վրա՝ նրա մոտ գնաց, առանց նախապես լրատար ուղարկելու, Տիգրան հայրը։ Ցեվ սա, ամեն բանում իրեն տրամադրելով Պոմպեյոսի արդարադատությանը՝ ուզում էր մեղադրել որդուն Պոմպեյոսի առջև. Երբ Պոմպեյոսը, նրան պատվելու համար, իր զինվորական տրիբուններին և հեծելապետներին հրամայեց գնալ նրան դիմավորելու՝ Տիգրանի շուրջը գտնվողները ճանապարհին վախեցան, որովհետև մտին էյին գնում առանց լրատարի միջոցով ազդարարելու, և յետ փախան։ Իսկ

[1] Համեմատե նաև Վալերիուս Մաքսիմուսի վկայությունը (գք. V, գլ. 1, 9), որի սկզբնաղբյուրն է Կ ի կ ե ր ո ն ի Pro Sestio ճառը (XXVII, 58):

*Տիգրանը գնաց և, համարելով Պոմպեյոսին իրենից ավելի հզոր՝ ըստ բարբարոսական սովորության վողջունեց նրան խոնարհվելով։ Վոմանք ասում են, վոր Տիգրանին, վորին նախապես հրավիրած է լեղել Պոմպեյոսը՝ առաջնորդել եյին նրա մոտ թիկնապահները։*

*Պոմպեյոսի և Տիգրանի այս հանդիպման ժամանակ նրանց միջ կայացավ հաշտություն, վորով վերջ դրվեց հայկական նորաստեղծ աշխարհակալության։ Համաձայն հաշտության պայմանների[1] Տիգրանը պետք է հրաժարվեր իր բոլոր նվաճումներից, այն է՝ Ասորիքից, Արևելյան Կիլիկիայից, Փյունիկեյից, Կապպադովկիայից, Կորդուքից ու Ծոփքից և մնալու յեր միմիայն իր հայրենի յերկրի՝ Մեծ Հայաստանի թագավոր։ Իսկ նրա վորդին, Կրտսեր Տիգրանը, ստանալու յեր Ծոփքը (ըստ Ապպիանոսի՝ նաև Կորդուքը) և հոր մահից հետո ժառանգելու յեր նաև նրա գահը։ Վոմանք, հիմնվելով Ապպիանոսի անորոշ մի վկայության վրա[3], կարծում են, վոր Ծոփքի թագավորությունը նա ստացել եր դեռ առաջ իր հորից[4]։*

*Ծերունի Տիգրանը վոչ միայն հարկադրված յեղավ հրաժարվելու իր նվաճումներից, այլև վճարելու յեր Պոմպեյոսին 6000 տաղանդ պատերազմական տուգանք, վորն անում է այժմյան գրամով մոտ 25 միլիոն գերմանական վոսկի մարկ կամ մոտ $12^1/_2$ միլիոն ռուսական վոսկի ռուբլի։ Բացի այդ, նա հռոմեական զորքերին ևս համաձայնել եր տալ հատուկ դրամական նվեր՝ ամեն մեկ զինվորին 50 դրաքմե (հավասար է մոտ 35 վոսկի մարկի կամ մոտ $17^1/_2$ վոսկի ռուբլու), հարյուրապետներին 1000-ական դրաքմե (= 350 վոսկի ռուբ.) և զինվորական տրիբուններին 1-ական տաղանդ (= 2100 վոսկի ռուբ.)[5]։*

---

*[1] Տե՛ս Դ ի ո ն, գք. 36, գլ. 53, 2, Պ լ ո ւ տ ա ր ք ո ս, Պոմպեյոս, 33, 3—4 և Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատ., գլ. 104—105։*

*[2] Միհրդատ., գլ. 105։*

*[3] Նույնը, գլ. 104։*

*[4] Տե՛ս Հ. Ա ս տ ո ւ ր յ ա ն, «Քաղաքական վերաբերութիւններ», էջ 77։*

*[5] Տե՛ս Ս տ ր ա բ ո ն,* XI, *14, 10 (530), Պ լ ո ւ տ ա ր ք ո ս, Պոմպեյոս, 33 3—4 և Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատ., գլ. 104։ Համաձայն վերջինիս վկայության զինվորական տրիբուններից ամեն մեկին արված է լեղել վոչ թե 6000 դրաքմե կամ 1 տաղանդ, այլ 10,000 դրաքմե։ Ըստ Հուլչի հանրապետական Հռոմի դենար-դրաքմեն հավասար եր 0,70 վոսկի մարկի կամ մոտ 35 վոսկի կոպեկի. տես* Griechische und römische Metrologie, Berlin 1882, *էջ 250—252, 297—299 և 711։*

Հաշտության այս պայմաններին վերաբերող վկայություն-
ները ևս մեջ ենք բերում բառացի թարգմանությամբ։

1. Կասսիոս Դիոն, գք. 36, գլ. 53, 2՝

«Հետևյալ օրը Պոմպեյոսը, նրանց ունկնդրելուց հետո՝ տվեց մեծին հայրենի ամբողջ թագավորությունը, իսկ այն, ինչ որ Տիգրանը նվաճել էր ինքը,—թե այլ երկրներ և թե Կապադովկիայի ու Ասորիքի մասերը, Փյունիկեն ու Հայաստանի սահմանակից Ծոփքը,—նրանից վերցրեց, և, բացի այդ, նրանից պահանջեց նաև փող. իսկ որդուն տվեց միայն Ծոփքը»։

2. Պլուտարքոս, Պոմպեյոս, գլ. 33, 3—4՝

«Նա [Պոմպեյոսը] ասաց, որ նախորդ դեպքերի համար մեղադրելու չէ Լուկուլլոսին, որովհետև նա չէ նրանից [Տիգրանից] վերցրել Ասորիքը, Փյունիկեն, Կիլիկիան, Գալատիան և Ծոփքը։ Իսկ այն, ինչ որ նա մինչև իր գալը պահպանել էր՝ կլինի իրենը։ Բայց պետք է հռոմայեցիներին վճարե իր հանցապարտության համար վեց հազար տաղանդ պատերազմական տուգանք։ Եվ Ծոփքում թագավոր կլինի նրա որդին։ Այս պայմանները Տիգրանը գոհունակությամբ ընդունեց և, երբ հռոմայեցիները նրան ողջունեցին ու հայտարարեցին թագավոր՝ նա խիստ ուրախացավ ու խոստացավ տալ յուրաքանչյուր զինվորին կես մնաս, հարյուրապետներից ամեն մեկին 10 մնաս և զինվորական տրիբուններին, մեկական տաղանդ»։

3. Ապպիանոս, Միհրդատ., գլ. 104—105՝

«Գալով Պոմպեյոսի մոտ նա [Տիգրան թագավորը] ներողություն խնդրեց պատահած դեպքերի համար և տվեց իրեն Պոմպեյոսին 6000 տաղանդ, յուրաքանչյուր զինվորին 50 դրաքմե, վաշտապետներից ամեն մեկին՝ 1000 դրաքմե և զինվորական տրիբուններին՝ 10.000-կան դրաքմե։ Եվ Պոմպեյոսը պատահած դեպքերը ներեց նրան, հաշտեցրեց որդու հետ և որոշեց, որ որդին թագավոր լինի Ծոփքի և Կորդուքի, որոնք այժմ կազմում են փոքրագույն Հայաստանը, իսկ հայրը լինի թագավոր մյուս Հայաստանի ու որդին լինի նրան հաջորդ։ Իսկ այն երկրները, որ նա նվաճել էր՝ հրամայեց թողնել։ Եվ Տիգրանը ձեռք քաշեց Ասորիքից—Եփրատ գետից սկսած մինչև ծովը. նրան էր պատկանում թե այդ երկիրը և թե Կիլիկիայի մի մասը,

վորոնց միջից նա դուրս էր վտարել Անտիոքոսին, վորի մականունն էր Բարեպաշտ»։
4. Սարաբոն, XI, 14, 10 (530)՝
«Իսկ յերկրի [Հայաստանի] հարստության և հզորության կարևոր մի նշանն այն էր, վոր Տիգրանը, Արտավազդի հայրը, յերբ նրա վրա 6.000 արծաթ տաղանդ դրված եր իբրև տուգանք՝ իսկույն այդ գումարը բաշխեց հռոմեական զորքերին,—յուրաքանչյուր զինվորին՝ հիսուն դրաքմե, ամեն մեկ հարյուրապետին՝ հազար դրաքմե և հեծելապետներին ու զինվորական տրիբուններին՝ մեկական տաղանդ»։

Թեև պատմական յերկերում հաճախ մատնանշվում է, վոր Պոմպեյոսի վերաբերմունքը դեպի Տիգրանը յեղել է արտասովոր կերպով մեղմ, սակայն, ինչպես տեսնում ենք, հաշտության վերոհիշյալ պայմանները բավական ծանր եյին։ Պետք է ասել, վոր արտաքին մեղմությունը և արտակարգ զգուշավորությունը յեղել են Պոմպեյոսի քաղաքական ու ռազմական գործունեյության հիմնական հատկանիշները։ Լինելով հռոմեական ֆինանսիստների ու վաշխառուների կուսակիցը՝ Պոմպեյոսն ինքը եա, ինչպես հայտնի յե, Իտալիայի ամենախոշոր վաշխառուներից մեկն եր։ Նա գերադասում եր հռոմեական իմպերիալիզմի նպատակներն իրագործել վոչ թե զենքի ուժով, ինչպես Լուկուլլոսը, վորը խիզախ զինվորական եր, այլ խաղաղ ճանապարհով և առանց ռիսկի։ Հայաստանը, ինչպես տեսնում ենք, նա մեծ աջողությամբ կարողացել եր ընկճել ու կողոպտել առանց արյունահեղության ու զոհողությունների։

Հաշտության վերոհիշյալ պայմաններից չեր կարող, իհարկե, գոհ լինել Կրտսեր Տիգրանը։ Իբրև վարձ իր դավաճանության՝ նա հույս ուներ ստանալու վոչ թե Ծոփաց յերկրի թագավորությունը, վորը նա, ինչպես տեսանք, նախ քան իր ապստամբությունը, ըստ յերևույթին, արդեն ստացել եր իր հորից, այլ հայկական մեծ ու հզոր պետությունը։ Չափազանց ծանր ու անարդար եր նա համարում նաև այն, վոր պատերազմական վերոհիշյալ տուգանքը վճարվելու յեր, գլխավորապես, Ծոփքում գտնվող գանձապահեստներից, այսինքն՝ իր թագավորության միջոցներից։ Թե վորպիսի մեծ դժվարություններով եյին դուրս տրվել դրամական հարստությունները Ծոփքի պահեստներից՝ այդ մասին մանրամասն պատմում է Կասսիուս Դիոնը։ Նրա ընդարձակ վկայությունը, վորը խիստ հետաքրքրական է թագավորական

գանձերի պահպանման կարգերի համար հայկական յերկրներում՝ մեջ ենք բերում թարգմանաբար առանց կրճատումների։

Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 53, 3—5՝

«Յեվ վորովհետև պատահմամբ նրա [Սոփքի] մեջ եյին գտնվում գանձապահեստները՝ ուստի և սրանց պատճառով վեճ ունեցավ յերիտասարդ Տիգրանը։ Յեվ աջողություն չունենալով (քանի վոր Պոմպեյոսն ուրիշ վոչ մի տեղից չեր կարող ստանալ վորոշված գումարը)՝ նա դժգոհեց և մտածում եր փախչել։ Սակայն Պոմպեյոսը, իմանալով այդ՝ նրան հսկողության տակ առավ առանց կալանքի և, սուրհանդակներ ուղարկելով գանձերի պահապանների մոտ՝ հրամայեց, վոր նրանք այդ բոլորը տան նրա հորը։ Իսկ յերբ նրանք չհնազանդվեցին, ասելով վոր այդ նրանց պետք ե կարգադրե յերիտասարդ Տիգրանը, վորին պատկանում ե յերկիրը՝ Պոմպեյոսը սրան ուղարկեց ամրությունների վայրը։ Յեվ սա, տեսնելով վոր դրանք փակ են՝ մոտ գնաց և հրամայեց դժկամորեն բաց անել։ Իսկ յերբ նրանք դարձյալ չլսեցին, առարկելով վոր նա այդ հրամանը տվել ե վոչ թե կամովին, այլ հարկադրված՝ Պոմպեյոսը զայրացավ և հրամայեց յերիտասարդ Տիգրանին բանտարկել։ Յեվ այսպիսով գանձերը ստացավ ծերունի Տիգրանը»։

Կրտսեր Տիգրանի ձերբակալության մասին, վոր մատնանշված ե Դիոնի այս վկայության մեջ՝ հին աղբյուրները տալիս են միանգամայն տարբեր տեղեկություններ։ Ըստ Կասսիուս Դիոնի այս վկայության, ձերբակալման պատճառ եր ծառայել, ինչպես տեսանք, նրա ընդդիմությունը և նրա հարուցած դժվարությունները Սոփքում գտնվող գանձերի հանձնման ժամանակ։ Ապպիանոսն ակնարկում ե, վոր նա նոր դավադրություն եր կազմակերպել իր հոր դեմ[1]։ Իսկ Պլուտարքոսը, վորի համապատասխան վկայությունը վերև մեջ եյինք բերել, մատնանշում ե, վոր նա՝ հրավիրված լինելով ճաշի՝ հրաժարվել եր գնալ և անարգել ու վիրավորել եր Պոմպեյոսին[2]։ Ինձ թվում ե, վոր այս բոլոր վկայություններնել կարող են վորոշ չափով ճիշտ լինել։ Կրտսեր Տիգրանը, վորը դժգոհ եր մնացել և թշնամացել եր Պոմպեյոսին՝ կարող եր, իրոք, կոպտաբար վերաբերված լինել սրան, հակառա-

---

[1] Միհրդատ., գլ. 105։

[2] Տես Պ լ ու տ ա ր ք ո ս, Պոմպեյոս, 33, 4։

ված լինել իր թագավորության գանձերի հանձնմանը և, միևնույն ժամանակ, կարող էր նաև դավեր նյութած լիներ իր հոր դեմ։

Կրտսեր Տիգրանի ձերբակալությունը, վորը փաստորեն Պոմպեյոսի դաշնակիցն էր՝ բացահայտ բռնություն էր և խախտումն միջազգային իրավունքի։ Միաժամանակ այդ թշնամանք էր ու վիրավորանք կալանավորի աներոջ՝ պարթևների թագավոր Հրահատ Գ-ի նկատմամբ։ Ըստ Պլուտարքոսի վկայության[1]՝

> «Հրահատ պարթևը մարդ էր ուղարկել [Պոմպեյոսի մոտ] պահանջելու յերիտասարդին, վոր իր փեսան էր, նաև պահանջ հայտնելու, վորպեսզի իրենց իշխանությունների սահմանը լինի Յեփրատ գետը։ Պոմպեյոսը պատասխանել էր, վոր Տիգրանն ավելի մոտ է իր հորը, քան աներոջը, իսկ սահմանը կլինի այն, վոր կըհամարվի իրավացի»։

Հակառակ, ուրեմն, Հրահատ Գ-ի բողոքներին, վորը հիշեցնում էր Պոմպեյոսին իր կնքած դաշինքը հռոմայեցիների հետ՝ Կրտսեր Տիգրանը և նրա կինն ու դուստրը[2] ուղարկվեցին շուտով Հռոմ, վորպեսզի մասնակից լինեն Պոմպեյոսի հաղթահանդեսի շքերթին։

Պոմպեյոսի վարքագծի այս անակնկալ փոփոխությունը պարթևական թագավորության հանդեպ համապատասխանում էր կատարելապես Հռոմի արտաքին, նենգ ու խարդախ քաղաքականությանը։ Քանի վոր պոնտական ու հայկական թագավորությունները թշնամի եյին Հռոմին և պատերազմում եյին նրա դեմ՝ վերջինս իրեն ցույց էր տալիս բարեկամ պարթևներին։ Հռոմեական զորավարները, ինչպես Սուլլան և Լուկուլլոսը, նույնպես և Պոմպեյոսը՝ կամ բարեկամական բանակցություններ եյին վարում նրանց հետ և կամ դաշինք եյին կնքում ու խոստանում նրանց թողնել Միջագետքը մինչև Յեփրատ գետը։ Բայց այժմ պոնտական թագավորությունն այլևս գոյություն չուներ, իսկ Տիգրան թագավորը ճանաչված էր իբրև բարեկամ ու դաշնակից Հռոմի։ Ուստի և Հռոմը, վորը չէր ուզում ունենալ իր շուրջը հզոր ու մեծ պետություններ՝ հիմա հովանավոր դառավ Տիգրան թագավորի և փոխեց իր վերաբերմունքը դեպի Հրահատ Գ-ը։ Պարթևական պետությունը Հռոմի համար այլևս հանդուրժելի չէր իբրև անկախ ու ուժեղ թագավորություն։ Յեվ շուտով, ինչպես կտեսնենք,

[1] Տես նույնը, 33, 4։

[2] Նույնը, գլ. 45, 4։

Նրանց նախկին բարեկամությունը վերածվեց անհաշտելի թշնամության։

Դժվար չէ նաև կռահել, թե ինչու Պոմպեյոսը Հայաստանի գահը չտվեց Կրտսեր Տիգրանին։ Շատ պարզ է, վոր ծերունի Տիգրանը, վորը պարթևական թագավորության վոխերիմ թշնամին էր՝ հռոմայեցիների համար ավելի ցանկալի դաշնակից էր, քան Կրտսեր Տիգրանը, վորը փեսան էր ու բարեկամը Հրահատ Գ-ի։

Ներգրավելով Հայաստանը հռոմեական ազդեցության շրջանակի մեջ՝ Պոմպեյոսը, ինչպես վկայում է Պլուտարքոսը[1], թողեց այստեղ իբրև վերահսկիչ Աֆրանիուսին, իսկ ինքն առաջնորդեց հռոմեական զորքը դեպի հյուսիս ընդդեմ Միհրդատ Պոնտացու, վորը սակավաթիվ իր զորքերով պատսպարվել էր Կողքիսում։ Սակայն վորովհետև ձմեռն արդեն վրա յեր հասել՝ նա ստիպված յեղավ ձմեռել Կուր գետի մոտ Արտաշատից Կողքիս տանող ռազմական հին ճանապարհի շրջավայրերում։

Ինչպես ցույց ենք տվել Պոմպեյոսի անդրկովկասյան ռազմուղիների լուսաբանությանը վերաբերող մեր ընդարձակ հոդվածում[2], հռոմեական զորքի 66/65 թվի ձմեռվա կայանատեղերը գտնվել են վոչ թե Յեփրատի վերին հոսանքի ու Կուր գետի ակունքների միջև, ինչպես այդ յենթադրում է Մոմզենը[3], այլ այժմյան Ախալցխայի ու Ախալքալաքի միջև։ Մոմզենը հիմնվել է, անշուշտ, Դիոնի վկայության վրա, վորը հռոմեական զորքերի ձմերոցի տեղը ցույց է տվել Անահիտյան յերկրում և Կուր գետի մոտ[4]։ Սակայն Դիոնի հիշատակած Անահիտյան այս յերկիրը, վորը համապատասխան է համարվում հին Յեկեղյաց գավառին, իրապես, ինչպես մատնանշված է հիշյալ իմ հոդվածում՝ գտնվել է Պեվտինգերյան քարտեզի Caspiae (=այժմ. Խոսպիա) կայարանի ու Կուր գետի մոտերքում։

Համաձայն վերոհիշյալ մեր ուսումնասիրության ճշտիվ վորոշվում է նաև հռոմեական զորքի ճանապարհն Արտաշատից դեպի ձմերոցի տեղը։ Այդ ճանապարհը պետք է յենթադրել, անշուշտ, Պեվտինգերյան քարտեզի Արտաշատ—Սեբաստոպոլիս ուղեգծով, վորը մանրամասն լուսաբանված է «Հին Հայաստանի

---

1 Տես Պոմպեյոս, գլ. 34, 1։

2 Տես „Круговой путь Помпея в Закавказье", Вестник древней истории, 1939, 4:

3 Տես Римская история, III. Москва 1887, էջ 108։

4 Դ ի ո ն, գք. 36, գլ. 63, 5։

Պևտինգերյան քարտեզի Artaxata–Ad Mercurium ուղեգիծը

Պոմպեյոսի ճանապարհը

Պոմպեյոսի ճանապարհն Արտաշատից Իբերիա և այնտեղից Սեբաստոպոլիս-Ֆազիս։

գլխավոր ճանապարհները», աշխարհագրական իմ աշխատության մեջ, այն է՝ այժմյան Աշտարակի, Կոնդախսազի, Ղանլիճայի ու Խոսպիայի մոտով դեպի Կուր գետի աջակողմյան ափերը։

Ձմեռոցում Պոմպեյոսը բաժանել եր իր զորքերը, ինչպես հաղորդում է Կասսիուս Դիոնը[1], յերեք զորամասերի, վորոնք տեղավորված եյին իրարից բավականաչափ հեռու և գտնվում եյին իրեն Պոմպեյոսի ու նրա յերկու ոգնականների՝ Լուկիուս Փլակկուսի և Մետելլուս Կելերի հրամանատարության տակ։ Այս վերջինի բանակումն եր պահվում կալանավորված Կրտսեր Տիգրանը։

Նախապատրաստելով իր արշավանքը դեպի Կողքիս, ուր գտնվում եր Միհրդատը՝ Պոմպեյոսը հարաբերության մեջ մտավ Իբերների Արտոկես և աղվանների Որոյզես թագավորների հետ, վորոնք խոստացան չեզոք մնալ և համաձայնեցին, վոր հռոմեական զորքն անցնի անարգել իրենց յերկրների միջով[2]։ Սակայն, իրապես, նրանք՝ կամ Միհրդատի դրդումով և կամ Կրտսեր Տիգրանին ազատելու նպատակով՝ պատրաստվել եյին դարան գործել հռոմայեցիներին և նրանց բերել հանկարծակիի։

Դեկտեմբերի կեսերին, յերբ Պոմպեյոսի զորքերն անհոգ ու հանգիստ կատարում եյին իրենց Սատուրնալիա տոնը՝ իբերները և աղվաններն անցան Կուր գետը և հարձակվեցին հանկարծ հռոմեական յերեք զորամասերի վրա, հույս ունենալով հարվածել ու նրանց ջարդել առանձին առանձին։ Սակայն հարձակումը, վորը չափազանց վտանգավոր կարող եր լինել Պոմպեյոսի զորաբանակի համար՝ չաջողվեց։ Արտոկեսի ու Որոյզեսի զորքերը յետ մղվեցին և նահանջելիս մեծ կորուստներ տվին, գլխավորապես, Կուրի գետանցքն անցնելիս[3], վորը գտնվում եր, հավանորեն, Պևտինգերյան քարտեզի Ad Metcurium կայարանի, այժմյան Ախալցխա քաղաքի մոտ։

Անսպասելի ու վտանգավոր այս հարձակումից հետո հռոմեական զորքերը մնացին անվրդով Կուր գետի մոտ մինչև 65 թվի գարունը։

---

1 Տես գք. 36, գլ. 54։

2 Տես Պլուտարքոս, Պոմպեյոս, 34, 2։

3 Տես նույնը, գլ. 34, 1—3 և Ապպիանոս, Միհրդաա., գլ. 102—103 և Կասսիուս Դիոն, գք. 36, գլ. 54, 1—5։

## 18. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՅԵՎ ՄՅՈՒՍ ՀԱՐԵՎԱՆ ՅԵՐԿՐՆԵՐԸ ՊՈՄՊԵՅՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԻՑ ՀԵՏՈ

*65 թվի գարնան սկզբին Պոմպեյոսը, փոխանակ առաջ շարժվելու դեպի Կողքիս՝ ուզեց նախապես ապահովել իր թիկունքը Իբերիայի կողմից և արշավանքի յելավ ընդդեմ իբերների։ Հռոմեական զորքն իջավ Կուր գետի հովիտներով, առանց վորևե դիմադրության հանդիպելու, մինչև Հարմոզիկա ամրությունը, վորը գտնվում եր Կուր գետի և այժմյան Մցխեթի հարավակողմում։ Պոմպեյոսի այս արշավանքը մանրամասն նկարագրված ե Կասսիուս Դիոնի պատմության մեջ[1]։*

*Արտոկես թագավորը, ինչպես հաղորդում ե Դիոնը, այրելով Կուր գետի կամուրջը՝ փախավ նրա ձախ ափը։ Սակայն տեսնելով վոր Պոմպեյոսը, Հարմոզիկան գրավելուց հետո, պատրաստություններ եր տեսնում գետն անցնելու՝ նա իսկույն խաղաղության բանակցություններ սկսեց, ուղարկելով հռոմայեցիներին կենսամթերքներ՝ և վերակառուցեց նաև Կուր գետի կամուրջը։*

*Բայց յերբ հռոմեական զորքն անցել եր արդեն գետի մյուս ափը՝ նա վախեցավ ու նորից փախավ մինչև Պելորոս գետը։ Անցնելով այս գետը ևս՝ նա այրեց նաև սրա կամուրջը։ Ինչպես Պոմպեյոսի հետապնդման ժամանակ, նույնպես և Պելորոս գետն անցնելիս՝ իբերները կրեցին մեծ կորուստներ։ Այնուհետև, վորովհետև հռոմեական զորքերը կանգ չառան և Պելորոս գետի ափին՝ Արտոկեսն ուղարկեց Պոմպեյոսին նվերներ, տվեց իր վորդիներին իբրև պատանդ և ընդունեց նրա առաջարկած պայմանները։*

*Պոմպեյոսի հաղթական բանակը վերջապես կարողացավ, ապահովելով իր թիկունքը հնարավոր հարձակումներից՝ շարունակել իր արշավանքը Միհրդատ Եվպատորի դեմ։ Հարմոզիկայի մոտից նա գնաց Կուր գետի հովիտներով և այժմյան Սուրամի ու Շորապանի վրայով դեպի Ռիոն գետի հովիտները և այնտեղից*

---

[1] *Տե՛ս գք. 37, գլ. 1, 3—5 և գլ. 2, 1—6։*

Սեբաստոպոլիս-Փոթի, ուր գտնվում էր հռոմեական նավատորմիղը։ Պոմպեյոսը կարծում էր, որ Միհրդատը, որը շրջապատված էր ծովի կողմից՝ գտնվում էր իր ծուղակի մեջ։ Սակայն նա զարմացած մնաց, երբ իրեն հայտնեցին, որ որսն արդեն ծուղակից դուրս է եկել։ Համառ ծերունին գրեթե անմատչելի ճանապարհներով անցել էր իր սակավաթիվ զորամասի հետ մոտ 700 կիլոմետր և գտնվում էր արդեն Ղրիմում, ուր վերստին նվաճել էր Բոսփորյան իր թագավորությունը։

Պոմպեյոսն աննպատակահարմար ու վտանգավոր համարեց շարունակել իր արշավանքը և գնալ ծովով Ղրիմ, ուր ուժեղացել ու վերականգնել էր իր իշխանությունը Միհրդատը։ Կողքիսից նա վերադարձավ Հայաստան և արշավեց այստեղից Աղվանք[1]։ Նա վճռել էր պատժել ու ընկճել Աղվանից Որոյզես թագավորին, որը, ինչպես տեսանք, հարձակվել էր հռոմայեցիների վրա, հավանորեն, Միհրդատի սադրանքով։

Պոմպեյոսի վերադարձի ճանապարհը Կողքիսից Հայաստան, ինչպես և նրա աղվանների դեմ արշավանքի ռազմուղին, որոնք դեռ մինչև այժմ լուսաբանված չեն, կարելի չէ այժմ գրեթե ճշտիվ որոշել աշխարհագրական նորագույն ուսումնասիրությունների օգնությամբ։ Նրա ճանապարհը Կողքիսից մինչև այժմյան Ապարանի շրջանը պետք է ենթադրել, ինչպես վերև ասացինք, Պեվտինգերյան քարտեզի Սեբաստոպոլիս-Արտաշատ մեծ ռազմուղիով և այժմյան Արասթումանի, Խոսպիայի ու Ղանլիճայի վրայով։ Իսկ ճանապարհը դեպի Աղվանք հավանական է ենթադրել դարձյալ Պեվտինգերյան քարտեզի Արտաշատ-Արմաստիկա-Լազո շրջանային հին ուղեգծով, որը քննության է առնված Մարկվարտի աշխատություններից մեկում[2]։

Հռոմեական զորքը գնացած պիտի լիներ այժմյան Ղանլիճայից Կիրովականի, Դիլիջանի, Իջևանի և Աղստաֆայի վրայով դեպի Կուր գետի հյուսիսակողմը գտնվող հին Կամբեճ գավառը, որը ենթադրում են այժմյան Յորա և Ալազան գետերի միջև։

Պոմպեյոսի արշավանքն Աղվանների դեմ մանրամասն նկարագրել են Կասսիուս Դիոնը և Պլուտարքոսը[3]։ Հռոմեական զորքը,

---

[1] Տե՛ս Դ ի ո ն, գք. 37, գլ. 3, 3—4։

[2] Տե՛ս J. Markwart, Das Itinerar von Artaxata nach Armastica auf der romischen Weltkarte, Wien 1828:

[3] Տե՛ս Դ ի ո ն, գք. 37, գլ. 3, 3—6, 4, 1—4 և 5, 1 և Պ լ ո ւ տ ա ր ք ո ս, Պոմպեյոս, գլ. 35, 1—2, համեմատե նաև Ա պ պ ի ա ն ո ս, Միհրդատ., գլ. 103։

ինչպես պատմում են նրանք, հասնելով Կուր գետի ստորին հոսանքի մոտերքը՝ կարողացել էր անցնել գետի հունով, որն ամառվա շոգերի պատճառով խիստ ծանծաղել էր։ Գետն անցնելուց հետո՝ նրանք մտել էին այժմյան Ղարայազի դաշտը և առաջ շարժվել դեպի Յորա գետը, որը Կասսիուս Դիոնի մոտ անվանված է Կամբյուզես (=Կամբեճ)։ Անցնելով նաև այս գետը՝ նրանք գնացել էին դեպի այժմյան Ալազան գետը, որի հին անունը յեղել է ըստ Դիոնի և ըստ Պլուտարքոսի Աբաս կամ Աբանտ։ Ամբողջ այս ճանապարհը հռոմայեցիներն անցել էին շոգերի պատճառով, մեծ մասամբ, գիշերները և խիստ տառապել էին ծարավից։ Նրանք իրենց հետ վերցրել էին միմիայն ջուր, մոտ տասը հազար տիկ, իսկ կենսամթերքներ նրանց տալիս էին կամովին Կամբեճ գավառի տեղական բնակիչները։

Ճակատամարտն Աղվանից թագավորի զորքերի հետ տեղի ունեցավ Ալազան գետի ձախ ափին, ուր հռոմեական բանակը թշնամու հետ նոր էր մտել շփման մեջ։ Պլուտարքոսի պատմելով՝ աղվանական զորքերը, որոնց առաջնորդն էր թագավորի յեղբայրը Կոզիսը՝ վատ էին զինված և մեծ մասը հագել էին իբրև շոր գազանի մորթիներ։

Ճակատամարտից առաջ Պոմպեյոսը հրամայել էր իր հետևակ զորքին թաքնվել հեծելազորի յետևը, և աղվանները, կարծելով, որ իրենց դիմադրում է միմիայն թշնամու հեծելազորը՝ իսկույն կռվի բռնվեցին սրա հետ։ Սակայն հռոմեական լեգեոնները, առաջ գալով հեծելազորի յետևից՝ ջարդեցին և նրանց ի փախուստ դարձրին դեպի մոտակա անտառները։ Յեվ փախչողներից շատերը մահացան անտառներում, որ Պոմպեյոսը հրամայել էր շրջապատել և հրդեհել։ Շուտով այնուհետև Որոյզեսի հետ կնքվեց հաշտություն։ Աղվանքի թագավորը, հպատակվելով Պոմպեյոսին՝ ինչպես և Իբերիայի Արտոկես թագավորը, ձևականորեն ճանաչեց Հռոմի գերիշխանությունը։

Աղվանքից հռոմեական զորաբանակը, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[1], վերադարձավ Հայաստան և այստեղից Փոքր Հայք։ Համաձայն Կասսիուս Դիոնի վկայության՝ 65/64 թվին դարձյալ նա ձմեռել էր 66/65 թվի ձմերոցի տեղում Ասպիս գավառում (ἐν τῇ "Ασπιδι)[2]։ Ուշագրավ է, որ Դիոնի այս յերկրորդ վկայության

1 Տես Պոմպեյոս, գլ. 36, 1։

2 Տես Դ ի ո ն, գք. 37, գլ. 7, 5։




Պոմպեյոսի ճանապարհն Աղվանքից Փոքր Հայք

մեջ միևնույն գավառը, վորն առաջին վկայության մեջ անվանված էր Անահիտյան յերկիր, այժմ անվանված է Ասպիս։ Ինչպես մանրամասն ցույց ենք տվել «Պոմպեյոսի շրջանային ճանապարհն Անդրկովկասում» մեր ռուսերեն ընդարձակ հոդվածում[1], այս գավառը Ասպիս կամ ավելի ճիշտ Կասպիս է անվանվել, հավանորեն, Պեվտինգերյան քարտեզում նշանակված Caspiae մեծ կայարանի անունով, վորը գլխավոր կենտրոնավայրն է յեղել այժմյան Խոսպիայի շրջանի։ Կասպիսը, ըստ յերևույթին, նույնպես՝ ինչպես և Ցեկեղյաց գավառը, կոչվել է Անահիտյան յերկիր։ Յեվրոպական պատմագետների յերկերում Պոմպեյոսի զորքերի 65/64 թվի ձմեռոցի տեղը հակառակ Դիոնի վկայության ցույց է տրված Փոքր Հայքում, վոր պարզապես սխալ է։

64 թվին Պոմպեյոսի զորամասերը, վերադառնալով Հայաստանից Պոնտոս՝ պաշարեցին ու նվաճեցին Պոնտոսում և, գլխավորապես, Փոքր Հայքում, Միհրդատի հարուստ գանձապահեստները և հռչակավոր արխիվները, վորոնք գտնվում էին Տալավրայում, Նոր Ամրոցում, Սինորիայում և այլ տեղերում։ Այդ ամրություններում պահվում էին հազարավոր ոնիքսե սկահակներ, վորոնք ներզարդված էին վոսկով, հսկայական քանակությամբ անոթներ, մահիճներ, գահեր, նաև զրահներ ու սպառազինություններ, վորոնք, մեծ մասամբ, վոսկեզօծված էին և զարդարված թանգագին քարերով։ Այս բոլոր հարստությունները՝ և հելլենիստական արվեստի բոլոր թանգարժեք իրերը, վորոնք կողոպուտի չեյին մատնվել Լուկուլլոսի արշավանքի ժամանակ՝ ուղարկվեցին բոլորը Պոնտոսից Հռոմ։

Մինչ Պոմպեյոսը պատերազմ էր վարում իբերների և աղվանների դեմ ու նվաճում էր Պոնտոսի ամրությունները՝ պարթևները գրավել էին Միջագետքը, վորն, ինչպես տեսանք, համաձայն Պոմպեյոսի հետ կնքած դաշինքի մինչև Յեփրատ գետը պատկանելու յեր նրանց։ Պարթևները ներխուժել էին նաև Կորդվաց յերկիրը, վորի տիրապետության համար վեճ էր առաջացել իրենց ու հայերի մեջ։ Սակայն Պոմպեյոսը պահանջեց Հրահատ Գ-ից մաքրել Կորդուքը, առարկելով վոր այդ յերկիրը պատկանում է, իրապես, Տիգրան Բ-ին։ Չսպասելով նույնիսկ Հրահատ Գ-ի պատասխանին՝ նա հրամայեց իր ոգնականներից մեկին,

[1] Տես „Круговой нуть Помпея в Закавказье", Вестник древней истории, Москва 1939, 4:

Աֆրանիուսին, գրավել ու հանձնել Կորդուքը հայոց թագավորին։ Պլուտարքոսի պատմելով[1], հռոմեական այս զորապետը հալածեց պարթևներին մինչև Արբելա քաղաքը, վորը գտնվում էր Ադիաբենեյում։

Այստեղից Աֆրանիուսը պետք է անցներ հյուսիսային Միջագետքի վրայով Ասորիք, ուր նույն այդ ժամանակ, 64 թվին, պետք է գար նաև Պոմպեյոսը։ Բայց 65/64 թվի ձմեռվա կեսին, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[2], Աֆրանիուսը և նրա զորքը ճանապարհը կորցրին ու մոլորվեցին և կարող էին ցրտի ու կենսամթերքների պակասության պատճառով Միջագետքի անապատներում կորստի մատնվել, յեթե նրանց չոգնեյին Կարրա քաղաքի (այժմյան Խառան) մակեդոնացի գաղթականները։ Սրանք հյուրընկալեցին Աֆրանիուսին և առաջնորդեցին Ասորիք։

Չնայած Պոմպեյոսի գրգռիչ վոտնձգություններին և դաշնադրության անպատկառ խախտմանը, վորի համաձայն հյուսիսային Միջագետքը մինչև Եփրատ գետը ճանաչված էր վորպես պարթևներին պատկանող յերկիր՝ Հրահատ Գ-ը չհամարձակվեց պատերազմել հռոմայեցիների դեմ։ 64 թվի գարնանը նա դիմեց իր զորքերով Հայաստան և հարձակվեց Տիգրանի վրա, վորն օգնություն խնդրեց դաշնակից հռոմայեցիներից։ Այս դեպքը Պոմպեյոսի համար մի հարմար առիթ էր պատերազմ սկսելու նաև պարթևների դեմ, ինչպես այդ ցանկանում էին, իրապես, նրա կուսակիցներից ու սպաներից շատերը։ Սակայն Պոմպեյոսը, վոր խիստ զգույշ էր և չուներ Լուկուլլոսի հանդուգն համարձակությունը, չուզեց բախտախաղի դնել իր ձեռք բերած աջողությունները և խուսափեց կռվից։ Նա արդարանում էր նրանով, վոր հռոմեական ժողովուրդն այդ իրեն չէ հանձնարարել և վոր դեռևս վերջնականապես զինաթափ չէ արվել Միհրդատ Պոնտացին[3]։ Պատերազմից հռոմայեցիների հետ, ինչպես ասացինք, խույս էր տալիս նաև պարթևների թագավոր Հրահատ Գ-ը, վորը նույնպես չունեցավ արիություն վոտքի յելնելու հռոմեական ուխտանենգ զորավարի դեմ։ Եվ վորովհետև նա նորից դեսպաններ էր ուղարկել Պոմպեյոսի մոտ՝ վերջինս հայտնեց նրան, վոր կուղարկե յերեք միջնորդ դատավորներ, վորոնք կըհարթեն սահմանների

1 Պոմպեյոս, գլ. 36, 1։

2 Գր. 37, գլ. 5, 5։

3 Տե՛ս Կասսիուս Դիոն, գք. 37, գլ. 7, 1։

վերաբերյալ նրա ու Տիգրանի վեճը[1]։ Հրահատ Գ-ը և Տիգրանը դադարեցրին պատերազմը և համաձայնեցին ընդունել միջնորդների վճիռները։

Այնուհետև ուղարկված դատավորները քննարկման յենթարկեցին նրանց գանգատներն ու պահանջները և կայացրին իրենց վճիռը հօգուտ Տիգրանի։ Համաձայն նրանց վորոշման հայոց թագավորը ստացավ վոչ միայն Կորդվաց յերկիրը, այլև հյուսիսային Միջագետքի մի մասը։ Ուշագրավ ե, վոր Հրահատը հենց ինքը ևս, ինչպես վկայում ե Կասսիուս Դիոնը[2], չառարկեց և հավանություն տվեց այդ վճռին, հույս ունենալով, վոր հետագայում գուցե կաջողվի իրեն հաշտվել հայերի հետ և ստանալ նրանցից ոգնություն ընդդեմ հռոմայեցիների։

Յերբ կատարվում եյին այս անցքերը, Միհրդատ Պոնտացին, վորը վերահաստատել եր իր իշխանությունը Բոսփորյան թագավորության մեջ՝ խաղաղության նոր առաջարկություններ արեց հռոմայեցիներին և հայտնեց, վոր յեթե Պոմպեյոսը համաձայնի վերադարձնել իրեն Պոնտական թագավորությունը՝ ինքը պատրաստ ե հպատակվելու Հռոմին վորպես վասսալ և հարկատու։ Պոմպեյոսը, ինչպես և 66 թվին, նրան պատասխանեց նորից, վոր նախ քան բանակցություններ վարելը՝ նա պետք ե անձամբ գա և հնազանդվի Հռոմին։ Հաշտությունն այլևս անհնարին եր։ Ցեվ Միհրդատը վճռեց նախապատրաստվել Հռոմի դեմ նոր կռվի և մշակեց նոր արշավանքի հանդուգն մի ծրագիր։ Նա մտադիր եր, դաշն կապելով սկյութների, թրակացիների և կելտերի հետ՝ արշավել Իտալիա Դանուբ գետի հովիտներով և Ալպյան լեռների վրայով, ինչպես այդ իրենից առաջ արել եր կարթագենացի Հաննիբալը։ Այդ մեծ արշավանքի համար հարկավոր եյին, իհարկե, թե մարդկային և թե նյութական վիթխարի ուժեր ու միջոցներ։ Ցեվ 63 թվին, յերբ Միհրդատը վերջացնելու վրա յեր ռազմական իր պատրաստությունները, վորոնց ամբողջ ծանրությունն ընկնում եր Բոսփորի բնակչության ու քաղաքների վրա՝ հանկարծակի նրա դեմ բռնկվեց տարբերային կատաղի ապստամբություն, վորին մասնակից եյին վոչ միայն գրեթե բոլոր քաղաքները, այլև նրա զորքն ու նրա վորդին Փառնակը։ Ծերունի Միհրդատը հասկացավ, վոր իրեն չեն խնայելու և վոր այլևս

---

[1] Տես Դիոն, գք. 37, գլ. 7, 3, Ապպիանոս, Միհրդատ., գլ. 106 և Պլուտարքոս, Պոմպեյոս, գլ. 39, 3։

[2] Գք. 37, գլ. 7, 4։

փրկվելու վոչ մի հնար չկա։ Պաշարված լինելով Պանտիկապեյոն (այժմյան Կերչ) քաղաքի իր ամրոցում՝ նա չուզեց անձնատուր լինել ապստամբներին և իր կյանքին վերջ տվեց ինքնասպանությամբ (63 թվի գարնանը)։

Նրա դիակը, վոր ուղարկել եր Փարնակն Ասորիք՝ Պոմպեյոսի հրամանով թաղեցին Սինոպի մոտ գտնվող պոնտական թագավորների գամբարանում։ Այժմ արդեն մեծ ու բազմամյա պատերազմը Միհրդատի դեմ, վորը սկսվել եր դեռ քսան և հինգ տարի առաջ՝ կարելի յեր համարել վերջացած։

Պատերազմը կարելի յեր ավարտված համարել նաև ամբողջ Արևելքում և Ասորիքում։ 65 և 64 թվերին Պոմպեյոսի զորապետները՝ Գաբինիուսը, Սկավրուսը, Աֆրանիուսը և ուրիշները՝ նվաճել եյին հարավում Փյունիկիան, Պաղեստինան և Ասորիքի ու Միջագետքի մի քանի մանր իշխանությունները և քաղաքները։ Հռոմեական հանրապետության սահմանները հասնում եյին այժմ Արևելքում մինչև Միջագետքի անապատները և գրեթե մինչև Յեգիպտոս։

64 և 63 թվերին Պոմպեյոսը քաղաքականապես կազմակերպեց իր նոր նվաճած յերկրները և կարգավորեց նրանց վարչական ներքին գործերը։ Դեռևս 64 թվին, յերբ նա գտնվում եր դեռ Պոնտոսում, նա դարձրել եր Նիկոմեդեսի նախկին թագավորությունը, Բյութանիան, և Միհրդատի պոնտական թագավորության արևմտյան մասը հռոմեական նահանգ։ Պոմպեյոսից առաջ թե Լուկուլլոսը և թե հռոմեական ծերակույտը Ասորիքի որինական թագավոր եյին ճանաչել, ինչպես վերև տեսանք, Սելևկյան Անտիոքոս Ասիացուն։ Իսկ այժմ Սելևկյանների իշխանությունը հայտարարվեց Ասորիքում վերացված և այս ամբողջ յերկիրը վերածվեց հռոմեական նահանգի։ Վերոհիշյալ Սելևկյան Անտիոքոսը դառավ Հռոմի վասսալ և փոխանակ Ասորիքի ստացավ Կոմագենի փոքր թագավորությունը, վորի կենտրոնն եր Սամոսատ մայրաքաղաքը։ Այս թագավորության սահմաններում եր գտնվում Յեփրատի հռչակավոր գետանցքը Սելևկիա ամրոցի մոտ (այժմյան Բիրեջիկ), վորն ուներ ռազմական և առևտրական խոշոր նշանակություն։

Ընդարձակ նոր յերկրամասեր ստացան Հռոմի բարեկամ և դաշնակից Կապպադովկիայի Արիոբարզանես թագավորը և Գալատիայի Դեյոտարուս իշխանը, վորոնք մեծ ծառայություններ եյին մատուցել հռոմայեցիներին պոնտական և հայկական պա-

տերազմների ընթացքում։ Պոմպեյոսը տվեց Արիոբարզանեսին Կիլիկիայից անջատված մի քանի շրջաններ և ամբողջ Ծոփաց թագավորությունը։ Սրան եր այժմ պատկանում Եփրատի նշանավոր գետանցքը և Տոմիսա ամրոցը։ Իսկ Դեյոտարուսը, վորը հայտարարվեց թագավոր՝ ստացավ Պոնտական թագավորության արևելյան մասը՝ արևելյան ծովափնյա Պոնտոսը, վորի մեջ եյին Փառնակիա և Տրապիզոն քաղաքները, ու նաև Փոքր Հայքը։ Դեյոտարուսի թագավորության հյուսիսակողմում գտնվող Կողքիսը տրվեց իբրև առանձին իշխանություն Արիստարքոսին, վորի անունով հայտնի յեն և հիշատակված են դրամագիտական յերկերում մի քանի դրամներ։

Եփրատ գետի արևելակողմում Հռոմի գերիշխանությունը ճանաչել եյին և նրա ազդեցության շրջանակի մեջ եյին համարվում վոչ միայն Հայաստանը, վորը հայտարարված եր բարեկամ ու դաշնակից հռոմեական ժողովրդի՝ այլև Ատրպատականը, Իբերիան, Աղվանքը, Ոսրոենեն և մի քանի այլ արաբական փոքր ցեղեր հյուսիսային Միջագետքում։

Հայաստանը, վորը բարեկամ ու դաշնակից եր հայտարարվել Հռոմի և անվանապես ընդունել եր սրա գերիշխանությունը՝ դառավ այժմ հռոմեական աշխարհակալության ռազմական առաջապոստը։ Պոմպեյոսը հիմնապես այնուհետև փոխեց իր քաղաքականությունը նրա հանդեպ։ Տիգրանը ևս, ինչպես և Արիոբարզանեսը և Դեյոտարուսը, ստացավ Պոմպեյոսից և կամ սրա աջակցությամբ վոչ միայն Կորդուքը և հյուսիսային Միջագետքը, վորոնց միացումը Հայաստանին վերև հիշատակել եյինք, այլև Դերջանը և Ակիլիսենը[1], վորն այդ ժամանակ, հավանորեն, պարունակում եր իր մեջ բացի հին Եկեղյաց գավառից նաև Դարանաղին, Մանանաղին, Աղյունը և Մզուրը[2]։ Այսպիսով Մեծ Հայաստանը, ինչպես տեսնում ենք, Տիգրան Բ-ի ժամանակ ևս իր սահմաններն ընդարձակել եր թե հայկական լեռնաշխարհի հարավակողմում և թե Փոքր Հայքի ու Ծոփաց աշխարհի հարակից շրջաններում։

Պոմպեյոսի սիրաշահական նոր քաղաքականությունը Մեծ Հայաստանի հանդեպ արտահայտվեց նաև նրանով, վոր «արքայից արքա» պատվանունը, վորը մինչև Տիգրանը կրել եյին պար-

[1] Տես J. Markwart, Die Genealogie der Bagratiden, եջ 63 և «Հին-Հայաստանի գլխավոր ճանապարհները», եջ 73։

[2] Տես Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 54—55։

թևների թագավորները և վորը, Տիգրանի աշխարհակալության տապալումից հետո, հռոմայեցիները սկզբում ճանաչել եյին իբրև Հրահատ Գ-ի տիտղոս՝ այժմ վերապահվեց միմիայն Տիգրանին, իսկ Հրահատ Գ-ին սկսեցին անվանել լոկ «թագավոր»։

Պարթևների թագավորը հարկադրված յեղավ անտրտունջ կլլելով տանել այդ ակներև վիրավորանքներն ու թշնամանքները։ Հռոմի այս խաբված գաշնակիցը այժմ ինքն եր գտնվում յերկու կրակի մեջ, ինչպես 66 թվին նրա ախոյանը՝ Տիգրանը։ Ասորիքի սահմանում կազմ և պատրաստ կանգնած եր Պոմպեյոսի մեծ զորաբանակը, իսկ Միջագետքի և Ատրպատականի կողմից սպառնում եյին պարթևներին Հռոմի նոր դաշնակցի՝ Տիգրանի հայկական զորքերը։ Հրահատ Գ-ը հիմա նոր միայն հասկացած կլիներ, վոր իր դաշնակցությամբ հռոմայեցիների հետ նա, ինչպես նախազգուշացրել եր իրեն Միհրդատը՝ կորստյան եր մատնել վոչ միայն իր հարևաններին, այլև ինքն իրեն։

Պոմպեյոսի բացառիկ զգուշավորությանը պետք ե վերագրել, վոր նա չոգտվեց հանգամանքների բարեհաջող զուգադիպումից և հրաժարվեց հարձակվել պարթևների վրա, վորոնք մեծ պատերազմի համար գրեթե անպատրաստ եյին։ Իր յետևում նա վողջ ու անվթար թողեց անարգված ու անպատված նախկին իր դաշնակցին, վորը հնարավորություն եր ստանում նախապատրաստվելու և հարմար ժամանակ ընտրելու ընդդիմադրության և փոխվրեժի։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր առաջիկա անխուսափելի պատերազմի ժամանակ Հայաստանի բարեկամությունն ու ոգնությունը բացառիկ մեծ կարևորություն եյին ստանում ինչպես հռոմայեցիների, նույնպես և պարթևների համար։ Հենց այդ եր պատճառը, վոր Հրահատ Գ-ը, ինչպես վերև տեսանք, դեռևս 64 թվին հարկադրվել եր փոխել իր թշնամական քաղաքականությունը Հայաստանի հանդեպ և լռելյայն համաձայնել եր զիջել Տիգրանին Կորդուքը և հյուսիսային Միջագետքը։ Շնորհիվ բարի հարևանական այդ նոր քաղաքականության հայերի և պարթևների մերձեցումը հնարավոր յեղավ, ինչպես հայտնի յե, Տիգրանի վորդու Արտավազդի թագավորության ժամանակ[1]։

---

[1] Մոմզենի և այլ պատմագետների յենթադրությունը, վոր Հրահատ Գ-ի վորդին Միհրդատ Գ-ը (57—54 թ.) պատերազմ եր սկսել Արտավազդ Բ-ի դեմ՝ մի պարզ թյուրիմացություն ե։ Յուստինուսի համապատասխան վկայությունը (գք. 42, գլ. 4, 1), ինչպես մատնանշել ե Գուտշմիդը՝ վերաբերվում ե, իրապես, Միհրդատ Բ-ի կռիվներին ընդդեմ Արտավազդ Ա-ին. տես Gutschmid, Ge-

Պոմպեյոսի Իտալիա վերադառնալուց հետո (61 թ.)՝ Տիգրան Բ-ը խաղաղ ու անվրդով թագավորեց Հայաստանում մինչև խորին ծերություն, հավանորեն, մինչև 56 կամ 55 թիվը։ 56 թվին նա դեռ կենդանի յեր և հիշատակված է Կիկերոնի ճառերից մեկում[1]։ Իսկ Կրասսոսի արշավանքի ժամանակ, 54 թվին, Հայաստանում, ինչպես հայտնի յե, միանձնորեն թագավորում եր նրա վորդին Արտավազդ Բ-ը։ Լուկիանոսը վկայում է, վոր Տիգրանը վախճանվել եր խոր ծերության մեջ 85 տարեկան հասակում[2]։ Յեթե այս վկայությունը, վորը կարող է կասկածելի համարվել, հնարավոր լինի հետագայում հաստատել՝ կարելի կլինի յենթադրել, վոր նա ծնված պիտի լիներ 141 կամ 142 թ. (նախ քան մեր թվ.) և, ուրեմն, մոտ տասը տարով մեծ յեղած պիտի լիներ Միհրդատ Եվպատորից, վորը ծնվել եր համաձայն Ռեյնաքի 132 թվին[3]։

Տիգրանի կինը Կլեոպատրան, ըստ յերևույթին, թողած է յեղել իր ամուսնուն և հեռացած է յեղել իր հոր մոտ, հավանորեն, Կրտսեր Տիգրանի ապստամբության ժամանակ։ 63 թվին, իր հոր ինքնասպանության ժամանակ, նա ևս, ինչպես հայտնի յե, գտնվել է իր հոր հետ Պանդիկապեյոն քաղաքում[4]։

Տիգրան Բ-ի հետ վերջանում եր Հայաստանի մեծապետական վերելքի խիստ կարճատև շրջանը։ Շատ պարզ է, վոր այս հզոր թագավորը, վորը Հայաստանը դարձրել եր լայնածավալ պետություն և իրեն նպատակ եր դրել զարգացնել իր յերկրում հելլենիստական քաղաքային կուլտուրան և դուրս հանել հայ ժողովուրդը հետամնաց կացությունից՝ չե կարող համարվել միջակ ու սովորական մի դեմք։ Սակայն պատմական խոշոր ու առաջավոր այս դեմքը, դժբախտաբար, աղավաղված ու խեղաթյուրված է պատմագիտական գրեթե բոլոր ոտար և հայ յերկերում։

Տիգրանի սխալ բնութագրերը բոլոր այդ յերկերում պետք է ըստ իս անվերապահ կերպով մերժվեն, վորովհետև դրանք, ինչպես տեսանք, հիմնված են, գլխավորապես, Պլուտարքոսի և նրա սկզբնաղբյուրների չարամիտ և հնարովի հերյուրանքների վրա, վորոնք չունեն պատմական նշանակություն։

---

schichte Irans, եջ 86, ծան. 2 և Моммсен, Римская история, III, Москва 1887, եջ 292։

1 Տես Pro Sestio, 27, 59:

2 Տես Lucianus, Makrobioi, Bibl. Teubn.:

3 Տես Mithridate Eupator, եջ 52։

4 Տես նույնը եջ 405։

Տիգրան Բ-ը, ինչպես և Միհրդատ Եվպատորը, անտարակույս, հելլենիստական տիպի միապետներ էին, վորոնք բուռն թափով առաջ էին տանում Աղեքսանդր Մակեդոնացու ու նրա հաջորդների քաղաքակրթական մեծ գործը։ Թե ինչպիսի խոր արմատներ էր ունեցել հելլենական կրթությունը հայկական արքունիքում՝ այդ յերևում է նրանից, վոր Տիգրանի վորդին Արտավազդը, ինչպես վերև ասացինք, գրած է յեղել հունարեն լեզվով վողբերգություններ, ճառեր և պատմական յերկեր, վորոնցից մի քանիսը հայտնի յեն յեղել Պլուտարքոսին[1]։

Տիգրանի և Միհրդատի վերանորոգչական ու առաջադիմական գործունեյության վերջ դրին Լուկուլլոսի և Պոմպեյոսի արշավանքները։ Հաղթող ու աշխարհակալորեն առաջ շարժվող Հռոմը վոչ միայն ամայացրեց և ավերակների կույտ դարձրեց Պոնտոսի և հարավային Հայաստանի հարուստ ու փարթամ քաղաքներն ու գյուղերը, այլև, հաստատվելով մշտականապես Ասորիքում՝ հետզհետե առաջ բերեց ինչպես Հայաստանում, նույնպես և ամբողջ Առաջավոր Ասիայում, հելլենիստական քաղաքակրթության թուլացում և կուլտուրական հետադիմություն[2]։ Հատկապես Հայաստանում ու նրա հարևան պարթևական թագավորության յերկրներում հելլենիզմը և հելլենական քաղաքային կուլտուրան հետզհետե զիջեցին իրենց տեղն իրանական հին կենցաղին ու ավանդություններին, վորոնք խոր արմատներ ունեյին առանձնապես այս յերկրներում։

* * *

Հռոմեական աշխարհակալության հաստատմամբ Յեփրատ ու Տիգրիս գետերի մոտ Հին Հայաստանի համար ստեղծվեց քաղաքական ծանր ու տանջալից բուֆերական կացություն, վորն այնուհետև տևեց յերկար դարեր։ Գտնվելով յերկու հզոր թշնամիների՝ Հռոմի և Իրանի միջև՝ Հայաստանը հարկադրված յեղավ, հակառակ հայ ժողովրդի կենսական շահերին, մասնակից լինել կատաղի ու անվերջ պատերազմներին, վոր պարբերաբար վերսկսում էին իրար դեմ հարևան մեծ պետությունները։

Հայկական լեռնաշխարհը հենց ինքը դառավ այնուհետև մի-

---

1 Տես Կրասսոս, գլ. 33, 1։

2 Տես Eduard Meyer, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin 1925, եջ 62 և այլն։

ջազգային պայքարի ու մրցությունների առարկա և կատարում էր հաճախ հենարան յերկրի և ռազմադաշտի ծանր դեր։ Կռվող պետությունների համար Հայաստանին տիրապետելը խիստ կարևոր էր և պայմանավորված էր ոչ միայն այն հանգամանքով, որ նրա մեջ գտնվում էր համաշխարհային առևտրական ճանապարհների հյուսիսային մեծ գիծը, այլ, գլխավորապես, նրա ռազմական ու ստրատեգիական մեծ կարևորությամբ։ Շնորհիվ աշխարհագրական իր առանձնահատկություններին հայկական լեռնաշխարհը, ինչպես հայտնի է, հսկայական բնական մի միջնաբերդ էր և ուներ առաջնակարգ նշանակություն ինչպես պաշտպանողական, նույնպես և հարձակողական պատերազմի համար։ Իբրև բարեկամ պարթևների՝ նա անհանդուրժելի մի վտանգ էր հռոմեական արևելյան նահանգների համար, իսկ իբրև դաշնակից Հռոմի՝ նա դարձյալ ահավոր սպառնալիք էր Պարթևական թագավորության համար։ Ուստի և քաղաքական մերձեցումը Հայաստանի հետ կամ նրա բռնի նվաճումը այնուհետև ամենահիմնական հարցը յեղավ թե Հռոմի և թե պարթևների ու Պարսկաստանի արտաքին քաղաքականության։

Հայաստանի այս աղետալի դրությունը, որ ստեղծվել էր Պոմպեյոսի հաղթական արշավանքներից ու 66 թվից հետո, շարունակվեց ոչ միայն հռոմեական-պարթևական, այլև բյուզանդական-սասանյան, բյուզանդական-արաբական և հետնագույն շրջաններում։ Իբրև մարտադաշտ համառ ու արյունահեղ կռիվների՝ նա պարբերաբար ավերվում էր ու կողոպտվում և նրա բնակչությունը սրի յեր մատնվում և գերվում։ Հայաստանի բուֆերական դրությունն էր գլխավոր պատճառը, որ նա անկարող յեղավ իր ձեռքն առնել սեպհական իր ճակատագրի տնորինումը և նրա քաղաքական վիճակը կարգավորում էին գրեթե միշտ շահագրգռված մեծ պետությունները։

Որպեսզի Հայաստանը կարողանար ազատվել բուֆեր-պետության իր դրությունից՝ հարկավոր էր, անշուշտ, որ Արևմուտքի և Արևելքի սահմանը և նրանց մշտական կռիվների բեմը Հայաստանի մոտից տեղափոխվեր մի այլ տեղ։ Հայաստանի համար ցանկալի յեր, իհարկե, որ Առաջավոր Ասիայում վերականգնըվեր քաղաքական այն կացությունը, որ նա ունեցել էր Աղեքսանդր Մակեդոնացու և կամ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ։

Սակայն այդ Նրան այլևս բնավ չվիճակվեց։ Դարեր շարունակ արևմտյան և արևելյան մեծ աշխարհակալությունները Ֆնացին անշարժ իրենց նույն հին դիրքերում՝ Եփրատ ու Տիգրիս գետերի մոտերքում։ Եվ Հայաստանը, որ Պոմպեյոսի հաղթությունից և 66 թվից հետո կորցրել էր մեծապետական իր նախկին անկախությունը՝ մշտական զոհը դառավ արևմտյան և արևելյան մրցող մեծ պետությունների։

---

# Ց Ա Ն Կ

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ, ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՀԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ

# ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

*Տիգրան Երկրորդի դարաշրջանը քաղաքական ու սոցիալական ցնցումների ալեկոծ մի ժամանակաշրջան էր, երբ վճռական ու արմատական փոփոխության էր ենթարկվում ոչ միայն Հայաստանի, այլև Արևմտյան Ասիայի ճակատագիրը։ Սակայն այդ մեծ հեղաշրջումը և, մասնավորապես, այն պատմական անցքերը, որ տեղի էյին ունեցել Հայաստանում, խեղաթյուրված են մեծ չափով պատմագիտական բոլոր երկերում և մինչևիսկ դասական համարված ուսումնասիրություններում։*

*Խեղաթյուրումների գլխավոր պատճառներից մեկը պետք է համարել, անտարակույս, սկզբնաղբյուրների կողմնապահ ու աչառու տեղեկությունները, որ անվերապահ կերպով հյուրընկալվել են պատմական նորագույն երկերում։*

*Միհրդատ-Տիգրանյան դարաշրջանի հիմնական սկզբնաղբյուրներն են ականատեսների և ժամանակակից հեղինակների գրությունները։*

*1. Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի պաշտոնական տեղեկագրերը,*

*2. Սուլլայի հիշատակարանը,*

*3. Թեոփանես Միտիլենացու գրած Պոմպեյոսի կռիվների պատմությունը,*

*4. Արքիաս Անտիոքացու վիպերգը,*

*5. Սալլուստիուսի պատմությունը և*

*6. Կիկերոնի ճառերը։*

*Գլխավորապես, հենց այս սկզբնաղբյուրներից օգտված պիտի լինեյին, անշուշտ, մեծագույն մասը հետագա պատմիչների։ Բայց հիշյալ ղեկուցագրերը, ինչպես և նման կարգի գրությունները, համաձայն քննական նոր հետազոտությունների՝ միանգամայն անվստահելի են։*

*«Զեկուցագրերի հեղինակները,—ասում է Ռեյնաքը*[1]*,—*

---

[1] *Տես* Mithridate Eupator, *էջ 418—419։*

վստահ լինելով, վոր իրենց ստերը չեն մերկացվի՝ ուռճացնում էին իրենց աջողությունները, թաքցնում իրենց անաջողությունները, իսկ յերբեմն իրենց պարտությունները հայտարարում իբրև հաղթություններ,— Մուրենան, օրինակ. վորը պարտություն էր կրել՝ արժանացել էր հաղթահանդեսի։ Նրանք, ծայր աստիճան չափազանցրել են թշնամիների զորաթվերն ու կորուստները, իսկ իրենցը համապատասխան չափերով պակասեցրել։ Օրինակ, Տիգրանակերտի կռվի մասին իր զեկուցագրում Լուկուլլոսը Տիգրանի զորքերի թիվը ցույց է տվել մոտ 250.000 մարդ, մինչդեռ ուրիշ աղբյուրներ նույն զորքի թիվը հաշվում են միայն 80.000 մարդ[1]։ Նույն այս կռվում իր կորուստը նա համարում է 5 սպանված և 100 վիրավոր, մինչդեռ թշնամու կորուստը յենթադրում է առնվազն 30.000 մարդ։ Յեվ Լուկուլլոսն այդ արել է, հետևելով Սուլլայի օրինակին, ու կարելի յե վստահ լինել, վոր Պոմպեյոսը՝ միևնույն ուսուցչի աշակերտը, առավել ևս գերազանցել է իր նախորդներին»։

Նման չափազանցված ու սուտ տեղեկություններ հաղորդում են իրենց հովանավորների՝ Լուկուլլոսի և Պոմպեյոսի մասին՝ նաև Արքիաս Անտիոքացին ու Թեոփանես Միտիլենացին։

Համեմատաբար ավելի արժանահավատ են համարվում Սալլուստիուսը և Կիկերոնը։ Սակայն հռոմեական այս հեղինակները ևս, վորոնք օգտվել էին, հավանորեն, վերոհիշյալ զեկուցագրերից կամ նման աղբյուրներից՝ զերծ չեն ըստ իս վորոշ չափազանցություններից։

Հռոմեական և հունական ավելի ուշ շրջանի աղբյուրները պետք է բաժանել յերկու խմբի։

Առաջին խմբին են պատկանում հռոմեական սկզբնաղբյուրների վրա հիմնված յերկերը, իսկ յերկրորդ խմբին՝ այն հունական աշխատությունները, վորոնց աղբյուր են ծառայել փոքրասիական բանավոր ավանդությունները և կամ գրավոր կորած յերկերը։

Առաջին խմբի պատմական աղբյուրներից առանձնապես կարևոր է համարվում հայրենասիրական վոգով գրված, աչառու ու կողմնապահ Տիտուս Լիվիուսի պատմությունը, վորը համառոտել են կամ մեծ չափով օգտագործել Ֆլորուսը, Եվտրոպիուսը, Օրոզիուսը, Փրոնտինուսը և ուրիշները։ Նույն այս խմբի աղբյուր-

---

[1] Տես Մ ե մ ն ո ն, գլ. 57։

ներ են համարվում նաև Պլուտարքոսը և Ապպիանոսը, որոնց մոտ Տիգրան Բ-ի ու Հայաստանի վերաբերյալ մանրամասն տեղեկությունները պահպանված են ամբողջությամբ։

Առաջինն այս հեղինակներից, Պլուտարքոսը, գրել է, ինչպես հայտնի է, Սուլլայի, Լուկուլլոսի և Պոմպեյոսի կենսագրությունները։ Սակայն Պլուտարքոսի այս գրվածքները պարզապես ներբողներ են ու խրատական պատմվածքներ, որոնց մեջ պատմական փաստերը հաճախ քողարկված են կամ գունավորված են, մեծ մասամբ, հոգուտ մեծարված ու հերոսացված հռոմեական զորավարների։ Ցեվ ուշագրավ է, որ հենց Պլուտարքոսի չափազանցություններն ու ակներև հերյուրանքները մեջ են բերվում շարունակ պատմագիտական նորագույն լերկերում։

Մյուս հեղինակը, Ապպիանոսը, օգտվել է բացի Լիվիուսից նաև փոքրասիական կորած աղբյուրներից, հավանորեն, Նիկոլայոս Դամասկացուց և Պոսիդոնիոսից։ Հատուկ ուշադրության արժանի յեն, անշուշտ, Ապպիանոսի պատմության այն մասերը, որոնք քաղված են փոքրասիական չեզոք այս հեղինակներից։

Ցերկրորդ խմբի՝ հելլենիստական Արևելքի հունական լերկերը՝ դժբախտաբար, շատ քիչ են և չեն պահպանված իրենց ամբողջական բովանդակությամբ։ Այս աղբյուրներից կարևորագույնն է Մեմնոնի «Հերակլեյայի պատմությունը», որի մեջ միջանկյալ կերպով ուշագրավ տեղեկություններ են հաղորդված Լուկուլլոսի արշավանքների մասին Հայաստանում։ Մեմնոնի այն վկայությունները՝ որոնք քաղված են Հերակլեյայի հին ժամանակագրություններից, ավելի ճիշտ են ու արժանահավատ, քան հռոմեական ինքնապարծ ու միտումնավոր հաղորդագրությունները։

Միանգամայն վստահելի յե ու արժանահավատ բացի Մեմնոնից նաև Ստրաբոնը, որը ծնվել եր պոնտական Ամասիա քաղաքում 63 թվին (նախ քան մեր թվ.)։ Սրա նախնիքները վարել են Պոնտական թագավորության մեջ բարձր պաշտոններ և յեղել են ականավոր զինվորականներ։ Իր ազգականներից ու հայրենակիցներից նա լսած կլիներ, անշուշտ, և հավաքած տեղեկություններ Միհրդատյան մեծ դարաշրջանի մասին, որը նա նկարագրել եր իր «Պատմական հիշողություններ» (Ἱστορικὰ ὑπομνήματα) աշխատության մեջ։ Նա օգտվել եր միաժամանակ բազմաթիվ պոնտական հին պատմագիրների լերկերից, որոնց նա իր աշխարհագրության մեջ անվանում է «Միհրդատյան մատե-

*նագիրներ» (τὰ Μιθριδατικὰ συγγράψαντες, տե՛ս XI, 2, 14)։ Նրա պատմական մեծ աշխատության կորուստը պետք է համարել, անշուշտ, պատմական գրականության ամենամեծ կորուստներից մեկը։*

*Ստրաբոնի երկերից պահպանվել է միմիայն Նրա աշխարհագրությունը, որի մեջ կան, բարեբախտաբար, միջանկյալ ու համառոտ տեղեկություններ թե Միհրդատյան կռիվների և թե Արտաշեսյան Հայաստանի ու Տիգրան Բ-ի մասին։*

*Մի քանի կարևոր վկայություններ, որ քաղված են, ըստ երևույթին, փոքրասիական չեզոք աղբյուրներից՝ ունի նաև Փլեգոն Տրալլեսցին իր «Օլիմպիականք»-ում։*

*Ինչպես տեսնում ենք, յերկրորդ խմբի յերկերից մնացել են միմիայն հատուկտոր և ընդմիջվող վկայություններ, որոնք չեն կարող հիմք ծառայել պատմական անցքերի մանրամասն վերականգնման։ Սակայն պահպանված այս վկայությունները, որոնք դիմակազերծ են անում հռոմեական աղբյուրների ստերն ու աղավաղումները՝ պարզ ցույց են տալիս, որ այս վերջինների մինչևիսկ ընդունելի համարված վկայություններից պետք է օգտվել ամենամեծ զգուշությամբ։*

*Այդ անհրաժեշտ զգուշավորությունը բնավ չի պահված, դժբախտաբար, ո՛չ յեվրոպական և ո՛չ էլ հայկական գիտական յերկերում։*

*Մեր աշխատության մեջ ճշտված են ըստ հնարավորության, աղբյուրների համեմատական ուսումնասիրությամբ, հռոմեական հեղինակների հերյուրանքներն ու չափազանցությունները և Տիգրան Բ-ի ու Նրա դարաշրջանի պատմությունը տրված է նոր լուսաբանությամբ։*

# ՑԱՆԿ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

### Ա. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*1. Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի պաշտոնական տեղեկագրերը՝ ուղարկված հռոմեական սենատին Դարդանոսի դաշնագրից, Տիգրանակերտի առումից և Միհրդատի մահից հետո։*

*Այս գրություններից, վորոնք չեն հասել մեր ձեռքը, ոգտվել են Կիկերոնը, Ապպիանոսը, Պլուտարքոսը և ուրիշները։*

*2. Սուլլայի հիշատակարանից* (Commentarium rerum gestarum), *վորը նույնպես կորած է, ոգտվել են Պլուտարքոսը, Լիվիուսը և ուրիշները։ Վորոշ հատվածներ, վոր պահպանվել են այդ հիշատակարանից՝ հրատարակել է Պետերը, տես* Peter, Historicorum Romanorum fragmenta, *յերկրորդ հրատարակություն, եջ 127 ևն։*

*3. Սալլուստիուս (87—34 թ. մեր թվ. առաջ), տես* Historiarum fragm., ed. Fr. Kritzius, Leipzig 1853 *և* Historiarum reliquiae, ed. B. Maurenbrecher, fasc. I—II, 1891, 1894: *Սալլուստիուսի յերկը, վորից պահպանվել են կարևոր հատվածներ՝ լավագույն աղբյուրն է համարվել Լուկուլլոսի արշավանքների։*

*4. Կիկերոն (100—43 մեր թվ. առաջ) — ճառեր, նամակներ ևն, տես* Pro lege Manilia *կամ* De imperio Cn. Pompeii, Pro Murena, Pro Sestio, Pro Archia poeta, Pro Flacco *և* Academicorum libri duo: *Հմմտե ճառերի ռուսերեն թարգմանությունը՝* „М. Туллий Цицерон, Полное собрание речей в русском переводе", под редак. Ф. Зелинского, т. I, СПБ 1901:

### Բ. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*1. Պոսիդոնիոս Ապամեացին (մոտ. 135—51 մեր թվ. առաջ), վորը գրել է Պոլիբիոսի պատմության շարունակությունը, նաև, հավանորեն, ինչպես յենթադրում է Ռեյնաքը* (Mithridate Eupator, *եջ 426), Պոմպեյոսի արշավանքների պատմությունը (տես*

Str. XI, 1, 6): *Պահպանված են և հրատարակված են հատվածներ, տես* C. Müller, Fragmenta historicorum graecorum. III:

*2. Թեոփանես Միտիլենացին, վորն անձամբ մասնակցել եր Պոմպեյոսի արշավանքներին, տվել ե սրանց պատմությունը՝ գունավորված ի նպաստ Պոմպեյոսի։ Պահպանված հատվածները հրատարակված են Մյուլլերի ժողովածուի յերրորդ հատորում, տես* Fragm. hist. graec., III:

*3. Արքիաս Անտիոքացին, վորն ուղեկցել եր Լուկուլլոսին և մասնակցել նրա արշավանքներին, գրել ե հատուկ մի վիպերգ ի մեծարումն Լուկուլլոսի, իբր հովանավորի։ Ուշագրավ ե, վոր նաև այս կորած բանաստեղծական ներբողն աղբյուր ե ծառայել Լիվիուսին և Պլուտարքոսին (տես* Reinach, Mithridate Eupator, *եջ 427)։*

### Գ. ՀՌՈՄԵԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ ՈԳՈՍՏՈՍՅԱՆ ՅԵՎ ԱՎԵԼԻ ՈՒՇ ՇՐՋԱՆՆԵՐԻ

*1. Տիտուս Լիվիուսի (59 թ. նախ քան մեր թվ.—17 մեր թվ. հ.) ընդարձակ պատմությունից, վոր վերաբերվում ե Տիգրան Բ-ի շրջանին՝ պահպանվել են համապատասխան գրքերի համառոտ բովանդակությունները* (periochae) *և քաղվածքներ Ֆլորուսի, Եվտրոպիուսի, Որոզիուսի և ուրիշ հեղինակների յերկերում։*

*2. Պոմպեյուս Տրոգուսը, վորը ժամանակակից եր Լիվիուսին՝ գրել ե ընդհանուր պատմություն* (Historiae Philippicae), *վորի նախաբանները և համառոտ բովանդակությունը պահպանվել են Յուստինուսի յերկում, տես* M. Juniani Justini, Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, ex recen. Fr. Ruehl, Lipsiae. 1915:

*3. Վելլեյուս Պատերկուլուսը, վորը ժամանակակից եր Տիբերիոս կայսեր (14—37 մեր թվ. հ.), գրել ե համառոտ հռոմեական պատմություն, տես* Vellei Paterculi, Ex historiae Romanae libris duobus quae supersunt, ed. C. Halm, Bibl. Teubn.:

*4. Ֆրոնտինուսը, վորը ժամանակակից եր Դոմիտիանոսի (81—96 մեր թվ. հ.)՝ գրել ե* Strategematon libri 4, Bibl. Teubn.:

*5. Ֆլորուսը գրել ե յերկրորդ դարի առաջին կիսում (մեր թվ. հ.) հռոմեական պատերազմների պատմությունը մինչև Ոգոստոս։ Նա ոգտվել ե, գլխավորապես, Լիվիուսի ընդարձակ պատմությունից։ Տես Հալմի հրատարակությունը՝* Flori Juli, Epitomae de T. Livio bellorum annorum DCC libri II, ex rec. C. Halm, Bibl. Teubn.:

*6. Եվտրոպիուսը կազմել է չորրորդ դարում համառոտ մի ձեռնարկ հռոմեական պատմության մինչև 364 թ. (մեր թվ. հ.), տես* Eutropii, Breviarium histor. Roman. Rec. Fr. Ruehl, Bibl. Teubn.

*7. Որոզիուս քահանայի Սպանիայում գրված հեթանոսական աշխարհի համառոտ պատմությունը պարունակում է իր մեջ քաղվածքներ հնագույն յերկերից և ունի կարևոր մանրամասնություններ Լուկուլլոսի և Պոմպեյոսի արշավանքների մասին, տես* Orosii Pauli, Historiarum adversus paganos libri VII, recen. C. Zangemeister, Bibl. Teubn.

### Դ. ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ ՈԳՈՍՏՈՍՅԱՆ ՅԵՎ ԱՎԵԼԻ ՈՒՇ ՇՐՋԱՆՆԵՐԻ

*1. Ստրաբոն (63 նախ քան մեր թվ.—19 մեր թվ. հ.), տես* Strabonis, Geographica, recogn. A. Meineke, vol. I—III, Lipsiae 1915—1925:

*2. Նիկոլաոս Դամասկացին, Հերովդես Մեծի (37—4 մեր թվ. առ.) քարտուղարը, գրել է ընդհանուր պատմություն, վորից մնացել են միայն հատվածներ, տես* C. Müller, Fragm. hist. graec., III: *Այս պատմությունն աղբյուր է ծառայել Ապպիանոսին։*

*3. Պլուտարքոսը (մոտ 46—120 մեր թվ. հ.) գրել է Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի, Սերտորիուսի, Կրասսոսի և այլ կենսագրություններ, տես* Plutarchi vitae, graece et latine, *Փարիզի հրտր.* Th. Döhner-*ի և* F. Dübner-*ի, հտ.* I—V, *1846—1855։*

*4. Հովսեպոս Փլավիոսը (ծնվ. է 37/38 թվ. մեր թվ. հ.) գրել է «Հրեական պատերազմ» և «Հրեական հնախոսություն» յերկերը, տես* Josephi Flavii, opera omma, recogn. Eman. Bekker, Bibl. Teubn.

*5. Փլեգոն Տրալլեսցին, Հադրիանոս կայսեր (117—138 մեր թվ. հ.) ժամանակակից հեղինակը՝ գրել է ժամանակագրական մի յերկ «Ոլիմպիադներ» վերնագրով* ('Ολυμπιάδες), *վորից մնացել են հատվածներ, տես* C. Müller, Fragm. hist. graec., III:

*6. Ապպիանոս Աղեքսանդրիացին, վորը ժամանակակից էր Հադրիանոս (117—138 թ. մեր թվ. հ.) և Անտոնինոս (138—161 մեր թվ. հ.) կայսրների՝ գրել է հռոմեական պատմություն, վորի մեջ Տիգրան-Միհրդատյան դարաշրջանի անցքերը նկարագրված են 11-րդ և 12-րդ գրքերում* (XI—Συριακή, XII—Μιθριδάτειος), *տես* Appiani Alexandrini, Historia Romana, ed. L. Mendelssohn, 2 vol., Bibl. Teubn.

*7. Մեմնոնը (ժամանակն անհայտ) գրել է Հերակլեայի պատմությունը, տես* Memnonis, Historiarum Heracleae Ponti, ed. C. Orellius, Lipsiae 1816.

*8. Կասսիուս Դիոնը (մոտավ. 155—235 մեր թվ. հ.) գրել է հռոմեական պատմություն, տես* Cassii Dionis Cocceiani, Historiarum Romanorum quae supersunt, ed. Boissevain, vol. I, Berolini 1895:

## Ե. ՕԺԱՆԴԱԿ ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*1.* Diodorus, Biblioth. histor., ex recensione L. Dindorfii.

*2.* Isidori Characeni, Stathmoi Parthicoi, *տես* C. Müller, Geogr. graeci min., I.

*3.* Lucianus, Makrobioi, Bibl. Teubn.

*4.* Herodoti, Historiarum libri IX, Bibl. Teubn., *տես նաև ռուսերեն թարգմանությունը՝* Ф. Г. Мищенко-*յի,* Москва 1885.

*5.* C. Plinii Secundi Naturalis Historiae, *տես* Histoire naturelle de Pline, avec la traduction en francais, par M. É. Littré, t. I—II, Paris 1883.

*6.* Polybii historiae, Bibl. Teubn., *տես նաև* Всеобщая история в 40 книгах, перевод Мищенка, т. I—III, Москва 1890—1899.

*7.* Ptolemaei, Geographia, *հրատ.* C. Müller-*ի։*

*8.* Valeri Maximi factorum et dictorum memorabilium libri IX, rec. C. Kempf, Bibl. Teubn.

*9.* C. Cornelii Taciti opera, adc. Weise, T. I, Annalium libri XVI, Lipsiae 1829.

*10. «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», աշխատութ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս 1913։*

*11. «Փաւստոսի Բուզանդացւոյ, Պատմութիւն Հայոց», յերկ. տպագր., Վենետիկ 1889։*

